### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ՍՍՀՄ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Վերջին ժամանակներս Ուսուրի գետի վրա՝ Դամանսկ կղզու շրջանում տեղի ունեցան չինական կողմից հրահրված սահմանային զինված միջադեպեր: Չինական իշխանությունները չունեին և չեն կարող ունենալ որևէ արդարացում այդօրինակ միջադեպերի կազմակերպման, ընդհարումների և արյունահեղության համար: Այդպիսի դեպքերը կարող են ուրախացնել միայն նրանց, ովքեր կուզենային ամեն մի միջոցով թշնամանքի անդունդ փորել Սովետական Միության և Չինաստանի Ժողովրդական Հանրապետության միջև: Դրանք ընդհանուր ոչինչ չունեն սովետական և չին ժողովուրդների արմատական շահերի հետ:

I

Ուսուրի գետում սովետական սահմանապահների վրա զինված հարձակումների հանգամանքները քաջ հայտնի են: Դրանք կանխամտածված, վաղօրոք ծրագրված ակտեր էին:

Ս. թ. մարտի 2-ի առավոտյան դիտակետից նկատեցին, որ չինական՝ մոտավորապես 30 զինծառայողներ խախտել են սովետական սահմանը Դամանսկ կղզու մոտ: Մի խումբ սովետական սահմանապահներ, սպայի գլխավորությամբ, շարժվեցին դեպի սահմանազանցները, մտադրություն ունենալով, ինչպես որ եղել է նախկինում, բողոք հայտնել և պահանջել, որ նրանք հեռանան սովետական տերիտորիայից: Չինական զինծառայողները թողեցին, որ սովետական սահմանապահները մոտենան մի քանի մետրի վրա, իսկ այնուհետև անսպասելիորեն, առանց որևէ նախազգուշացման դիմահար կրակ բացեցին նրանց վրա:

Միաժամանակ Դամանսկ կղզու թաքստոցից, ուր գիշերվա խավարի մեջ վաղօրոք գաղտագողի մտել էին չին զինվորները, չինական ափից հրանոթներով, ականանետներով և ավտոմատ զենքով կրակ բացվեց սովետական ափի մոտակայքում գտնվող մի ուրիշ խումբ սովետական սահմանապահների վրա, որոնք ընդունեցին մարտը և հարևան սահմանապահ ուղեկալի պաշտպանությամբ սահմանազանցներին վռնդեցին սովետական տերիտորիայից: Այդ ուխտադրուժ հարձակման հետևանքով երկու կողմերից եղան սպանվածներ ու վիրավորներ:

Չնայած սովետական կառավարության նախազգուշացմանը և այդօրինակ պրովոկացիաներից ձեռնպահ մնալու կոչին, մարտի 14—15-ին այդ նույն շրջանում չինական կողմը նոր փորձեր ձեռնարկեց՝ զինված ներխուժե-

լու Սովետական Միության սահմանները: Չինական կանոնավոր բանակի ստորաբաժանումները, հրետանային և ականանետային կրակի պաշտպանությամբ, գրոհեցին Դամանսկ կղզին պահպանող սովետական սահմանապահ զորքերի վրա: Հարձակումը վճռականորեն ետ մղվեց, և սահմանազանցները ետ շպրտվեցին սովետական տերիտորիայից: Չինական կողմի այդ պրովոկացիան նոր զոհերի պատճառ դարձավ:

Այժմ չինական իշխանությունները իրենց հայտարարություններում փորձում են իրենց վրայից թոթափել զինված ընդհարումների պատասխանատվությունը: Նրանք պնդում են, թե իբր ոչ թե չինացիները, այլ սովետական սահմանապահներն են խախտել պետական սահմանը, և թե այդ կղզին իբր չի պատկանում Սովետական Միությանը: Չինական կողմը չի վիճարկում, որ իր զինվորական անձնակազմը գործել է նախապատրաստված պլանով, թեև, դիմելով կեղծ պնդման, ձգտում է չինական սահմանազանցների կողմից զենքի գործադրումը ներկայացնել իբրև «հարկադրական միջոց»:

Չինական հայտարարություններից հետևում է, որ Դամանսկ կղզու հարցը սոսկ մի մասն է իբր անցյալից ժառանգված այն տերիտորիալ պրոբլեմի, որը դեռ սպասում է իր լուծմանը և առնչված է պետական սահմանների վերանայման հետ: Ընդսմին չինական կառավարությունը չի կամենում հաշվի առնել Չինաստանի և ՍՍՀՄ-ի միջև գործող պայմանագրերը, անտեսում է սովետա-չինական միջպետական հարաբերությունների բազմամյա պրակտիկան, խեղաթյուրում է պատմությունը, ելնելով իր տերիտորիալ հավակնություններից:

Ինչպես երևում է, այս ամենը բխում է Սովետական Միության, սովետական ժողովրդի նկատմամբ ՉԺՀ-ի կառավարության քաղաքականության մեջ վերջին տարիներս կատարված արմատական փոփոխությունից:

Չինական պաշտոնական պրոպագանդան, ինչպես հայտնի է, առհասարակ կասկածի տակ է դնում Չինաստանի հարևան պետությունների այժմյան սահմանները, որոնց շրջանակներում վաղուց ի վեր կազմավորվել է այնտեղ բնակվող ժողովուրդների պատմական ընդհանրությունը: Հարևան տերիտորիաների նկատմամբ հավակնությունները առաջ են քաշվում այն պատրվակով, թե դրանց շուրջը ինչ-որ մի ժամանակ վեճ է եղել ինչ-որ ֆեոդալների, բողդիխանների և թագավորների միջև կամ էլ այդտեղ են մտել չինական նվաճողները կամ վաճառականները:

Պատմությունը լի է այն բանի օրինակներով, թե ինչպես նրանք, ովքեր ձգտել են զավթել ուրիշի տերիտորիաները, անցյալի մի խումբ ֆեոդալ նվաճողների հայտարարել են «արդարացի», մյուսներին՝ «անարդարացի»: Լենինյան քաղաքականությանը խորթ է նման մոտեցումը զավթիչների, ժողովուրդների կեղեքիչների նկատմամբ:

## II

Հեռավոր Արևելքում սովետա-չինական սահմանը ինչպես որ գոյություն ունի այժմ, կազմավորվել է բազում սերունդներ առաջ և անցնում է Սովետական Միության ու Չինաստանի տերիտորիաները բաժանող բնական սահմանագծերով: Այդ սահմանը իրավաբանորեն ձևակերպվեց Այգունի (1858 թ.), Տյանցզինի (1858 թ.) և Պեկինի (1860 թ.) պայմանագրերով: 1861 թվականին կողմերը ստորագրեցին և պետական կնիքներով հաստատեցին այն քարտեզը, որի վրա նշված է սահմանազատման գիծը Ուսուրիական երկրամա-



սում: Դամանսկ կղզու շրջանում այդ գիծն անցնում է անմիջականորեն Ուսուրի գետի չինական ափով: Հիշյալ փաստաթղթերի բնօրինակները կան ինչպես սովետական, այնպես էլ չինական պետության մոտ:

Տերիտորիալ հարցերի կապակցությամբ այդ պայմանագրերում, ինչպես նաև արձանագրություններում, քարտեզներում և նկարագրություններում ձևակերպված դրույթները ամբողջովին իրենց ուժը պահպանում են նաև ցայսօր: Սովետական կառավարության դիրքավորումն այն է, որ կողմերը խստիվ և անշեղորեն կատարեն այդ դրույթները: Երբ ՉԺՀ-ի կառավարությունը այդ հարցում համանման դիրք է գրավում, ապա սովետա-չինական սահմանում բախումների և կոնֆլիկտների համար հող չկա:

Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո Սովետների Հանրապետությունը հանդիսավորությամբ հայտարարեց, որ ինքը հրաժարվում է Չինաստանի հետ կնքված անիրավահավասար ու գաղտնի պայմանագրերից, Չինաստանում ցարական Ռուսաստանի ազդեցության ոլորտներից, էքստերիտորիալության իրավունքներից և հյուպատոսական իրավասությունից: Սովետների Հանրապետությունը Չինաստանի լուսավորության կարիքների համար հանձնեց այն ռազմավարի ռուսական բաժինը, որը իմպերիալիստական պետությունները պարտադրել էին Չինաստանին, այսպես կոչված, «բոքսյորական» ապստամբությունը ճնշելուց հետո, վերացրեց նախկին ռուսական կոնցեսիաները Չինաստանում, Չինաստանին վերադարձրեց Չին-արևելյան երկաթուղու օտարման շերտը: Հիշյալ պայմանագրերի վերացումը իրավաբանորեն ձևակերպվեց Սովետական Միության և Չինաստանի միջև եղած հարցերի կարգավորման ընդհանուր սկզբունքների վերաբերյալ 1924 թվականի մայիսի 31-ի համաձայնագրով: Այդ համաձայնագիրը պետական սահմանը որոշող ռուս-չինական պայմանագրերը չէր դասում անիրավահավասար կամ գաղտնի պայմանագրերի շարքը: Խոսք չի եղել դրանք չեղյալ հայտարարելու կամ վերանայելու մասին:

Չինական մեծ հեղափոխական-դեմոկրատ Սուն Յաթ-սենը բազմիցս ընդգծել է, որ սովետական կառավարությունը կամովին չեղյալ հայտարարեց բոլոր անիրավահավասար պայմանագրերը և հրաժարվեց Չինաստանում ցարական կառավարության բոլոր անարդարացի պահանջներից ու իրավունքներից: 1925 թվականի մարտի 12-ի իր քաղաքական կտակի մեջ Սուն Յաթ-սենը, դիմելով սովետական և չին ժողովուրդներին, հույս էր հայտնում, որ ՍՍՀՄ-ը և ազատ Չինաստանը կմիանան ու կկազմեն հզոր դաշինք և, որ աշխարհի ճնշված ժողովուրդների ազատագրության մեծ պայքարում նրանք ձեռք-ձեռքի տված կընթանան դեպի հաղթանակ:

Ավելորդ չէր լինի հիշեցնել, որ Չինաստանի կոմկուսի ղեկավարները նույնպես, իսկ ավելի ուշ նաև ՉԺՀ-ի կառավարությունը, բազմիցս ընդգծել են, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո սովետական պետությունը Չինաստանի հետ իր հարաբերությունները կառուցել է հավասարության և չին ժողովրդի սուվերեն իրավունքները հարգելու հիման վրա: Մաո Ցզե-դունը 1945 թվականին Չինաստանի կոմկուսի VII համագումարում նշեց, որ «Սովետական Միությունը առաջինը հրաժարվեց անիրավահավասար պայմանագրերից և Չինաստանի հետ կնքեց նոր, իրավահավասար պայմանագրեր: Նույն բանի մասին Մաո Ցզե-դունը ասաց Մոսկվայում, 1949 թվականի դեկտեմբերի 16-ին:

Եվ այսպես, սովետա-չինական հարաբերություններում ինչ-որ անիրա-

վահավասար պայմանագրերի հարցը, որոնց մասին այժմ աներեսաբար կրկնում է չինական պրոպագանդան, հորինված է սկզբից մինչև վերջ։ Պեկինից եկող պրոպագանդան մի նպատակ է հետապնդում՝ չին ժողովրդի մեջ հակակրանք և թշնամություն սերմանել դեպի մեր երկիրը, դեպի սովետական ժողովուրդը։

Պատմական պատկերը ամբողջական չէր լինի, եթե չասենք այն հերոսական պայքարի մասին, որ սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության և անձամբ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ, մղել է 1918—1922 թվականներին սովետական Հեռավոր Արևելքը օտարերկրյա ինտերվենտներից ազատագրելու համար, որոնք փորձում էին երիտասարդ Սովետական Հանրապետությունից խլել Պրիմորիեն, Խաբարովսկի երկրամասը, Արևելյան Սիբիրը։ Սովետական մարդիկ հսկայական ջանքերի ու զոհերի գնով պաշտպանեցին իրենց հեռավորարևելյան հողերը։

Հեռավոր Արևելքում սովետական սահմանների ամրությունը շատ անգամ են փորձել տնտղել ճապոնական միլիտարիստներն ու նրանց գործակիցները նաև հետագա տարիներին։ Նրանք Մանչուրիայի օկուպացումից հետո փորձեցին զավթել Ամուր և Ուսուրի գետերի՝ Սովետական Միությանը պատկանող կղզիները։ Այդ կղզիները ժամանակ առ ժամանակ զինված լուրջ գոտեմարտերի վայր էին դառնում, որտեղ ճապոնական ագրեսորները խորտակիչ հակահարված ստացան։

Բանն, անշուշտ, կղզիները չէին, այլ ճապոնական իմպերիալիստների ավելի լուրջ հավակնությունները Սովետական Միության և նրա դաշնակից Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության սրբազան ու անձեռնմխելի սահմանների նկատմամբ։ Հայտնի է, թե բանն ինչով վերջացավ. սկզբում Խասանի, իսկ ապա Խալխին-գոլի մոտ ագրեսորները գլխովին ջախջախվեցին և ետ շպրտվեցին։

Սովետական Բանակի կողմից 1945 թվականին միլիտարիստական Ճապոնիայի ջախջախումից հետո Ուսուրի և Ամուր գետերի վրա, շատ տարիների ընթացքում առաջին անգամ, հանգիստ իրադրություն ստեղծվեց։

Չինական հեղափոխության հաղթանակը և Չինաստանի Ժողովրդական Հանրապետության կազմվելը բոլոր նախադրյալներն ստեղծեցին բարիդրացիության զարգացման, սովետա-չինական սահմաններում կայուն խաղաղության ապահովման համար։ ՍՍՀ Միության և ՉԺՀ-ի միջև 1950 թվականին կնքված բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի համաձայն, երկու կողմերը իրենց հարաբերությունները կառուցում էին, ելնելով «պետական սուվերենությունը և տերիտորիալ ամբողջականությունը փոխադարձաբար հարգելու» սկզբունքներից։ Չինական կողմի խնդրանքով Սովետական Միությունը 50-ական թվականների սկզբներին ՉԺՀ-ին հանձնեց սահմանագծի նշումը պարունակող տեղագրական քարտեզների լրիվ կոմպլեկտները։ Այն ժամանակ չինական իշխանությունները որևէ դիտողություն չարեցին քարտեզներում ցույց տրված սահմանագծի վերաբերյալ, և այդ գիծը պահպանվում էր գործնականում։

Հաշվի առնելով երկու երկրների ժողովրդա-տնտեսական պահանջմունքները, 1951 թվականին ստորագրվեց սովետա-չինական համաձայնագիր Ամուր, Ուսուրի, Արգուն, Սունգաչ սահմանային գետերով և Խանկա լճով նավարկման կարգի մասին և այդ ջրուղիներում նավագնացային իրադրություն սահմանելու մասին։ Այդ մասնավոր տնտեսական հարցի վերաբերյալ համա-



ձայնագիրը նույնպես ամբողջովին ելնում է երկու երկրների սահմանները որոշած վերոհիշյալ պայմանագրերից։ Այդ համաձայնագրի հիման վրա, համագործակցության ոգով, իրականացվում էր նորմալ նավագնացությունը այդ ջրուղիներով։

Սահմանի երկու կողմերին ապրող բնակչությունը բարեկամական հարաբերություններ էր պահպանում, զարգացնում էր սահմանամերձ առևտուրը, կուլտուրական և մյուս կապերը։ Սովետական և չինական սահմանապահները գործարար կերպով լուծում էին ծագած հարցերը, առաջ չէին գալիս այնպիսի թյուրիմացություններ, որոնք պահանջեին կենտրոնական մարմինների միջամտությունը։

Չինական իշխանությունները շահագրգռվածություն էին հանդես բերում Ուսուրի և Ամուր գետերի մի քանի սովետական կղզիներ տնտեսական և արտադրական նպատակների համար օգտագործելու հարցում (խոտի, վառելափայտի հայթայթում և այլն), գետերի սովետական հատվածներում չինական ձկնորսներին ձուկ որսալու հնարավորություններ տալու հարցում։ Նրանք համապատասխան թույլտվություն ստանալու համար դիմում էին սովետական իրավասու իշխանություններին։ Այդ խնդրանքները բարյացակամությամբ քննության էին առնվում և բավարարվում էին սովետական իշխանությունների կողմից։ Սովետական կղզիներից և գետերի սովետական ջրատարածություններից օգտվելու թույլտվության կարգը, որը չինական իշխանությունները պահպանում էին տարիներ շարունակ, մեկն է այն բանի վկայություններից, որ չինական կողմը կասկածի չէր ենթարկում հիշյալ կղզիների, այդ թվում Դամանսկի կղզու՝ Սովետական Միությանը պատկանելու փաստը։

## III

Սովետական կառավարությունը, հավատարիմ լինելով Լենինի պատգամներին, իրենից կախված ամեն բան անում էր սովետա-չինական բարեկամությունն ու համագործակցությունը ամրապնդելու համար։

Այդ բարեկամության հիմքը դրվեց դեռևս այն տարիներին, երբ Սովետական Միությունը լայն ու համակողմանի օգնություն էր ցույց տալիս չին ժողովրդին՝ ազգային և սոցիալական ազատագրության նրա պայքարում։ Սովետա-չինական հարաբերությունների, մեր երկու երկրների աշխատավորների եղբայրական կապերի պատմության մեջ որպես փայլուն էջեր են մտել Սովետների Հանրապետության օգնությունը Չինաստանի հեղափոխական ուժերին 1923—1927 թվականներին, այն քաղաքական, տնտեսական և ռազմական աջակցությունը, որը Սովետական Միությունը ցույց է տվել Չինաստանին 1937—1945 թվականներին ճապոնական իմպերիալիզմի ագրեսիան ետ մղելու գործում։ Հենց սովետական բանակը խորտակիչ պարտության մատնեց ճապոնական միլիտարիստների կվանտունյան ընտիր խմբավորմանը և դրանով իսկ աչքի ընկնող ավանդ մուծեց Չինաստանը ճապոնական օկուպացումից ազատագրելու գործում։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի իսկական դրսևորում եղավ Սովետական Միության լայն ու համակողմանի օգնությունը Չինաստանի ժողովրդին, չինական կոմունիստներին՝ ժողովրդական հեղափոխության հաղթանակը նվաճելու գործում, որը հանգեցրեց Չինաստանի Ժողովրդական Հանրապետության ստեղծմանը։ Մաո Ցզե-դունը 1949 թվականի դեկտեմբերին հայտարարեց. «Գրեթե 30 տարի շարունակ սովետական ժողովուրդը և սովետական կառավարությունը բազմիցս օգնություն են ցույց տվել չին ժողովրդի

ազատագրման գործին: Սովետական ժողովրդի և սովետական կառավարության այդ եղբայրական բարեկամությունը, որին արժանացավ չին ժողովուրդը ծանր փորձությունների օրերին, երբեք չի մոռացվի»:

Առանց որևէ չափազանցության կարելի է ասել, որ Սովետական Միությունը՝ նրա վարկերը, նորագույն արդյունաբերական սարքավորման մատակարարումները, չինական կառավարության խնդրանքով գիտական ու տեխնիկական հսկայական փորձի անհատույց հաղորդումը, Չինաստանին օգնեց ստեղծելու ժամանակակից ինդուստրիայի բազա, դնելու սոցիալիզմի տնտեսական հիմքերը: Հազարավոր սովետական մասնագետներ բուն Չինաստանում աշխատում էին չին բանվորների և ինժեներների հետ ձեռք-ձեռքի տված, ստեղծելով Չինաստանի համար մի շարք միանգամայն նոր, արդյունաբերական ճյուղեր՝ ավիացիոն, ավտոմոբիլային, ռադիոտեխնիկական և ուրիշ շատ ճյուղեր: Չինական հազարավոր քաղաքացիներ մասնագիտական պատրաստություն ստացան Սովետական Միության ուսումնական հաստատություններում, սովետական գործարաններում և լաբորատորիաներում:

Չինաստանի կոմկուսի Կենտկոմի օրգան «Ժենմինժիբաո» թերթը 1959 թվականի փետրվարին, երբ նա դեռ ճշմարտությունն էր գրում մեր երկրի մասին, ընդգծում էր, որ Չինաստանին ցույց տրվող սովետական օգնությունը «իր մասշտաբներով պատմության մեջ նախադեպ չունի: Չին ժողովուրդը միշտ էլ համարում է, որ սովետական օգնությունը մեր երկրում արագ առաջադիմության հասնելու ամենակարևոր գործոններից մեկն է»:

Այն ժամանակներում ամենալայն մասշտաբներով զարգանում էր նաև սովետա-չինական առևտուրը, որի տարեկան շրջանառությունը 1959 թվականին հասավ գրեթե երկու միլիարդ ռուբլու: Դա իրավահավասար և փոխադարձաբար օգտակար համագործակցություն էր: Եթե չլիներ չինական կողմի դիրքը, մեր երկրների միջև առևտրական, տնտեսական և գիտատեխնիկական համագործակցությունը, անկասկած, կարող էր հաջողությամբ է՛լ ավելի զարգանալ: Դա արդարացի է նաև այժմ:

Միջազգային ասպարեզում Սովետական Միությունը և Չինաստանը համատեղ պայքար են մղել իմպերիալիզմի դեմ, միջազգային անվտանգության ամրապնդման համար: Այն պահերին, երբ սպառնալիք էր ստեղծվում ՉԺՀ-ի անվտանգության համար, Սովետական Միությունը, հավատարիմ լինելով բարեկամության, դաշինքի ու փոխադարձ օգնության պայմանագրից բխող իր պարտավորություններին, անշեղորեն հանդես էր գալիս ի պաշտպանություն ժողովրդական Չինաստանի և նրա հետ միասին վիժեցնում իմպերիալիստական շրջանների ագրեսիվ դիտավորությունները:

## IV

Այդ բարիդրացիական համագործակցությունը, որը մարմնավորում էր սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, խախտվեց 60-ական թվականների սկզբներին չինական կառավարության ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության փոփոխման հետևանքով:

Հենց այն ժամանակ էլ սկսեց բարդանալ իրադրությունը սահմաններում: Սկզբում դրանք սահմանի գոյություն ունեցող ռեժիմի մանր, աննշան խախտումներ էին, որոնք, որպես կանոն, կատարում էին քաղաքացիական բնակչությունը, կամ, համենայն դեպս, մարդիկ, որոնք զինվորական համազգեստ չէին կրում: Առանձին հատվածներում չինական զինծառայողները փորձում



էին ցուցադրաբար խախտել Սովետական Միության պետական սահմանը: Միաժամանակ ՍՍՀՄ-ի սահմանամերձ շրջաններում ծավալվեց օդանավակայանների, մերձատար ուղիների, զորանոցների, զինապահեստների շինարարություն:

Չինական պաշտոնական պրոպագանդան սկսեց բացեիբաց գովերգել «Չինաստանի կայսր» հայտարարված Չինգիզ-խանի, Մանչուրիայի բողդիխան Կանսիի, նվաճողական քաղաքականություն վարած չինական կայսրերի ու ֆեոդալների զավթողական արշավանքները ընդդեմ Ասիայի և Եվրոպայի ժողովուրդների:

Նույն ոգով վերափոխվեցին դպրոցական դասագրքերը և ՉԺՀ-ի մյուս հրատարակությունները, հրապարակվում էին քարտեզներ, որտեղ որպես չինական էին նշվում Սովետական Միության լայնածավալ տերիտորիաներ: Որոշ քարտեզներում, որոնք պատկերում էին Չինաստանը «առավելագույն հզորության շրջանում», սահմանը անցկացվում էր այնպես, որ Չինաստանի տիրապետություններ էին դառնում այնպիսի հողեր, ուր այժմ ապրում են Ասիայի գրեթե բոլոր ժողովուրդները և նույնիսկ Եվրոպայի շատ ժողովուրդներ:

Սովետական կառավարությունը այդ ժամանակ ևս ոչ քիչ թվով կոնստրուկտիվ քայլեր ձեռնարկեց սահմանային բախումների ումեղացումը կանխելու, դրանց սրությունը վերացնելու համար: Այդ նպատակով 1963 թվականի մայիսի 17-ին սովետական կառավարությունը ՉԺՀ-ի կառավարությանն առաջարկեց երկկողմ կոնսուլտացիաներ անցկացնել մեր պետությունների միջև: Այդ կոնսուլտացիաներն սկսվեցին 1964 թվականի փետրվարին Պեկինում: Սովետական պատվիրակության ղեկավարն էր ՍՍՀՄ լիազոր ներկայացուցիչ Պ. Ի. Զիրյանովը մինիստրի տեղակալի աստիճանով, չինական ներկայացուցիչը՝ արտաքին գործերի մինիստրի տեղակալ Ցզեն Յուն-ցյուանը:

Սովետական կողմը մտցրեց առաջարկներ, որոնց ընդունումը թույլ էր տալիս շատ կարճ ժամանակում փոխադարձ համաձայնությամբ ճշգրտումներ կատարել սովետա-չինական պետական սահմանի առանձին հատվածներում: Սովետական պատվիրակությունն առաջնորդվում էր այն բանով, որ կոնսուլտացիաների հաջող ավարտումը կարևոր ավանդ կլիներ մեր ժողովուրդների և պետությունների բարեկամական հարաբերությունների պահպանման գործում:

Սակայն 1964 թվականի կոնսուլտացիաներում չինական ներկայացուցիչների վարքագիծը վկայում էր, որ չինական կողմը մտադրություն չուներ համաձայնության գալ: ՉԺՀ-ի պատվիրակությունը փորձեց կասկածի տակ դնել պատմականորեն ստեղծված և պայմանագրերով վավերացված պետական սահմանը: Չինական կողմը կոնսուլտացիաների իմաստը տեսնում էր արհեստականորեն «տերիտորիալ պրոբլեմ» ստեղծելու մեջ, որը շատ տարիներ առաջ բարդացներ մեր ժողովուրդների և երկրների հարաբերությունները:

Պեկինի կոնսուլտացիաները չավարտվեցին: Սկզբունքորեն համաձայնություն կայացվեց դրանք շարունակել Մոսկվայում 1964 թվականի հոկտեմբերի 15-ին: Սակայն, չնայած այդ ժամանակաշրջանում և հետագա տարիներին սովետական կողմի բազմակի հիշեցումներին, ՉԺՀ-ի կառավարությունը խույս էր տալիս այդ կոնսուլտացիաներն ավարտելուց:

Մինչդեռ մեծ դժվարություն չէր ներկայացնում համաձայնության գալ և ապագայում բացառել սխալ մեկնությունները ու թյուրիմացությունները: Դրա

համար պահանջվում էր միայն մի բան՝ չինական կողմի բարի կամքը, պահանջվում էր, որ չինական ներկայացուցիչները գործեին այն ոգով, ինչպես, օրինակ, հայտարարեց պրեմիեր Չժոու Էն-լայը 1960 թվականի ապրիլի 28-ին Նեպալի մայրաքաղաք Կատմանդուում կայացած պրես-կոնֆերանսում, երբ նա, պատասխանելով թղթակիցներից մեկի այն հարցին, թե կա՞ն արդյոք «չորոշված սահմանային հատվածներ ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի միջև»,— ընդգծեց. «Քարտեզներում կան աննշան տարբերություններ: Շատ հեշտ է խաղաղ լուծել»: Այնուամենայնիվ, այդ հայտարարությունը չամրապնդվեց պրակտիկ գործողություններով: Չինական կողմից սահմանի խախտումները ոչ միայն չարունակվում էին, այլև այդպիսի խախտումների թիվը մեծանում էր:

V

Այսպիսով, Ուսուրի գետի վրա, Դամանսկ կղզու շրջանում չինական իշխանությունների զինված պրովոկացիաները պատահական միջադեպեր չեն: Այդ գործողությունները, ինչպես և առհասարակ սովետա-չինական սահմանում լարվածության ստեղծումը լուրջ վնաս են հասցնում սոցիալիզմի և խաղաղության գործին, հակաիմպերիալիստական պայքարի ընդհանուր ճակատին, սովետական և չին ժողովուրդների բարեկամությանը:

Առաջնորդվելով կայուն խաղաղության և անվտանգության ապահովման, չին ժողովրդի հետ բարեկամության ու համագործակցության պահպանման անշեղ ձգտումով, սովետական կառավարությունը գտնում է, որ անհրաժեշտ է անհապաղ գործնական միջոցներ ձեռք առնել սովետա-չինական սահմանում իրադրությունը նորմալացնելու համար: Նա ՉԺՀ-ի կառավարությանը կոչ է անում սահմանում ձեռնպահ մնալ այնպիսի գործողություններից, որոնք կարող են բարդություններ առաջացնել, կոչ է անում տարաձայնությունները, եթե դրանք առաջանում են, լուծել հանգիստ պայմաններում և բանակցությունների միջոցով:

Սովետական կառավարությունը արտահայտվում է նաև այն բանի օգտին, որ սովետական և չինական պաշտոնական ներկայացուցիչները ամենամոտ ժամանակներս վերսկսեն 1964 թվականին Պեկինում սկսված կոնսուլտացիաները:

Սովետական կառավարությունը հաստատ համոզված է, որ վերջին հաշվով, սովետական և չին ժողովուրդների արմատական շահերը թույլ կտան վերացնել և հաղթահարել սովետա-չինական հարաբերություններում ստեղծված դժվարությունները:

ՍՍՀՄ կառավարությունը հայտարարել է և անհրաժեշտ է համարում վերստին հայտարարել, որ ինքը վճռաբար մերժում է սովետական հողի նկատմամբ ամեն տեսակ ոտնձգություններ, ում կողմից էլ որ լինեն: Եվ Սովետական Միության, սովետական ժողովրդի հետ զենքի լեզվով խոսելու փորձերը վճռական հակահարված կստանան:

Սովետական ժողովուրդը միահամուռ պաշտպանում է ՍՄԿԿ և ՍՍՀՄ կառավարության լենինյան արտաքին քաղաքականությունը, մեր սոցիալիստական հայրենիքի սրբազան սահմանների անձեռնմխելիությունն ու անվտանգությունն ապահովելու միջոցառումները:

29 մարտի 1969 թ.

* * *

ՍՍՀՄ կառավարության վերոհիշյալ հայտարարությունը ս. թ. մարտի 29-ին Մոսկվայի չինական դեսպանության միջոցով պաշտոնապես հանձնվեց ՉԺՀ-ի կառավարությանը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

**Ս. Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

*Արտադրության զարգացման արդի փուլը բնութագրվում է տեխնիկական առաջադիմության սրընթաց տեմպերով, արդյունաբերության բազիսի երեք հիմնական բաղադրամասերի՝ աշխատագործիքների, էներգիայի աղբյուրների և արդյունաբերական հումքի, տեխնիկական ու տեխնոլոգիական մշտական կատարելագործմամբ: Ուստի, այժմ, ինչպես երբեք, անհրաժեշտ է հստակ և որոշակի միմյանցից սահմանազատել արդի ինդուստրիայում կատարվող զանազան փոփոխությունները: Ստույգ և օբյեկտիվ չափանիշների բացակայությունն արտադրության ոլորտում կատարվող արտադրական և տեխնիկական կատարելագործությունները գնահատելիս, սկսած արդյունաբերության մեջ մեքենայական տեխնիկայի ծագումից ու լայն արմատավորումից, հաճախ հասցնում է միանգամայն անհամադրելի երևույթների նույնացմանը, տեխնիկայում կատարվող պրոցեսների հակասական գնահատականի: Որոշ հետազոտողներ՝* (И. Н. Дворкин, «Вопросы философии» 1958, № 12, стр. 50, И. Н. Осимова, «Вестник истории мировой культуры», 1960, № 4, стр. 28 *և ուրիշներ) այն կարծիքին են, թե հասարակության տեխնիկական բազիսը, XIX դարից սկսած շատ հեղափոխություններ է ունեցել: Օրինակ, պողպատի ձուլման նոր մեթոդները (ըստ Ս. Թոմասի), ներքին այրման շարժիչների ի հայտ գալը, տուրբինների, օդում թռչող սարքերի, ռադիոյի գյուտը և այլն: Տեխնիկայի պատմության մեջ այդպիսի լուրջ փոփոխություններ կարելի է թվարկել տասնյակներով: Հարց է ծագում, հարկավո՞ր է արդյոք ամեն անգամ խոսել տեխնիկայի մեջ տեղի ունեցած յուրաքանչյուր դեպքի, յուրաքանչյուր տեխնիկական հեղաշրջման մասին: Կամ, այլ կերպ ասած, որոնք են այն օբյեկտիվ չափանիշները, որոնց հիման վրա պետք է որոշակիորեն սահմանվեն «տեխնիկական հեղափոխություն» կամ «տեխնիկական հեղաշրջում» հասկացությունները:*

*Հեղափոխությունը, ըստ մարքս-լենինյան մեթոդոլոգիայի, հետազոտվող երևույթի կամ պրոցեսի (կենսաբանական, ֆիզիկական, տնտեսական կամ սո-*

ցիալական) բոլոր բաղադրամասերում տեղի ունեցած որակական, արմատական, էական փոփոխությունն է։ Այն ենթադրում է այնպիսի փոփոխություն, որը սկիզբ առնելով երևույթի կարևոր բաղադրամասից, անհրաժեշտաբար տարածվում է տվյալ համակարգի մյուս կողմերի վրա և, ընդգրկելով ողջ համակարգը, բազմակողմանի բնույթ է ստանում։ Այդ տեսակետից մոտենալով հարցին, կարելի է տեխնիկական հեղափոխությունն անվանել այնպիսի պրոցես, որն արմատական փոփոխություն է առաջացնում արտադրության սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների, արտադրապրոցեսի անհատական և իրային տարրերի միացման տեխնոլոգիական եղանակի մեջ, արտացոլում աշխատանքի ֆունկցիայի վերաբաշխումը մարդու, նրա ստեղծած արհեստական արտադրող մարմինների միջև։ Տեխնիկական հեղափոխությունը, սկսվելով արտադրության հիմնական բաղադրամասում՝ աշխատանքի գործիքներում, արմատական փոփոխություն է առաջացնում արտադրության նաև մյուս երկու բաղադրամասերում՝ շարժիչ ուժի (էներգետիկա) և օգտագործվող հումքի՝ բնության այն իրերի մեջ, որոնք ներգրավվում են նպատակասլաց վերամշակման ոլորտը։ Վերջապես, տեխնիկական հեղափոխությունը, սկիզբ առնելով արտադրության մեկ ճյուղում, տարածվում է ինդուստրիայի մյուս ճյուղերը, դրսևորվելով որպես բազմակողմանի, համապարփակ պրոցես։

* * *

Առաջին տեխնիկական հեղափոխությունը տեղի ունեցավ XVIII դարի վերջին, XIX դարի սկզբին։ Այն նախորդեց արդյունաբերական հեղափոխությանը և զարգանում էր վերջինիս ընթացքում։ Առաջին տեխնիկական հեղափոխությունը բնութագրվում է արտադրության մեջ ձեռքի աշխատանքին փոխարինված մեքենաների մասսայական օգտագործմամբ, որը չտեսնված աճի հասցրեց հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Օտարելով մարդուց և արտադրող սիստեմներին հանձնելով աշխատանքի բանվորական, դրա հետ միասին նաև շարժիչների ֆունկցիաները, տեխնիկական հեղափոխությունն արտադրաուժերի անձնական և իրային տարրերի միջև արտադրական ֆունկցիաների վերաբաշխման առաջին պատմական ակտը հանդիսացավ, արմատապես հեղաբեկեց արտադրողի տեղն ու դերը արտադրապրոցեսում, որակապես փոփոխեց նրա աշխատանքի բնույթն ու բովանդակությունը։

Արտադրության մեքենայացումը, որը սկզբնապես ծագեց տվյալ ժամանակաշրջանի արտադրության առավել առաջադիմական բնագավառում՝ մանածագործական արդյունաբերության մեջ, աստիճանաբար ընդգրկելով նյութական արտադրության մնացած բոլոր բնագավառները, ստացավ համապարփակ, բազմակողմանի բնույթ։

Այնուհետև, աշխատանքի գործիքների բնագավառում կատարված տեխնիկական հեղափոխությունն իրական պայմաններ ստեղծեց մարդու և կենդանիների մկանային էներգիայից անցնելու արդյունաբերական էներգիայի հիմնական տեսակներին՝ ջերմայինին և ապա՝ էլեկտրաէներգիային։ Խոշոր մեքենայական արտադրությունը դարձավ շոգու էներգիայի սպառողը արդյունաբերական մասշտաբներով, որովհետև, ի տարբերություն մարդու և կենդանիների մկանային էներգիայի կենսաբանական սահմանափակվածության, էներգիայի այդ տեսակն էր հնարավորություն ընձեռում ռացիոնալ կազմակերպելու հզոր շարժիչ ուժ պահանջող մեծ թվով մեքենաների աշխատանքը։ Մյուս կողմից՝



շոգու էներգիայի արդյունաբերական օգտագործումը կարող էր գործնականում իրականացվել միայն աշխատանքի այնպիսի գործիքների առկայության դեպքում, որոնք ապահովեին բավականաչափ ամուր և ճշգրիտ գործողության շոգեմեքենաների կառուցումը։ Պ. Մանտուի վկայությամբ, «Ուատը բրալլենյան գործարանների համար 1775 թ. չէր կարող կառուցել Վիլկինսոնի պատվիրած շոգեմեքենան, եթե վերջինս չտրամադրեր նրան անթերի մետաղյա գլաններ, որպիսիք փորձում էին խնամքով պատրաստել հին մեթոդներով» (П. Манту. Промышленная революция XVIII столетия в Англии, стр. 262)։

Վերջապես, պակաս կարևոր չէ և այն, որ աշխատանքի գործիքների բնագավառում կատարված տնտեսական հեղափոխությունը վճռական խթան հանդիսացավ մետաղների՝ որպես մեքենաների արտադրության պահանջներին առավել համապատասխանող նյութի, արդյունաբերական լայն ոլորտում օգտագործման համար։

Երկրորդ գիտատեխնիկական հեղափոխությունը եղել է XX դարի կեսին և բնութագրվում է մեքենայական տեխնիկայից կոմպլեքսային, ավտոմատացված արտադրության անցմամբ։ Մարդկությունը չնայած գտնվում է ավտոմատացման դարաշրջանի ըստ էության միայն առաջին, ստորին աստիճանում, այնուամենայնիվ, տեխնիկայի զարգացման այդ փուլի հեղափոխական բնույթն ակներև է։ Ավտոմատացման անցնելը հեղափոխական շրջադարձ է նշանավորում մարդու աշխատանքային գործիքների զարգացման մեջ նախ նրանով, որ այն օրինաչափորեն, էապես փոփոխում է մարդու տեղն ու դերը արտադրապրոցեսում։ Եթե մեքենայական տեխնիկան պայմաններ է ստեղծում անմիջական արտադրողից օտարելու և ինքնագործ մեքենաների սիստեմին հանձնելու աշխատանքի բանվորական ֆունկցիան, ապա ավտոմատացված տեխնիկան իր զարգացման բավականաչափ բարձր աստիճանում իրական պայմաններ է ստեղծում սուբյեկտից օտարելու և արհեստական արտադրող սիստեմներին հանձնելու այն աշխատանքային գործողությունների ողջ պրոցեսի անմիջական կառավարումն ու վերահսկողությունը, որոնք, պատկերավոր ասած՝ կապված են տեխնիկական պրոցեսի ղեկավարման տակտիկայի հետ։ Ավտոմատացման դարաշրջանը ոչ այլ ինչ է, քան սուբյեկտի և արտադրության օբյեկտիվ գործոնի միջև աշխատանքային ֆունկցիաների երկրորդ որակական վերաբաշխում, որից մարդը «...կանգնում է արտադրապրոցեսի կողքին, փոխանակ դառնալու դրա գլխավոր գործակալը» (Из неопубликованных рукописей К. Маркса, «Большевик», № 11—12, 1939 г., стр. 62)։

Արտադրության ավտոմատացումը իսկական հեղափոխականացնող դեր չէր կարող խաղալ, եթե այն համապարփակ, բազմակողմանի չլիներ։ Անընդմեջ արտադրության ոլորտում (քիմիական, նավթավերամշակման, սննդարդյունաբերության որոշ ճյուղեր, և այլն) լայն տարածում ստացած ավտոմատացված սիստեմները, արմատավորվելով նորանոր բնագավառներում, անշեղորեն ընդլայնում են իրենց գործադրման սահմանները։

Չտեսնված տեմպերով իրականացվող ավտոմատացումը ավելի լայն հնարավորություններ է ստանում, քան արտադրության մեքենայացումը իր ժամանակին։ Ավելին, ավտոմատացման արմատավորումը կկրի համապարփակ և բազմակողմանի բնույթ, քանի որ մարդկային արհեստական միջոցների զարգացման պատմության մեջ առաջին անգամ ստեղծված են այնպիսի

սիստեմներ, որոնք թափանցում են մտավոր, ինչպես և ստեղծագործական, գիտական աշխատանքի բնագավառը։ Հաշվիչ-չափիչ և կառավարող էլեկտրոնային տեխնիկայի օգտագործման միջոցով մարդու մտավոր գործունեության շատ բնագավառների արվեստականացումը (արտիֆիկացիան) այսօր արդեն իրականություն է։

Նոր գիտատեխնիկական հեղափոխությունը, որի ելակետն աշխատանքի գործիքների որակական զարգացումն է, ինչպես առաջին տեխնիկական հեղափոխությունը, հեղաշրջման համար իրական պայմաններ է ստեղծում արտադրության մյուս երկու հիմնական բաղադրամասերում՝ էներգետիկայի և վերջնական արտադրանքի ստացման համար օգտագործվող հիմնական հումքի, նյութերի։ Միայն ավտոմատ կարգավորման և կառավարման շնորհիվ հնարավորություն կստեղծվի ջերմային և էլեկտրաէներգիան լայնորեն փոխարկել սկզբունքորեն նոր տեսակով— ատոմային և ջերմամիջուկային էներգիայով։ Ատոմի ճեղքման և ջերմամիջուկային սինթեզման պրոցեսների ընթացքի բարդությունն ու բազմազանությունը, գերարագությունը կարող են կառավարվել, երբ վերահսկողության և կառավարման մարդկային ֆունկցիաները փոխարինվեն տրված առաջադրանքի կառավարման սիստեմի էլեկտրոնային ֆունկցիայով։ Միայն արտադրության ավտոմատացումը, որն անհամեմատ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, մեծ չափերով տնտեսում է կենդանի աշխատանքը և դրա շնորհիվ ապահովում ողջ արտադրության վիթխարի զարգացումը, ստեղծում է էներգիայի այն հսկայական զանգվածի իրական սպառողին, որը կարող է տալ ատոմային, իսկ հետագայում՝ ջերմամիջուկային էներգետիկան։

Վերջապես, արտադրության կոմպլեքսային ավտոմատացումն իրական պայմաններ է ստեղծում արհեստական, արտասովոր հատկություններ ունեցող նյութերի արդյունաբերական օգտագործման համար։ Առաջին տեխնիկական հեղափոխությունը արդյունաբերական օգտագործման լայն շրջանառության մեջ դրեց, մեքենաների արտադրության համար բազմակողմանի նյութ դարձրեց մետաղներն ու դրանց զանազան ձուլվածքները, իսկ երկրորդ գիտատեխնիկական հեղափոխությունը արդյունաբերության մեջ արմատավորեց արհեստական, հիմնականում պոլիմերային, բազմակիորեն բարդացված նյութեր, որոնք օժտված են մարդուն անհրաժեշտ, ամենահնարավոր հատկություններով։ Առաջին տեխնիկական հեղափոխությունը նշանավորեց բնության նկատմամբ մարդու իշխանության զարգացման այն փուլը, երբ մարդը բնության նյութերի մեխանիկական, ջերմային և քիմիական մշակման միջոցով բացահայտեց նրանցում ամբարված այն յուրահատկություններն ու որակական հատկանիշները, որոնք անհրաժեշտ են արտադրության և սպառման կարիքների համար։ Երկրորդ տեխնիկական հեղափոխության դարաշրջանում մարդը, օգտագործելով բնության օրենքների իր գիտելիքները, դարձավ այն նյութերի իսկական ստեղծողը, որոնք օժտված են առաջադրված և բնության մեջ բնական տեսքով չհանդիպող հատկություններով։ Քիմիական-ջերմամիջուկային ամենաբարդ պրոցեսների տեխնիկական իրացումը, որոնք ուղղված են այդպիսի նյութեր ստանալու նպատակին, կարող են անկասկած իրականացվել միայն կոմպլեքսային-ավտոմատացված սիստեմի առկայությամբ, միայն այնպիսի պայմաններում, երբ վերահսկողության, չափման և կառավարման ֆունկցիաները մարդու զգացմունքների ու գործողությունների՝ կենսաբանական տեսակետից անկատարյալ և իրենց հնարավորություններով



սահմանափակ օրգաններից անցնեն մարդկային ձեռքով և մարդկային ուղեղով ստեղծված արհեստական սիստեմներին, որոնք բնության օրենքների, նրա իմացության առարկայացած ուժն են։

Ի տարբերություն առաջին տեխնիկական հեղափոխության, ժամանակակից արտադրության տեխնոլոգիական հիմքի վրա կատարված երկրորդ հեղափոխությունն իրավամբ կոչվում է գիտատեխնիկական, որովհետև դրան գիտության մեջ ուղեկցում է նյութի, դրա շարժման ու վերափոխության վերաբերյալ մարդկային գիտելիքների բոլոր բնագավառներում կատարված մեծ հեղափոխություն։ Տեխնիկայի ասպարեզում հեղափոխությունն իրականացվում է արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորմամբ, վերջինիս դարձնելով անմիջական արտադրաուժ, արտադրության զարգացման կարևորագույն գործոն։ Կ. Մարքսը Կապիտալի նախապատրաստական աշխատանքներում կանխագուշակում էր այն ժամանակը, երբ «խոշոր արդյունաբերության զարգացմանը համեմատ իրական հարստության ստեղծումն ավելի պակաս չափով կախման մեջ կլինի աշխատաժամանակից և ծախսված աշխատաքանակից, քան այն ազդակների հզորությունից, որոնք գործադրվում են աշխատաժամանակի ընթացքում, ազդակներ, որոնք ինքնին վերցրած, որոնց հզոր արտադրողականությունն իր հերթին, չի համապատասխանում այն անմիջական աշխատաժամանակին, որքան արժե նրանց արտադրությունը, այլև կախված է գիտության ընդհանուր վիճակից և տեխնոլոգիայի զարգացման աստիճանից կամ արտադրության մեջ գիտության կիրառումից» («Большевик», № 11—12, 1939, стр. 61)։

Երկրորդ տեխնիկական հեղափոխության դարաշրջանում գիտությունը դարձել է «ուժերի, փորձարարական գիտության, նյութատեխնիկական և առարկայական-մարմնավորվող գիտության գործնական կիրառման ասպարեզը» (նույն տեղը, էջ 65)։ Այդ պրոցեսը նշանավորվում է արտադրության ազատագրման նոր փուլ արտադրող մարդու ֆիզիկական և զգայական սահմանափակ հնարավորությամբ, նրա կենդանի աշխատանքի ծախսերով, աշխատաժամանակով։ Հասարակական արտադրության օբյեկտիվացման նոր փուլը նոր գիտատեխնիկական հեղափոխության ամենաբնորոշ առանձնահատկությունը, էությունը, ողնաշարն է։

Նոր գիտատեխնիկական հեղափոխության հիմնական տեխնոլոգիական արդյունքը արմատապես կփոփոխի անմիջական արտադրողի աշխատանքի բնույթն ու բովանդակությունը։ Աշխատանքը կառավարող էլեկտրոնային սիստեմներ կիրառող կոմպլեքսային-ավտոմատացված ձեռնարկություններում կհաղթահարվի առանձին բանվորի աշխատանքի հոգեկան ամլացածությունը, միապաղաղությունը, պարզունակությունը, մի բան, որ բնորոշ է մեքենայական արտադրության դարաշրջանին։ Այն կպահանջի խոր գիտելիքներ, ստեղծագործական մոտեցում՝ գործողությունների կատարման, տեխնոլոգիական պրոցեսների նկատմամբ, իրադրությունը ճիշտ գնահատելու պատասխանատու որոշումներ ընդունելու հմտություն։

Հետազոտական աշխատանքի պրակտիկան, պատմական մատերիալիզմի տրադիցիոն կատեգորիաները վճռական դեր են խաղում աշխատանքի և տեխնիկայի զարգացման ներքին օրինաչափությունները վերլուծելիս, սակայն լիովին չեն բավարարում բազմակողմանի ուսումնասիրելու այն երևույթների ու պրոցեսների որոշ կողմերը, որոնց հետ չի կարելի չառնչվել հիշյալ պրոբլեմները քննարկելիս։ Ուստի, անհրաժեշտ է մարքսիզմի մեթոդոլոգիական

զինանոցը լրացնել նոր հասկացություններով ու կատեգորիաներով՝ հետազոտվող երևույթներն ավելի լիակատար բնութագրելու, հասարակական պրոցեսների ներքին կապերի ու միջնորդավորումների առանձին կողմերն ավելի հստակ բացահայտելու համար։ Նմանօրինակ հաջողված փորձերից են գիտական շրջանառության մեջ այնպիսի հասկացություններ մտցնելը, ինչպիսիք են Գ. Ս. Գուդոժնիկի տեխնոլոգիական հարաբերությունները (տե՛ս Г. С. Гудожник, К. вопросу о диалектике развития техники, ученые записки Московского городского педагогического института им. В. П. Потемкина, Москва, 1959, т. XC, стр. 88—89) և Գ. Ն. Վոլկովի (տե՛ս Г. Н. Волков, Эра роботов или эра человека? Госполитиздат, 1964, стр. 31). աշխատապրոցեսի անձնական և նյութական տարրերի միացման տեխնոլոգիական եղանակ հասկացությունները։ Փոխադարձաբար լրացնելով միմյանց, այդ կատեգորիաները բացահայտում են հասարակության արտադրաուժերի տարբեր կողմերի միջև եղած փոխհարաբերությունների լիակատար պատկերը։

Աշխատանքի բաժանման պայմաններում հասարակական արտադրության կոլեկտիվ, ամբողջական պատկերը, յուրաքանչյուր արտադրական բջիջի սահմաններում, հանգեցնում է ո՛չ միայն արտադրահարաբերությունների առաջացման, արտահայտելով մարդկանց վերաբերմունքը սեփականության նըկատմամբ կրում է սոցիալական բնույթ, այլև, այսպես կոչված՝ տեխնոլոգիական հարաբերությունների առաջացման, որոնք ծնունդ են առնում արտադրաուժերի անձնական տարրերի միջև, տեխնոլոգիական պրոցեսի, արտադրության ամբողջական մեխանիզմի մի մասի՝ որպես աշխատանքի սուբյեկտիվ գործող ֆակտորի, իրացման ընթացքում։ Այդ հարաբերությունների բնույթն սկզբունքորեն, առավելապես վեր է սոցիալական լինելուց և նախ՝ բնորոշվում է օգտագործվող տեխնիկայի բնույթով, գործողությունների հետևողականությամբ՝ տեխնոլոգիական պրոցեսում, արտադրության կազմակերպման ձևերով, այնպիսի կատեգորիաներով, որոնք ընկած են արտադրաուժերի ոլորտում։ Մանուֆակտուրային արտադրությունն ունի որոշակի տեխնոլոգիական հարաբերություններ, որոնք հենվում են արհեստագործական գործիքների օգտագործման, աշխատանքի համապատասխան պրոֆեսիոնալ բաժանման վրա։ Մեքենայական, ինչպես և կոնվեյերային արտադրությունը տեխնոլոգիական հարաբերությունների տարատեսակ են, իսկ կոմպլեքսային-ավտոմատացված տեխնոլոգիական հարաբերությունները՝ որակապես այլ են։ Տեխնոլոգիական հարաբերությունները չի կարելի ամբողջովին կտրել արտադրահարաբերություններից։ Արտադրահարաբերությունները, իհարկե, ազդում են տեխնոլոգիական հարաբերությունների վրա, դրանց վրա դնում իրենց կնիքը, այն չափով, որչափով ազդում են արտադրաուժերի զարգացման վրա ամբողջությամբ վերցրած։ Եվ ընդհակառակը, դրանք արտադրաուժերի մյուս տարրերի հետ ամբողջություն կազմելով, որոշում են իրենց համապատասխանող արտադրահարաբերությունների բնույթը։

Այսպիսին է արտադրության նյութական և անձնական տարրերի միացման տեխնոլոգիական եղանակի և աշխատանքի օբյեկտիվ ու սուբյեկտիվ մոմենտների փոխհարաբերությունը։ Արտադրության նյութական և անձնական գործոնների միացման տեխնոլոգիական եղանակը մարդու և աշխատանքի փոխներգործության ձև է, որը և պայմանավորվում է օգտագործվող տեխնիկայի զարգացման մակարդակով։ Աշխատանքի բնույթը, նրա տեխնոլո-



գիական բովանդակությունը, արտադրության սիստեմում արտադրողի գրաված տեղը որոշվում են ոչ թե արտադրահարաբերությունների, այլ օգտագործվող տեխնիկայի իշխող բնույթով։ Մեքենայացված արտադրությունն անխուսափելիորեն աշխատանքի գործիքի հետ արտադրողի միացման որոշակի ձևի պայմանավորում է։ Ինչպես հայտնի է, աշխատանքը հոսքային գծի վրա, կոնվեյերի ժապավենի առաջ մեքենայացված արտադրության բարձրագույն աստիճան է. օպերատորի աշխատանքը ավտոմատիկ հաստոցի առաջ (մասնակի ավտոմատացման մակարդակ) չի կարող լինել միապաղաղ, պարզունակ, ցածրորակ։

Էլեկտրոնային հաշվիչ-չափիչ և կառավարող տեխնիկայի կիրառումը կոմպլեքսային-ավտոմատացված արտադրության մեջ բացառում է տեխնիկայի զարգացման նախորդ փուլին բնորոշ առանձնահատկությունները։ Այն անհրաժեշտաբար պահանջում է բարձր տեխնիկական կուլտուրա, մեծ և բազմակողմանի գիտելիքներ, մտավոր լարվածություն և ստեղծագործական կարողություններ։

Այսպիսով, աշխատանքի բնույթի, բովանդակության տեխնոլոգիական կողմն անհրաժեշտ է դիտել արտադրաուժերի հիմնական տարրերի՝ մարդկային գործոնի՝ նրա փորձի, ընտելությունների, հմտությունների, արտադրական գիտելիքների հետ միասին և նյութական գործոնների՝ օգտագործվող տեխնիկայի, արտադրապրոցես ներգրավված աշխատանքի գործիքների սահմաններում։ Դրանցից որևէ մեկի ամեն մի խզում մյուսից կարող է մեթոդոլոգիական լուրջ վրիպումների տեղիք տալ։ Ահա թե ինչու մարքս-լենինյան մեթոդոլոգիան հանդես է գալիս ինչպես արտադրությունը (բազմաթիվ սոցիալական կապերով և միջնորդություններով հանդերձ) ինքնաբավ դարձնելու, այնպես և դրա նյութական տարրերը (որտեղ կարևորը տեխնիկան է) ֆետիշացնելու դեմ։ Միայն արտադրաուժերի հիմնական տարրերի միասնությունը, արտադրության սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների միացման տեխնոլոգիական եղանակը կարող են տալ աշխատանքի տեխնոլոգիական բնույթի և բովանդակության իսկական և պատշաճ չափանիշը։

Վերոհիշյալն ամենևին չպետք է հասկանալ այնպես, թե արտադրահարաբերությունները, իբր, չեզոք են և անտարբեր աշխատանքի բնույթի և բովանդակության փոփոխությունների հանդեպ։ Արտադրահարաբերությունները չեն կարող վերացնել արտադրաուժերի բաղադրամասերի ներսում եղած բնական և անխուսափելի հակասությունները, եթե նույնիսկ այդ հակասությունները տալիս են այնպիսի անցանկալի սոցիալական արգասիք, ինչպիսին պարզունակ և միապաղաղ աշխատանքն է։ Այստեղ, այս ուղիներում չպետք է փնտրել արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունը կապիտալիստականի հանդեպ, սոցիալիստական արտադրահարաբերությունների մեծ առավելությունը կապիտալիստականի համեմատությամբ։

Կապիտալիստականի նկատմամբ սոցիալիստական արտադրահարաբերությունների անհամեմատ գերազանցությունն այն է, որ սոցիալիստական հասարակարգը՝ մեքենայացված արտադրության պայմաններում, հենվելով արտադրության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների վրա, կարող է (ի տարբերություն կապիտալիզմի) և գիտակցաբար կենսագործում է (ի հակադրություն կապիտալիզմի) մի ամբողջ շարք արդյունավետ միջոցառումներ, որոնք պետք է նվազագույնի հասցնեն մեքենայացված և մասամբ ավտոմատացված արդյունաբերության ստեղծած անցանկալի սոցիալ-հոգեբանական





և նյարդային-ֆիզիոլոգիական հետևանքները: Լայնորեն կիրառելով հոսքային և կոնվեյերային գծեր, սոցիալիստական արտադրությունը միևնույն ժամանակ յուրօրինակ միջոցներ է ստեղծում հաղթահարելու կոնվեյերային միապաղաղության որոշ բացասական կողմեր (տե՛ս Б. А. Федоришин, Конвейерная монотония и структура трудового процесса (Вестник ЛГУ,, Серия экономики, философии и права, вып. 3, 1966 г., стр. 87—97), օգտագործում բազմապրոֆիլային կադրեր պատրաստելու սիստեմը, նպատակ ունենալով մասսայաբար համատեղել պրոֆեսիաները և այդ հիման վրա կազմակերպել փոխարինումներն աշխատանքում: Սրանցից շատերը կապիտալիզմի սկզբունքների տեսանկյունից կարող են անիմաստ թվալ, քանի որ արդյունավետությունը արտահայտվում է ո՛չ թե կանխիկ վճարով, այլ բանվորների աշխատանքի պայմանների բարելավմամբ: Այստեղ ակնհայտ է դառնում սոցիալիստական արտադրահարաբերությունների հումանիստական հիմքերի առավելությունը կապիտալիստականի հանդեպ:

Կապիտալիզմն ամեն կերպ ձգտում է կոնսերվացնել, տեսականորեն ամրապնդել տեխնիկայի զարգացման այն փուլը, որը բնութագրվում է ոչ-որակյալ բանվորական ուժի օգտագործմամբ (կոնվեյեր, մասամբ՝ ավտոմատացված ձեռնարկություն): Կապիտալի ջատագովները գրում են, թե ավտոմատացումը իր բարձրագույն ձևերի առկայության պայմաններում, իբր, անխուսափելիորեն հանգեցնում է բանվորական ուժի ապաորակավորմանը:

Սոցիալիզմի պայմաններում առավել լրիվ են օգտագործվում նոր գիտատեխնիկական հեղափոխության արդյունքները, վերջինիս բոլոր կարողությունների իրական ծավալումը, կիրառումը հասարակական կյանքի տարբեր ոլորտներում:

Աշխատանքի գործիքների և սուբյեկտի միացման տեխնոլոգիական եղանակից դուրս մի հանգամանք ևս կարևոր դեր է խաղում աշխատող բանվորի սոցիալ-հոգեբանական միջավայրում: Խոսքն աշխատանքի հանդեպ աշխատողի վերաբերմունքի մասին է: Աշխատապրոցեսում բանվորը պետք է գիտակցի գործունեության սոցիալական իմաստը: Եթե նա իրեն արտադրական կոլեկտիվի մի մաս է զգում, ավելի լայն իմաստով՝ այն հասարակության մի մասը, հանուն որի աշխատում է, ապա նույնիսկ մասնակի գործողությունները և ոչ ստեղծագործական աշխատանքը նրա համար նոր նշանակություն, իմաստ են ստանում, որպիսիք բացառվում են ուրիշ պայմաններում: Աշխատապրոցեսի այդ կարևորագույն սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունն այժմ հարկադրված են արձանագրել աշխատանքի և տեխնիկայի բուրժուական առավել ողջամիտ հետազոտող սոցիոլոգները: Կապիտալիստական արտադրահարաբերություններն իրենց բնույթով չեն կարող հիմք հանդիսանալ աշխատանքի նկատմամբ աշխատողի դրական վերաբերմունքի համար:

Սոցիալիստական արտադրահարաբերությունները, որոնք խարսխվում են արտադրության գործիքների ու միջոցների հասարակական սեփականության վրա, իրենց իսկ էությամբ ու բնույթով բացառում են աշխատավորների ամեն մի շահագործում, կապիտալիզմի անիծյալ հակասությունները: Աշխատանքի զգացումը, որպես ինքնաճանաչում, արտադրապրոցեսի ընկալումը, որպես ինքնահիմնավորում և սեփական դասակարգի հիմնավորում, ստեղծում են այն դրական սոցիալ-հոգեբանական ֆոնը, որի վրա հիմնվում է կապիտալիստականից որակապես տարբերվող սոցիալիստական աշխատանքը:

Արմատական այդ տարբերությունը հենց ֆրանսիական սոցիոլոգ Ժ. Ֆրիդմանի այն հարցի պատասխանն է, թե «ինչու տրակտորի կամ ավտոմոբիլի գործարաններում մոտորների հավաքման կոնվեյերի վրա շաբաթվա մեջ կատարվող հիսուն ժամվա աշխատանքն ավելի հրապուրիչ է Գորկիում քան Դետրոյտում (Georges Fridmann, Oú ve ce travail humain?, Paris, *1956*, p. *371*):



Այդ հարցին պատասխանում է նաև ինքը՝ Ժ. Ֆրիդմանը հիշատակվող աշխատության սկզբում, երբ գրում է. «Հասարակական վերակառուցումը, ինչպես էլ այն անվանելու լինենք՝ սոցիալիզմ, թե կոմունիզմ, միևնույն է, մեր դարում փորագրված է արդի ինդուստրիայի յուրաքանչյուր աշխատավորի սրտում... Որպեսզի բանվորը կարողանա շարունակել իր կյանքը, նրան հարկավոր է հավատ ունենալ սոցիալական առաջադիմության, հեղափոխության նկատմամբ: Այլապես, առանց այդ հավատի, բանվորը վհատության կմատնվի տեխնիկական միջավայրում և սոցիալական անհեթեթության մեջ» (նույն տեղը, էջ 72—73):

Այսօր նույնիսկ ամենամոլեռանդ սկեպտիկի համար դժվար է ժխտել նոր գիտատեխնիկական հեղափոխության իրական լինելը: Նրա նկատելի գծերն ու առարկայական մարմնավորումը մենք տեսնում ենք բառացիորեն յուրաքանչյուր քայլափոխում: Առավել ևս կարևոր է պարզել, թե աշխատանքի գործիքներում, էներգետիկայում, հումքի բնագավառում կատարվող հեղափոխությունն արդյոք զուտ տեխնոլոգիակա՞ն երևույթ է, թե՞ նոր արդյունաբերական հեղափոխության նախագուշակ է, ելակետ, որն ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը:

Առանց չափազանցնելու կարելի է ասել, որ երկրորդ արդյունաբերական հեղափոխության պրոբլեմները վերջին տարիներին ամենասևեռուն ուսումնասիրության առարկա են դարձել Արևմուտքի սոցիալական ու պրոպագանդիստական գրականության մեջ: Որքան էլ պարադոքսալ է «հեղափոխություն» բառը, այն ամենամոդայիկն է բուրժուական սոցիոլոգների, տնտեսագետների, հրապարակախոսների բառապաշարում: «Արդյունաբերական հեղափոխություն», «հեղափոխություն տեխնիկայում», «հեղափոխություն սոցիալական շերտավորության մեջ», «հեղափոխություն գյուղատնտեսության մեջ», «միջին դասակարգերի հեղափոխություն», «հեղափոխություն կառավարման ու կազմակերպման մեջ», «սպիտակ օձիքավորների հեղափոխություն» բառակապակցությունները դարձել են գիտական հետազոտությունների ու ամսագրային հոդվածների, հրապարակային բանավեճերի ու սոցիալ-քաղաքական ծրագրերի թեմա: Օգտագործելով տեխնիկայի զարգացման նոր փուլի կապակցությամբ հասարակության մեջ տեղի ունեցող փոփոխությունների վերաբերյալ որոշ տվյալներ, կիրառելով վերլուծության ակնհայտ սխալ մեթոդներ, քողարկելով տեխնիկական հեղափոխության և, մասնավորապես, արտադրության ավտոմատացման, այժմ արդեն դրսևորվող, կապիտալիզմի համար անցանկալի սոցիալական հետևանքները, այդ գիտնականները փորձում են ապացուցել, թե կապիտալիզմն ապրում է բուռն սոցիալ-տնտեսական վերածնունդ, որը, իբր, լիովին վերացնում է այդ հասարակարգի բոլոր հիմնական հակասությունները: Նոր ապրելակերպ, նոր մասսաներ, հասարակության սոցիալ-դասակարգային կազմի նոր կառուցվածք, կյանքի մակարդակի համահարթում, որ տանում է դեպի նոր, այսպես կոչված՝ միջին դասակարգերի մակարդակը, էկոնոմիկայում գործազրկությունից և դեպրեսիաների ժամանակաշրջանից զերծ մնալու վերջնական երաշխիքներ՝ ահա, կապիտալիզմի ջատագով-գիտ-

նականների կարծիքով, այն գծերը, որոնք իբր ծագում են դինամիկորեն զարգացող արևմտյան ինդուստրիալ հասարակության հովանու ներքո։

Ինդուստրիալ հեղափոխության բուրժուա-ջատագովական և ռեֆորմիստական մեկնությունների հիմնավորված քննադատության փոխարեն՝ այդ հարցն ուսումնասիրող շատ մասնագետներ կանգնել են արդյունաբերական նոր հեղափոխության հնարավորությունները ժխտելու ուղու վրա, գտնելով, թե այդ երևույթը սոցիալ-տնտեսական մի յուրօրինակ պրոցես է, որը հատուկ է արտադրության կապիտալիստական եղանակի վերջնական ձևավորման դարաշրջանին, և լավագույն դեպքում համաձայնում են այն բանին, որ այդ տերմինով կարելի կլինի բնութագրել սոցիալիստական հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսները։ Միայն վերջին տարիներին մեր սոցիոլոգիական գրականության մեջ երևան եկան այդ դիրքորոշումը վերանայող հոդվածներ ու աշխատություններ։ Առաջին այդպիսի աշխատանքը, որքան մեզ հայտնի է, Կուրտ Տեսմանի Գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմները (տե՛ս Курт Тессман, Проблемы научно-технической революции, стр. 239—241) գրքի ռուսերեն թարգմանության վերաբերյալ Ա. Ա. Կուզինի և Ս. Վ. Շուխարդինի վերջաբանն է։ Որոշ ժամանակ անց, բայց ավելի որոշակի, այդ կոնցեպցիան զարգացվում է մեր կողմից արդեն հիշատակված Գ. Ն. Վոլկովի գրքում (Г. Н. Волков, Эра роботов или эра человека, стр. 135—147)։ Հիմնականում համաձայնելով վերոհիշյալ հետազոտողների տեսակետին, հարկ ենք համարում արտահայտել մի քանի նկատառումներ։

Նախ՝ գիտատեխնիկական հեղափոխության և ինդուստրիալ հեղափոխության փոխհարաբերակցության մասին։ Ըստ մարքսյան դիալեկտիկայի, գիտատեխնիկական հեղափոխությունը, որպես արտադրաուժերի տարրերի համակարգում կատարված մի հեղափոխական շրջադարձ, արտադրաեղանակի երկու կողմերի փոխադարձ կապերում, օրինաչափ անխուսափելիությամբ վերաճում է արդյունաբերական հեղափոխության, ավելի ճիշտ վերջինս ամեն մի ինդուստրիալ հեղափոխության առաջին, անհրաժեշտ փուլն է։

Արդյունաբերական հեղափոխությունը՝ որպես սոցիալ-տնտեսական կատեգորիա, արտահայտում է հասարակական բոլոր հարաբերություններում տեղի ունեցող էական փոփոխությունը արտադրաուժերի հիմնական տարրերի՝ աշխատանքի գործիքների և, համապատասխանաբար՝ արտադրող մարդու ունակությունների, գիտելիքների և հմտությունների զարգացման ասպարեզում։ Ամեն մի ինդուստրիալ հեղափոխության ելակետ տեխնիկական կամ գիտահետազոտական հեղափոխությունն է։ Ամեն մի ինդուստրիալ հեղափոխություն արտադրության գործիքների ու միջոցների բնագավառում կատարված արմատական հեղաշրջման և դրա սոցիալ-տնտեսական հետևանքների անհրաժեշտ միասնությունն է։

Ինդուստրիալ հեղափոխությունը, որպես սոցիալ-տնտեսական կատեգորիա, կապված է այն արտադրահարաբերությունների տիպի հետ, որտեղ կատարվում է։ Եթե հեղափոխության շարժիչ ուժը աշխատանքի արտադրագործիքների բնագավառում կատարված արմատական հեղաշրջումն է, ապա դրա ուղղությունը, առաջշարժման տեմպը և սոցիալական արդյունքների բնույթը ամբողջությամբ պայմանավորված են նյութական արտադրահարաբերությունների բնույթով ու տիպով, համապատասխանելով կամ չհամապատասխանելով արտադրաուժերի զարգացման մակարդակին։

Այնպիսի պայմաններում, երբ արտադրահարաբերությունները համա-



պատասխանում են արտադրաուժերի զարգացման մակարդակին, ինդուստրիալ հեղափոխությունը, հետևելով սոցիալական հեղափոխությանը, հանդես է գալիս որպես մեծագույն պոզիտիվ ուժ, իրենով նշանավորում է նոր արտադրահարաբերությունների վերջնական ձևավորումն ու հաստատումը և հասարակության անցումը տվյալ սոցիալ-տնտեսական ֆորմացիայից նոր, ավելի բարձր փուլի։ Այնպիսի պայմաններում, երբ տվյալ տիպի արտադրահարաբերությունները չեն համապատասխանում արտադրաուժերի զարգացման մակարդակին, ինդուստրիալ հեղափոխությունը հանդես է գալիս որպես տվյալ հասարակարգը բացասող հզոր մի գործոն, որը կոչված է վերջնականապես սասանելու արտադրության՝ իր դարն ապրած եղանակի հիմքերը և նրան մոտեցնելու նոր, սոցիալիստական հեղափոխությանը։

Քանի որ արդյունաբերական հեղափոխությունը բնութագրվում է հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմի էական փոփոխություններով, անհրաժեշտ է փորձել այդ հասկացությունը սահմանազատել «սոցիալական հեղափոխության» հասկացությունից։ Սոցիալական հեղափոխությունների բոլոր ասպեկտների քննարկումն ու բնութագրումը տվյալ հոդվածի պրոբլեմատիկայի շրջանակների մեջ չեն մտնում։ Մեզ համար կարևոր է սոսկ նշել, որ սոցիալական հեղափոխությունները սովորաբար նշանավորում են հին, իրենց դարն ապրած արտադրահարաբերությունների հեղափոխական փոխարինմամբ որակապես նոր արտադրահարաբերություններով. հասարակության անցումով մեկ սոցիալ-տնտեսական ֆորմացիայից մեկ այլ սոցիալ-տնտեսական ֆորմացիայի: Մինչդեռ, արդյունաբերական հեղափոխությունները, ինչպես վերն ասվեց, կամ հաջորդում են սոցիալական հեղափոխություններին և իրենցում նշանավորում նոր արտադրահարաբերությունների վերջնական ձևավորումն ու հաստատումը և հասարակության անցումը տվյալ սոցիալ-տնտեսական ֆորմացիայից նոր՝ ավելի բարձր փուլի, կամ նախորդում սոցիալական հեղափոխություններին և իրենցով նշանավորում հին հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական հակասությունների չտեսնըված սրումը և այդ հասարակությանը մոտեցնում սոցիալական հեղափոխությանը: Այսպիսով, եթե սոցիալական հեղափոխությունները խորտակում են հին արտադրահարաբերությունները և հիմնում նորերը, ապա ինդուստրիալ հեղափոխություններն այդպիսի ֆունկցիա չունեն, դրանց գործողությունները սահմանափակվում են եղած հարաբերությունների շրջանակներով։

Նոր ինդուստրիալ հեղափոխությունը սոցիալ-տնտեսական մի երևույթ է, որ ծագել է համաշխարհային պատմության բեկումնային պահին, համաշխարհային կապիտալիզմի ռեակցիոն ուժերի դեմ սոցիալիզմի և առաջադիմական աշխարհի կողմից մղվող սուր պայքարի ժամանակաշրջանում։ Այդ պայքարի ընթացքում ինդուստրիալ հեղափոխությունը պատմության կշեռքի նժարի վրա է դնում այնպիսի մի ծանրակշիռ գործոն, ինչպիսին շեշտակի թռիչքն է արտադրաուժերի զարգացման ասպարեզում։ Երբ երկրորդ ինդուստրիալ հեղափոխության սոցիալական ներքին ուժը դրսևորվի լիակատար չափով, կապիտալիստական հասարակության տնտեսական ու դասակարգային հակասությունների ծավալումն ու սրումը հիրավի կատաստրոֆիկ բնույթ կընդունի։ Երկրորդ արդյունաբերական հեղափոխության սկիզբը կապիտալիզմի համար նշանավորում է դասակարգային գոտեմարտերի մի նոր, հսկայական մրցաշրջան, որի արդյունքներն անտարակույս ճակատագրական կլինեն իր պատմական արդարացումը կորցրած հասարակարգի համար։

**Ս. Ա. ԲԱԴԱԼՅԱՆ**

Տնտեսական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ ԵՎ ԱՊՐԱՆՔԱ-ԴՐԱՄԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

*Սոցիալիստական տնտեսավարման թեորիայի ու պրակտիկայի բնագավառի խոշոր ու բարդ հարցերից մեկը ապրանքա-դրամական հարաբերությունների ճիշտ իմաստավորումն է։*

*Ավելի քան հիսուն տարի է, ինչ սոցիալիզմի շինարարության պրոցեսում, մեծ թե փոքր չափերով, օգտագործվում են ապրանքա-դրամական հարաբերությունները։ Այդ ժամանակաշրջանում մեր տնտեսագիտական գրականության մեջ տեղի են ունեցել սուր բանավեճեր՝ սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրության գոյության անհրաժեշտության, ապրանքա-դրամական հարաբերությունների և արժեքի օրենքի օգտագործման, պլանի ու շուկայի հարաբերակցության և այլ հարցերի վերաբերյալ։ Անշուշտ, այդ բանավեճերը, եթե նկատի չունենանք հազվագյուտ բացառությունները, կրել են ո՛չ թե սխոլաստիկ, այլ ստեղծագործական բնույթ։ Այդ տեսակետից ուշադրության արժանի են, մասնավորապես, տնտեսական ռեֆորմի նախօրյակին, սոցիալիստական էկոնոմիկայում ապրանքա-դրամական հարաբերությունների և արժեքի օրենքի օգտագործման, դրանց բնույթի և գործողության ոլորտի կապակցությամբ ծավալված բանավեճերը։ Այդ բանավեճերը շարունակվում են նաև ռեֆորմի պայմաններում, որոնք վկայում են, որ սովետական տնտեսագիտական միտքը փորձում է ավելի ու ավելի խոր թափանցել սոցիալիզմի ժամանակ գոյություն ունեցող ապրանքա-դրամական հարաբերությունների էության մեջ, բազմակողմանի ճանաչել դրանք և օգտագործել սոցիալիստական տնտեսավարման պրակտիկայում։*

*Ինչպես մինչ տնտեսական ռեֆորմը, այնպես և ռեֆորմից հետո, ապրանքային արտադրության շուրջ տեղի ունեցած բանավեճերում կարելի է նշել երկու ծայրահեղ դիրքավորում։ Առաջինը հանգում է սոցիալիստական արտադրության ապրանքային բնույթի ժխտմանը, որ իբր թե սոցիալիզմի*

*) Տպագրվում է հարցադրման կարգով— Խմբ.։



*ժամանակ գոյություն ունեն ապրանքա-դրամական հարաբերություններ՝ առանց ապրանքային արտադրության։ Այլ խոսքով, գոյություն ունեն ապրանքա-դրամական ձևեր միայն, իսկ արտադրությունն ապրանքային չէ։ Այդ նշանակում է, որ կա ձև առանց բովանդակության։ Նման հարցադրումը զուրկ է ամեն հիմքից ու տրամաբանությունից։ Երկրորդ դիրքավորումը, որը տարածվեց, մասնավորապես, ռեֆորմից հետո, սոցիալիստական էկոնոմիկայում չափից ավելի մեծացնում է ապրանքա-դրամական հարաբերությունների դերը և փորձում դրանք հակադրել տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարմանը։*

*Սոցիալիզմի ժամանակ ապրանքա-դրամական հարաբերությունների վերաբերյալ այդ երկու դիրքավորումներն էլ չեն բխում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման պրակտիկայից։ Առաջին հայացքից թվում է, թե վերը բերված դիրքավորումները փոխադարձորեն բացառում են մեկը մյուսին. սակայն իրականում այդպես չէ։ Ընդհակառակը, դրանց միջև կա այն ընդհանրությունը, որ երկուսն էլ կառուցված են ո՛չ թե սոցիալիստական ու կոմունիստական շինարարության կոնկրետ փորձի և տնտեսական կյանքի զարգացման իրական պրոցեսների վերլուծության, այլ վերացական հետևությունների և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններից առանձին մեջբերումների ֆորմալ մեկնաբանումների վրա։ Անկասկած, սոցիալիստական ձեռնարկություններում արտադրված արդյունքն ունի ո՛չ միայն ապրանքային ձև, այլև, ըստ էության, ապրանք է։ Ակներև է, որ ապրանքային արտադրությունն արտադրության կազմակերպման և արդյունքների արտադրության վրա հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների որոշման ձև ու եղանակ է։*

*Անցյալում ապրանքա-դրամական հարաբերությունների թերագնահատումը խախտում էր սոցիալիստական էկոնոմիկայի գիտական ղեկավարման հիմքերը, սահմանափակում արտադրության մեջ տնտեսական մեթոդների օգտագործումը, թուլացնում հանրային արտադրության զարգացման և դրա արդյունավետության բարձրացման պրոցեսում նյութական խթանների գործողությունը։ Դեռ ավելին, ապրանքային արտադրության և արժեքային կատեգորիաների դերի թերագնահատումը հնարավորություն չէր տալիս գիտականորեն ըմբռնել գնագոյացման և սոցիալիստական արտադրության շահութաբերության հարցերը, որը գործնականորեն խախտում էր լրիվ տնտեսական հաշվարկի կազմակերպման սկզբունքը։*

*Ներկայումս սովետական տնտեսագետներից և ոչ մեկը չի ժխտում սոցիալիստական տնտեսավարման պրակտիկայում ապրանքա-դրամական հարաբերությունների գոյությունը և դրանց օգտագործման օբյեկտիվ անհրաժեշտությունը։*

*Մեր երկրում իրականացվող տնտեսական ռեֆորմը սոցիալիզմի ժամանակ ապրանքա-դրամական հարաբերությունների բնույթի ավելի խոր ճանաչման, այդ հարաբերությունները սոցիալիստական տնտեսավարման պրակտիկայում առավել ակտիվ օգտագործելու մի նոր ու կարևոր էտապ է։ Ռեֆորմը, անտարակույս, սովետական էկոնոմիկայի զարգացման բարձր մակարդակի արդյունք է։ Բայց չպետք է մոռանալ, որ այն չէր կարող իրագործվել առանց սովետական տնտեսագիտության զարգացման որոշակի նվաճումների, մասնավորապես, ապրանքա-դրամական հարաբերությունների բնույթի և սոցիալիստական արտադրության կազմակերպման պլանային*

սիստեմում դրանց տեղի ու դերի խոր ու բազմակողմանի ուսումնասիրու-
թյան։ Իհարկե, չափազանցություն կլինի ասել, որ ռեֆորմի իրագործմամբ
սոցիալիստական էկոնոմիկայում ապրանքա-դրամական հարաբերություն-
ների բոլոր պրոբլեմները դարձել են պարզ ու հասարակ։ Ընդհակառակը, ռե-
ֆորմն ստեղծելով սոցիալիստական տնտեսավարման մեջ ապրանքա-դրա-
մական հարաբերությունների ակտիվ օգտագործման ավելի նպաստավոր
պայմաններ, հարուցել է նոր պրոբլեմներ, որոնք պահանջում են ճիշտ պա-
տասխաններ, գիտական մտահանգումների կոնկրետություն ու հստակու-
թյուն։

Սոցիալիզմի ժամանակ շատ կարևոր է ապրանքային արտադրության
բնույթի և նրա գոյության անհրաժեշտության հարցը։ Արտադրության մի ե-
ղանակը փոխարինվելով մի այլ եղանակով, անխուսափելիորեն փոխվել են
նաև ապրանքային արտադրության բնույթն ու նշանակությունը։ «Ապրանք-
ների արտադրությունն ու շրջանառությունը,— գրել է Մարքսը,— այնպիսի
երևույթներ են, որոնք հատուկ են արտադրության ամենատարբեր եղանակ-
ներին, թեև նրանց ծավալն ու նշանակությունը երբեք էլ միատեսակ չեն»
(Կապիտալ, հ. I, 1954, էջ 122)։

Արտադրության սոցիալիստական եղանակի պայմաններում արմատա-
պես փոխվում է ապրանքա-դրամական հարաբերությունների բնույթը։ Սո-
ցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրությունը զարգանում է արտա-
դրամիջոցների հասարակական սեփականության և տնտեսության պլանաչափ
զարգացման բազայի վրա։ Դա ապրանքային արտադրության նոր տիպ է,
որը ձեռք է բերում որակապես նոր բովանդակություն և սոցիալ-տնտեսա-
կան բնույթով ու գործողության ոլորտով սկզբունքորեն տարբերվում է կա-
պիտալիստական ապրանքային արտադրությունից։ Այդ արտահայտվում է
նրանով, որ սոցիալիզմը մեկընդմիշտ վերացրել է արտադրամիջոցներից
աշխատուժի օտարման պատմական անարդարությունը։ Արտադրողները ո՛չ
թե զուրկ են արտադրամիջոցներից, այլ դրանց տերերն են, որի շնորհիվ աշ-
խատուժը դադարել է ապրանք լինելուց։ Սոցիալիզմի պայմաններում ապ-
րանքային արտադրությունն էկոնոմիկայի ճյուղերի, ձեռնարկությունների և
մարդկանց միջև պլանաչափ տնտեսական կապերի կազմակերպման անհրա-
ժեշտ ձևերից մեկն է, որը զերծ է կապիտալիզմի այնպիսի արատներից,
ինչպիսիք են՝ վարձու աշխատանքի շահագործումը, մրցակցությունը և անար-
խիան, արտադրության տարերայնությունն ու տնտեսական ճգնաժամերը և
այլն։

Սոցիալիզմի ժամանակ արտադրաուժերի, հանրային արտադրության
զարգացման և հասարակական աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման ձեռք բերված մակարդակը դեռևս թույլ չի տալիս անցնել սոցիա-
լիստական ձեռնարկություններում արտադրվող արտադրանքի վրա կատար-
ված աշխատանքային ծախսումների ուղղակի և անմիջական հաշվառման ու
բաշխման ավելի կատարելագործված տնտեսական կատեգորիաների կի-
րառման։ Չնայած սոցիալիզմի ժամանակ աշխատանքն ունի անմիջական
հասարակական բնույթ, բայց այն դեռևս չի ենթարկվում ուղղակի հաշ-
վառման և պահանջում է անուղղակի, միջնորդավորված, այսինքն՝ ար-
ժեքային, դրամական հաշվառում։ Սոցիալիզմի պայմաններում ինչպես
առարկայացած (արտադրամիջոցների), այնպես էլ կենդանի (աշխատուժի)
աշխատանքի ծախսումները չեն կարող չափվել բանվորական ժամանակի



միավորներով (ժամ, օր և այլն), այլ չափվում են արժեքային, դրամական
ձևով միայն։

Իհարկե, այստեղ խոսքը վերաբերում է ո՛չ թե աշխատանքի ծախսում-
ների զուտ քանակական, այլ տնտեսական չափմանը, այսինքն՝ արտադրան-
քի արտադրման հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների
որոշմանը, որով պայմանավորվում է սոցիալիստական ձեռնարկությունում
պլանաչափորեն արտադրվող ու իրացվող ապրանքի հասարակական արժեքի
մեծությունը։ Այդ նշանակում է, որ հասարակության զարգացման սոցիա-
լիստական փուլում ապրանքա-դրամական հարաբերությունների կապերի
օգտագործման միջոցով միայն կարելի է որոշել արտադրանքի արտադրման
վրա կատարված աշխատանքային ծախսումների չափն ու ստացված ար-
դյունքները, դրանք համեմատել աշխատանքի այլ կոնկրետ տեսակների
ծախսումների և արդյունքների հետ։ Ծախսված աշխատանքի անուղղակի,
արժեքային, դրամական հաշվառման հիման վրա միայն կարելի է համեմա-
տել նաև հանրային արտադրության և հասարակական արդյունքի մեջ յուրա-
քանչյուրի աշխատանքի ու սպառման չափը։ Այդ նշանակում է, որ սոցիա-
լիզմի ժամանակ աշխատանքը դեռևս օբյեկտիվորեն կարիք ունի նյութական
խթանման, որն իրագործվում է աշխատանքի ծախսումների արժեքային,
դրամական և դրա վարձատրման չափերի ճիշտ որոշման ու սահմանման
ուղիով։

Քանի որ սոցիալիզմի ժամանակ արդյունաբերական ու գյուղատնտե-
սական, մտավոր ու ֆիզիկական, բարդ ու պարզ, ծանր ու թեթև աշխատանք-
ների միջև և այլն գոյություն ունեն տարբերություններ, դրանց չափակցումը
կարող է իրագործվել աբստրակտ աշխատանքի բազայի վրա միայն, այսինքն՝
արժեքային ձևով։ Աբստրակտ աշխատանքով է արտահայտվում այն ընդ-
հանուրը, որը պարունակվում է սոցիալիստական աշխատանքի տարբեր
կոնկրետ ձևերի մեջ և հավասարեցվում են աշխատանքի առանձին կոնկրետ
տեսակների տարբերությունները, դրանք դրսևորվում են որպես հասարա-
կականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների որոշակի քանակներ։
Այսպիսով, սոցիալիզմի ժամանակ ապրանքա-դրամական հարաբերություն-
ների անհրաժեշտությունը պայմանավորված է աշխատանքային ծախսում-
ների արժեքային, դրամական չափակցման, արտադրագործունեության տար-
բեր տեսակների միջև համարժեքային փոխանակության, արտադրամիջոցնե-
րի սոցիալիստական սեփականության երկու ձևերի գոյությամբ և ըստ աշ-
խատանքի բաշխման օբյեկտիվ պահանջներով։

* * *

Ապրանքային արտադրության հետ կապված մյուս կարևոր հարցը սո-
ցիալիստական էկոնոմիկայում արժեքի օրենքի գործողությունն է, որն ապ-
րանքային արտադրության տնտեսական օրենքն է։ Այդ օրենքի գործողու-
թյունն արտահայտվում է նրանով, որ ապրանքների արտադրությունը տեղի
է ունենում դրանց մեջ առարկայացած հասարակականորեն անհրաժեշտ
աշխատանքի քանակի համեմատ։ Այլ կերպ ասած, ապրանքների փոխանա-
կության համամասնությունների հիմքում ընկած է արժեքի օրենքը։ Այդ
օրենքով որոշվում է ապրանքների մեջ առարկայացած հասարակականորեն
անհրաժեշտ աշխատանքի ծախսումների չափը։

Կապիտալիզմի ժամանակ արժեքի օրենքը գլխավոր կարգավորիչի դեր է կատարում։ Արժեքի օրենքի գործողությամբ է, որ արտադրամիջոցները և աշխատուժը տարերայնորեն բաշխում է կապիտալիստական արտադրության տարբեր ճյուղերի միջև։

Սոցիալիստական էկոնոմիկայում արժեքի օրենքի գործողության առանձնահատկությունն այն է, որ դա չի հանդիսանում արտադրության պրոցեսի գլխավոր կարգավորիչը։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում տնտեսության զարգացման համամասնությունները, տեմպերն ու մասշտաբները որոշվում են սոցիալիզմի տնտեսական օրենքների ամբողջ սիստեմի՝ հիմնական տնտեսական օրենքի, ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնական զարգացման և մյուս տնտեսական օրենքների, այդ թվում՝ արժեքի օրենքի պահանջների, համապատասխան։ Արժեքի օրենքը գործում է ո՛չ թե մեկուսի, այլ սոցիալիզմի տնտեսական օրենքների ամբողջ սիստեմում, որի շնորհիվ այն օգտագործվում է պլանաչափորեն։

Եթե ընդունենք, որ արժեքի օրենքն արտադրության գլխավոր կարգավորիչն է, ապա այդ դեպքում պետք է ընդունենք, որ այն գործում է ինքնաբավ, անկախ սոցիալիզմի արտադրահարաբերությունների ներգործությունից, այսինքն՝ իր գործողությամբ չեզոքացնում է սոցիալիստական էկոնոմիկայի պլանաչափ զարգացումը, որպես օբյեկտիվ պահանջ։ Դեռ ավելին, սոցիալիստական էկոնոմիկայում արժեքի օրենքին գլխավոր կարգավորչի դեր վերապահելն անխուսափելիորեն կհասցնի սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության և ժողովրդատնտեսական պլանի դերի պասսիվության։ Հետևաբար, սոցիալիզմի ժամանակ արժեքի օրենքը չի կարող լինել այն գլխավոր գործիքը, որը որոշում է տնտեսության զարգացման գլխավոր ուղղությունն ու նպատակը։ Բայց դա չի նշանակում, որ ժողովրդատնտեսական պլաններն արդյունավետ իրացնելու համար չպետք է ակտիվ օգտագործել արժեքի օրենքն ու արժեքային կատեգորիաները։

Սոցիալիստական էկոնոմիկայում արժեքի օրենքի գործողությունը, ամենից առաջ, դրսևորվում է գների սիստեմի միջոցով։

Վ. Ի. Լենինը բացահայտելով գնի և արժեքի կապն ու փոխհարաբերությունը, այսինքն՝ գնի անմիջական կախվածությունն ապրանքի արժեքից, որպես նրա հիմքի, գրել է. «Գինը հանդիսանում է արժեքի օրենքի արտահայտությունը։ Արժեքը գների օրենքն է, այսինքն՝ գնի երևույթի ընդհանրացած արտահայտությունը» (Երկեր, հ. 20, էջ 241)։ Այս շատ արժեքավոր դրույթն իր ուժը պահպանում է նաև սոցիալիստական արտադրահարաբերություններում։ Սոցիալիզմի էկոնոմիկայում գնագոյացումն իրագործվում է ո՛չ թե տարերայնորեն, այլ պլանաչափ ու կենտրոնացված։ Իհարկե, այդ չի չեզոքացնում արտադրության վրա արժեքի օրենքի ներգործությունը։ Ընդհակառակը, հենց գների, այսինքն՝ արտադրության արդյունքների և աշխատանքի ծախսումների արժեքային չափման միջոցով է, որ արժեքի օրենքը ներգործում է արտադրության վրա, թույլ տալիս այն չափակցել ու համեմատել պահանջմունքների հետ, օգնում համամասնությունների պահպանմանը, ազդում այս կամ այն արտադրանքի արտադրածախքերի, պահանջարկի և առաջարկի բալանսավորման վրա։ Ուստի, տնտեսական ռեֆորմի գլխավոր խնդիրներից մեկը՝ գները հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումների մակարդակին առավելագույն չափով մոտեցնելն է։ Դա ռե-



ֆորմի օբյեկտիվ պահանջներից է։ Պատահական չէ, որ տնտեսավարման նոր սիստեմում, երբ ժողովրդական տնտեսության ղեկավարման ծանրության կենտրոնը փոխադրվել է տնտեսական մեթոդների ոլորտի ընդլայնման բնագավառը, ամենայն սրությամբ առաջ է քաշվում գների գիտականորեն հիմնավորված սիստեմի ստեղծման խնդիրը։ Արդյունաբերության մեջ 1967 թ. հուլիսի 1-ից մեծածախ գների ռեֆորմը մի կարևոր քայլ է այդ խնդրի լուծման ճանապարհին։

Տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում արտադրության վրա արժեքի օրենքի ակտիվ ներգործությունը պետք է արտահայտվի նաև նրանով, որ գների մեջ հաշվի առնվեն արտադրանքի որակը և գիտատեխնիկական առաջադիմության պահանջները։ Մեծածախ գներն արդյունաբերական արտադրանքի որակը բարձրացնելու, դրա հուսալիությունը և երկարակեցությունը, ինչպես նաև գիտատեխնիկական առաջադիմությունը խթանելու մի յուրատեսակ լծակ է։ Այս կարևորագույն խնդրի հաջող լուծման համար գների մեջ ո՛չ միայն պետք է արտացոլվեն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները, այլև հաշվի առնվեն արտադրանքի որակը, դրա ժողովրդատնտեսական արդյունավետությունը։ Դրան կարելի է հասնել գնագոյացման մեթոդների հետագա կատարելագործման ուղիով։

Արժեքի օրենքի կարևոր պահանջներից է նաև համարժեքային փոխանակության սկզբունքի պահպանումը։

Սոցիալիստական էկոնոմիկայում վերարտադրության նորմալ ընթացքը և տնտեսական հաշվարկի կիրառման շահերը պահանջում են համարժեքային կապերի ընդլայնում ու զարգացում։ Համարժեքային փոխանակության պահպանման անհրաժեշտության հարցը, ըստ էության, իր արտահայտությունն է գտել ՍՄԿԿ ծրագրում. այնտեղ ասված է. «Գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության ու շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ կերպով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկությանը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 512)։

Ինչպես հայտնի է, ոչ վաղ անցյալում կոլտնտեսային արտադրանքի գնագոյացման խոշոր թերությունները խախտում էին քաղաքի և գյուղի միջև համարժեքային փոխանակության սկզբունքը։ Գյուղատնտեսական արտադրանքի շատ տեսակների գները չէին փոխհատուցում անգամ դրանց ինքնարժեքը, որը հանդիսացավ գյուղատնտեսական արտադրության ետ մնալու և իրենց աշխատանքի արդյունքներում գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության թուլացման հիմնական պատճառներից մեկը։ Այլ կերպ ասած, քաղաքի և գյուղի միջև տեղի ունեցող տնտեսական հարաբերությունների սիստեմում խախտվել էր արժեքի օրենքի կարևորագույն պահանջներից մեկը՝ համարժեքային փոխանակության սկզբունքը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումում (1965 թ.) սուր քննադատվեց արդյունաբերական ու կոլտնտեսային արտադրանքի փոխանակության ոլորտում տնտեսական օրենքների, մասնավորապես, արժեքի օրենքի, պահանջի խախտման փաստը։ Ելնելով համարժեքային փոխանակության սկզբունքից, զգալի չափով բարձրացվեցին գյուղատնտեսական արտադրանքի գները։

Արդի ժամանակաշրջանում կարևոր է համարժեքային փոխանակության սկզբունքը պահպանել ո՛չ միայն քաղաքի և գյուղի, այլև պետական տնտեսության ճյուղերի ու ձեռնարկությունների միջև։ Սխալ է այն պատկերացու-

մը, թե քանի որ պետական սեկտորում արտադրամիջոցների ու արտադրության արտադրանքի սեփականատերը մեկն է, ուստի համարժեքային փոխանակությունն իբր պարտադիր չէ և արժեքի օրենքն ու գներն այստեղ կորցնում են իրենց ակտիվ դերը։ Այս բխում է այն կարևոր փաստի անտեսումից, որ ապրանքա-դրամական հարաբերությունների պայմաններում սոցիալիստական ձեռնարկությունններն աշխատելով տնտեսական հաշվարկի սկզբունքով, ժողովրդատնտեսական միասնական պետական պլանի շրջանակներում ձեռք են բերում որոշակի ինքնուրույնություն։ Դրա պատճառով ձեռնարկության տնտեսական շահերը, արտադրանքի իրացման և գնման նրա կապերը միջնորդավորվում են ապրանքաշրջանառությամբ, որոնք պահանջում են պահպանել համարժեքայնության սկզբունքը։ Իսկ այդ կարող է հետևողականորեն պահպանվել միայն գիտականորեն հիմնավորված գների հիման վրա։ Տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում գների, որպես արժեքի չափի, դերի բարձրացումը կապված է աշխատանքի արդյունքների փոխանակության համարժեքայնության պահպանման հետ։

* * *

Տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում ապրանքա-դրամական հարաբերությունների և արժեքի օրենքի օգտագործման հետ կապված մյուս կարևոր հարցը պլանի և շուկայի կապն ու փոխհարաբերությունն են։

Սոցիալիզմի ժամանակ պլանը և շուկան փոխադարձ կապված են մեկը մյուսի հետ և մի օրգանական միասնություն են կազմում։ Ապրանքա-դրամական հարաբերությունների գոյության պայմաններում պլանը ո՛չ թե բացառում, այլ, ընդհակառակը, իր մեջ պարունակում է շուկայական հարաբերությունների ակտիվ օգտագործման լայն հնարավորություններ։ Պլանը հենվում է նաև շուկայի վրա, չի կարելի դրանք հակադրել մեկը մյուսին։ Եվ դա հասկանալի է. քանի որ շուկան սոցիալիստական էկոնոմիկայի բաղկացուցիչ մասն է, ենթարկվում է դրա զարգացման օրինաչափություններին և պլանավորման միջոցով ներգործում հասարակական արտադրության ողջ ընթացքի վրա։ Իհարկե, սխալ է այն մոտեցումը, երբ դիրեկտիվ պլանավորումը համարվում է սուբյեկտիվ երևույթ, իսկ օբյեկտիվ չափանիշների ձևավորումը, իբր թե, տեղի է ունենում շուկայում։ Իսկ ո՞րն է այդ դեպքում պրոբլեմը։ Պրոբլեմն այն է, թե որքանով է պլանը ճիշտ հաշվի առնում էկոնոմիկայի և նրա մի մասը կազմող շուկայի օբյեկտիվ պահանջները, թե որքան խոր է ուսումնասիրվում պահանջարկը և դրան համապատասխան ժամանակին վերակազմվում արտադրությունը։

Ոմանք գտնում են, որ այդ հաշվառումը չի կարող իրագործվել կենտրոնացված կարգով։ Այստեղից էլ ձեռնարկության լիակատար ինքնուրույնության պահանջը, այսինքն՝ այն պետք է իր տնտեսական գործունեությունն իրագործի շուկայի պահանջներին համապատասխան միայն։ Այդպես մտածողները մոռանում են, որ սոցիալիստական էկոնոմիկան չի կարող զարգանալ առանց կենտրոնացված ղեկավարման, որը բխում է ինչպես արտադրության հասարակական բնույթից, այնպես էլ թելադրվում գիտատեխնիկական առաջադիմության ժամանակակից տեմպերով։ Իհարկե, շուկայում տեղի ունեցող փոփոխություններին ավելի լայնորեն արձագանքելու համար ձեռնարկությունը պետք է ունենա որոշ ինքնուրույնություն և հնարավորություն։ Սխալ կլինի մտածել, որ կենտրոնացված ղեկավարման շրջանակներում, արտադրության զարգացման ու տնտեսական հարցերի լուծման գործում, բացառվում է ձեռնարկության հարաբերական ինքնուրույնությունը։ Ընդհակառակը, տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում ինչպես շատ ցուցանիշների ինքնուրույն ընդունման, այնպես էլ արտադրության զարգացման, նյութական խթանման և սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդերի կազմման ու օգտագործման բնագավառում ձեռնարկություններն ստացել են մեծ հնարավորություններ։ Հետևաբար, սոցիալիստական հասարակարգում պրոբլեմը հանգում է կենտրոնացման և ապակենտրոնացման չափի հարաբերակցության հարցին։



Պլանի և շուկայի փոխհարաբերության հարցը սերտորեն կապված է արտադրանքի իրացման պրոբլեմի հետ։ Տնտեսավարման նոր սիստեմում կարևոր տեղ է հատկացվում արտադրանքի իրացմանը, քանի որ դա արտադրանքի վրա ծախսված աշխատանքի հասարակական բնույթի, դրա օգտակարության վերջնական ճանաչումն ու ընդունումն է։

Երկար ժամանակ մեր տնտեսագիտական գրականության մեջ տարածված էր այն սխալ կարծիքը, թե սոցիալիզմի ժամանակ, որտեղ ժողովրդատնտեսական միասնական պլանն ընդգրկում է հասարակական արտադրանքի արտադրությունը, բաշխումը, փոխանակությունը և սպառումը, վերանում է արտադրանքի իրացման պրոբլեմը։ Մինչդեռ, ապրանքային արտադրության պայմաններում, որտեղ գործում է առաջարկի և պահանջարկի օբյեկտիվ տնտեսական օրենքը, տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարությունը ո՛չ թե ժխտում, այլ, ընդհակառակը, պահանջում է ըստ ամենայնի օգտագործել շուկայական հարաբերությունները։ Ապրանքի իրացումը, այսինքն՝ դրա փոխարկումը փողի, ո՛չ թե ձևական ակտ է, այլ սոցիալիստական ընդլայնված վերարտադրության շատ կարևոր տնտեսական կողմերից մեկը։



Գ. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ԱՐԵՎԵԼՔԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՆԱՎԹԱՅԻՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԻ ԴԵՄ

Ժամանակակից աշխարհում նավթի նշանակությունը դժվար է գերագնահատել։ Պատահական չէ, որ այն անվանում են «սև ոսկի», «էկոնոմիկայի արյուն»։

1870 թ. աշխարհում նավթի հանույթը կազմում էր 800 հազար, իսկ 1968 թ. 1590 մլն տոննա։ Տնտեսագետների հաշվարկումներով 1970 թ. այն կկազմի 2 մլրդ տոննա։ Վերջին 45 տարում նավթի պաշարներն աճել են 8 անգամ (48,4 մլրդ), իսկ հանույթը՝ 14։ Հաշվումները ցույց են տալիս, որ ԱՄՆ-ի նավթի պաշարները կբավարարեն 12—14 տարի, Քուվեյթինը՝ 100, Սաուդյան Արաբիայինը՝ 80 տարի և այլն։ Ի դեպ, նավթարդյունաբերության տարեկան միջին աճը կազմում է 7 տոկոս, իսկ արդյունաբերության մյուս ճյուղերինը՝ 2,3։ Ներկայումս կապիտալիստական աշխարհում նավթի հանույթը կենտրոնացված է «մեծ ութնյակի», այսինքն՝ մոնոպոլիստական 8 ընկերությունների ձեռքում։ Դրանցից հինգը՝ ամերիկյան նավթային մագնատներն են, իսկ մնացածը՝ անգլո-ֆրանս-հոլանդական, որոնցից յուրաքանչյուրն իր մասնաճյուղերն ունի աշխարհի տարբեր երկրներում։

Տարեցտարի աճում են նավթային մոնոպոլիաների շահույթները։ 1967 թ. միայն ամերիկյան մագնատների նավթային շահույթները կազմեցին 3,5 մլրդ դոլար, այսինքն՝ 3000 տոննա ոսկի։ Իսկ 1968 թ. առաջին եռամսյակում, 1967 թ. նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, շահույթներն ավելացան 30 տոկոսով։ Կապիտալիստական աշխարհի հարուստ նավթային շրջաններն են Մերձավոր և Միջին Արևելքը, որի նավթի պաշարները կազմում են 66,5 տոկոս, Հյուսիսային Աֆրիկայում՝ 8,8, Հարավ-Արևելյան Ասիայում՝ 3,3, Կարաիբյան ծովի ավազանում՝ 7,8 տոկոս։ Վերոհիշյալ շրջանների նավթի հանույթի 70 և նավթամշակման 60 տոկոսը գտնվում է անգլո-ամերիկյան իմպերիալիստների ձեռքում։

Մերձավոր ու Միջին Արևելքը բնական հարստությունների շտեմարան է։ Մենդելեևի պարբերական սիստեմում չկա մի տարր, հանքատեսակ, որ չլինի այս ընդարձակ շրջանում։ Այստեղ է գտնվում նավթի պաշարների երեք քառորդը, այսինքն՝ 32 մլրդ տոննա և դա այն ժամանակ, երբ Ամերիկայի Միացյալ Նահանգների նավթի պաշարները կազմում են 5 մլրդ, իսկ Արևմտյան Եվրոպայի երկրներինը՝ 0,2 մլրդ տոննա։ Մերձավոր և Միջին Արևելքը առաջին տեղն է գրավում նաև նավթի հանույթով։ Կապիտալիստական աշխարհի մեկ օրվա նավթի հանույթը հասնում է 25 մլն բարրելայի (մեկ բարրելայը հավասար է 159 լիտրի), որից Մերձավոր ու Միջին Արևելքում՝ 10 մլն: 1967 թ. այստեղ նավթի հանույթը հասավ 570 մլն, նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում այն կազմեց 455 մլն տոննա։ Մերձավոր և Միջին Արևելքի նավթի հանույթի մոտ 50 տոկոսը վերահսկում են ամերիկյան, 34-ը անգլիական, 6-ը՝ ֆրանսիական, 4 տոկոսը ճապոնական նավթային ընկերությունները։

Արևմտյան նավթային մագնատներն անխնա թալանում են այս երկրների նավթային հարուստ ռեսուրսները։ Այդ նպատակով կառուցվել են տասնյակ նավթամուղներ, որոնք ձգվում են մի քանի հարյուր, նույնիսկ հազար կիլոմետր։ Այսպես, Սաուդական Արաբիայի Ռաս-Տանուրա և Էլ-Օսմանի նավթահանքերից մինչև Լիբանանի Սաիդա նավահանգիստը ձգվող նավթամուղի երկարությունը հասնում է 1600 կմ, Կիրկուկից և Մոսուլից դեպի Բանիյաս (Սիրիա և Տրիպոլի (Լիբանան) 650 կմ: Վերոհիշյալ նավթամուղներով տարեկան 100—120 մլն տոննայից ավելի նավթ է մղվում Միջերկրական ծովի արևելյան ափերի նավահանգիստները։

Մերձավոր և Միջին Արևելքի նավթի արտադրողականությունը մի քանի տասնյակ անգամ բարձր է աշխարհի մնացած երկրներից։ Այստեղ ամեն մի նավթահոր տալիս է 6.000 բարրելայ նավթ, Լիբիայում՝ 3000, Վենեսուելայում՝ 300, Ինդոնեզիայում՝ 200, Իսկ ԱՄՆ-ում՝ 15 բարրելայ։ Մերձավոր և Միջին Արևելքում բանվորական ուժը մի քանի անգամ էժան է, քան ԱՄՆ-ում։ Նավթային կոմպանիաները ԱՄՆ-ում յուրաքանչյուր բանվորից տարեկան ստանում են 4000 դոլարի շահույթ, իսկ Մերձավոր և Միջին Արևելքում՝ 40000։ Նավթարդյունաբերության մեջ աշխատող բանվորին օրական վճարում են. Իրաքում 0,7 դոլար, Բահրեյնում՝ 0,9, Քուվեյտում՝ 1,7 դոլար։ Ուրիշ խոսքով, այստեղ բանվորը 10—12 անգամ պակաս աշխատավարձ է ստանում, քան ԱՄՆ-ում։ Սաուդյան Արաբիայում, որտեղ նավթի հանույթը 1968 թ. հասավ 140 մլն տոննայի, բանվորն աշխատում է 12—14 ժամ և ստանում մի չնչին գումար՝ օրական 80 ցենտ։ Արամկոյի բանվորների 95 տոկոսը տառապում է տրախոմա, ցինգա և այլ հիվանդություններով։ Հանքահորերում աշխատող բանվորները զուրկ են բժշկական օգնություն ստանալու հնարավորությունից, ապրում են կեղտոտ բարակներում։ Ահա թե ինչու Սաուդյան Արաբիայում բանվորների միջին տարիքը 33-ից չի անցնում։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում լայն ծավալ ստացան ազգային-ազատագրական շարժումները։ 1945—48 թթ. անկախություն ձեռք բերեցին Եգիպտոսը, Լիբանանը, Հորդանանը, Սիրիան։ 1951—53 թթ. Իրանում Մոսադիկի կառավարությունը ազգայնացրեց անգլո-իրանական նավթային ընկերությանը պատկանող արդյունագործության օբյեկտները։ 1953 թ. անգլիական իմպերիալիզմի հրահրմամբ տապալվեց Մոսադիկի կառավարությունը։ Իրանի նավթն անցավ միջազգային նավթային կոնսորցիումի, անգլո-ամերիկյան իմպերիալիստների ձեռքը, 40 տոկոսը՝ «Բրիտիշ պետրոլեում» (Նախկին ԱԻՆԿ), 14 տոկոսը՝ «Ռոյալ դատչՇելի», 35 տոկոսը՝ ամերիկյան մյուս կոմպանիաների և այլն։ Սակայն անցած 15 տարիների ընթացքում իրանական ժողովուրդը չդադարեցրեց պայքարը օտարերկրյա նավթային ընկերությունների դեմ։ Նավթային մագնատները ստիպված եղան շահույթի 50 տոկոսը զիջել Իրանին։

Իմպերիալիստական նավթային մոնոպոլիստներին մեծագույն հարված հասցրեց 1956 թ. Սուեզի ջրանցքի ազգայնացումը։ Իմպերիալիստական տերությունններն այդ ջրային ուղիով անհատույց տանում էին Մերձավոր Արևելքի նավթը։ Ոգևորված Եգիպտոսի ժողովրդի հաղթանակով, նոր պայքար ծավալվեց արաբական երկրներում նավթարդյունաբերությունը ազգայնացնելու համար։ Այս առթիվ անգլիական «էկոնոմիստ» ամսագիրը ափսոսանքով գրեց,— «25 տարի առաջ արաբները մեր «քնած պարտնյորներն» էին, նրանք առանց որևէ դիմադրության համաձայնվում էին մեր բոլոր առաջարկություններին»։ Իրոք, նավթային մոնոպոլիաներն արաբական երկրների հետ տարիներ առաջ կնքել են ստրկացուցիչ, երկարամյա ժամկետով (մինչ 2024 թ.) պայմանագրեր։ Դրանց համաձայն այդ երկրների նավթային հարուստ ռեսուրսները պետք է օգտագործեին մինչև պայմանագրային ժամկետների լրանալը։ Սակայն Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների ժողովուրդները լի են վճռականությամբ պայքարելու տնտեսական անկախության, ամեն տեսակ ստրկացուցիչ պայմանագրերը չեղյալ հայտարարելու, նավթային ռեսուրսներն ազգայնացնելու համար։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստների դավադրությունները նույնպես չեն դադարում Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներում։ Արևմտյան տերությունները, հաշվի առնելով վերոհիշյալ երկրների տնտեսական, քաղաքական և ռազմական նշանակությունը, դիմում են ամեն միջոցի՝ ամրապնդելու իրենց դիրքերը։ 1947 թ. ԱՄՆ-ը «Տրումենի դոկտրինայով» իր ռազմակառքին լծեց Թուրքիային և Հունաստանին։ 1957 թ. «Էյզենհաուերի դոկտրինայով» ԱՄՆ-ը ձգտում էր հաստատել իր քաղաքական և տնտեսական գերիշխանությունը այդ շրջանում։

1955 թ. ստեղծվեց Բաղդադի պակտը (Մեդո), 1958 թ. Իրաքի դուրս գալուց հետո այդ ագրեսիվ պակտը վերանվանվեց ՍԵՆՏՕ (Կենտրոնական պայմանագրային կազմակերպություն)։

Վերջին տարիներին նավթային մոնոպոլիաներն է՛լ ավելի ուժեղացրին իրենց ռազմական միջոցառումները, նոր ուժեր և տեխնիկա կենտրոնացնելով Դահրան, Ահմեդ, Մանամի և այլ ռազմական բազաներում։ Ինչպես հայտնի է ԱՄՆ մի քանի տասնյակ ռազմական բազաներ ունի նաև Լիբիայում, Թուրքիայում, Հունաստանում և Մերձավոր Արևելքի երկրներին սահմանակից այլ շրջաններում. ԱՄՆ-ի 6-րդ նավատորմի նավերն անընդհատ մանյովրում են Կիպրոսի և Մերձավոր Արևելքի ափերից ոչ հեռու։ Ինչպես գրում է «Բիզնես Ուիկ» հանդեսը, այդ նավատորմը դարձել է «Արևմուտքի դիվանագիտական երկաթե բռունցքը, նրա մեծ մահակը»։ Եվ իրոք, հենց որ այդ շրջանում սկսվում է կորվել իմպերիալիզմի և գաղութակալության շղթան, ԱՄՆ շտապում է իր բոլոր միջոցներով խանգարել դրան։

Պարսից ծոցի ավազանի նավթային հարուստ շրջանները իրենց տիրապետության տակ պահելու համար նրանք գործադրում են ամեն միջոց, ընդհուպ մինչև այդ երկրներին ռազմական բլոկի մեջ ներքաշելը։ Սակայն անգլո-ամերիկյան ռազմատենչ այդ մտահղացումները ձախողեցին Պարսից ծոցի ավազանի ժողովուրդները։

Իմպերիալիստներին դուր չի գալիս հասարակական զարգացման այն ուղին, որն ընտրել են Սիրիայի, ԱՄՀ և արաբական մի քանի երկրներ։ Գաղութարարները ոչ մի կերպ չեն ուզում հաշտվել այն մտքի հետ, որ իրենք ընդմիշտ զրկվելու են «սև ոսկու» թանկագին պատառներից։ Սովոր լինելով աշխարհում ամեն ինչ չափել իրենց «կապիտալիստական արշինով», իմպերիալիստական պրոպագանդան Մերձավոր Արևելքի ժողովուրդներին ահաբեկում է «կոմունիզմի» վտանգով։ Հակակոմունիզմի դրոշով նրանք ճգնում են թշնամանք սերմանել այդ երկրների աշխատավորության և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջև։ Իմպերիալիստները չեն ուզում հանդուրժել, որ ամեն մի ժողովուրդ ունի զարգացման իր ուղին, տրադիցիաները, սովորությունները, ազգային առանձնահատկությունները։ Վ. Ի. Լենինն Արևելքի ժողովուրդների հետ մեր երկրի հարաբերություններում վճռական էր համարում «վստահություն նվաճելը»։ Նա կոչ էր անում անշահախնդիր օգնություն ցույց տալ հետամնաց և ստրկացված ժողովուրդներին, որպեսզի նրանք անցնեն մեքենաների գործածության, աշխատանքի թեթևացման, անցնեն դեմոկրատիայի և սոցիալիզմի» (տե՛ս Երկեր, հ. 23, էջ 77)։

Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս պետությունները Մերձավոր Արևելքի թույլ զարգացած երկրներին օգնություն են ցույց տալիս առանց քաղաքական կամ ռազմական որևէ պահանջի, շատ արտոնյալ պայմաններով։ Այդ երկրներում Սովետական Միության օգնությամբ կառուցվում են հարյուրավոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք լուրջ գործոն են նրանց էկոնոմիկան զարգացնելու գործում և հզոր պատնեշ՝ Արևմուտքի գաղութատիրական ձգտումների դեմ։ Ահա թե ինչու արաբները Սովետական Միությունը համարում են իրենց ամենաջերմ ու ազնիվ բարեկամը։

1956 թ. հոկտեմբերի վերջերին, երբ, ինչպես պրեզիդենտ Նասերն է ասել, Եգիպտոսին սպառնում էր սովը, Սովետական Միությունն ուղարկեց մեծ քանակությամբ առաջին անհրաժեշտության ապրանքներ— ցորեն, նավթ, զանազան մեքենաներ և այլն։ Սովետական Միության օգնությամբ Եգիպտոսը Սուեզի ջրանցքի հետ կապված ճգնաժամից դուրս եկավ հաղթանակով։ Իմպերիալիստական պետությունները պետք է լավ իմանան, որ Մերձավոր Արևելքի ժողովուրդները մեծ վճռականությամբ պաշտպանում են և կպաշտպանեն իրենց իրավունքները, ո՛չ մի ռազմական ինտերվենցիա, ո՛չ մի դավադրություն չի կարող նրանց շեղել ազատության և անկախության ընտրած իրենց ուղուց։

Այն ուղին, ուր կցանկանային հրել Իսրայելն ու նրա հովանավորները Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդներին, հղի է խաղաղության գործի համար չափազանց լուրջ հետևանքներով։ Ուստի, բոլոր խաղաղասեր պետությունների պարտքն է՝ վճռական միջոցներ ձեռնարկել կանխելու նոր վտանգավոր պայթյունն աշխարհի այդ ամենահարուստ նավթային շրջանում։

Իմպերիալիստական տերությունների միջև նավթի համար պայքար սկսվեց Աֆրիկայում, հատկապես նրա հյուսիսային մասում, երբ խոշոր նավթահանքեր հայտնաբերվեցին Ալժիրում, Գաբոնում, Նիգերիայում, Լիբիայում և Սահարա անապատում։ «Սահարան դա աստված է առանց մարդկանց»,— պատկերավոր ձևով ասել է Բալզակը։ Մոտավոր հաշվումներով Հյուսիսային Աֆրիկայի և Սահարայի ընդերքում կուտակված է ավելի քան 10 մլրդ տոննա նավթ։ Գործի անցան արևմտյան նավթային մոնոպոլիստները, նրանք իրար մեջ բաժանեցին նավթահանքերը։ Կարճ ժամանակամիջոցում անգլո-ամերիկա-ֆրանսիական իմպերիալիստները կազմակերպեցին մի քանի նավթային ընկերություններ։ 1967 թ., 1966 թ. համեմատությամբ, նավթահանույթը եռապատկվեց։

«Աֆրիկյան հրաշք»,— այսպես անվանեցին Լիբիան։ Եթե 1963 թ. այստեղից նավթի հանույթը կազմում էր 21 մլն, 1968 թ. հասավ 124,6 մլն տոննայի։ Այս տարի այն կազմելու է 140 մլն (տե՛ս «Экономика стран мира», Справочник, М., 1968 г.)։ Լիբիայի ժողովուրդը համառորեն պայքարում էր նավթարդյունաբերությունն ազգայնացնելու և տնտեսական անկախություն ձեռք բերելու համար։

Առայժմ Ալժիրի նավթի որոշ մասը գտնվում է օտարերկրյա նավթային ընկերությունների ձեռքում։ Տարեցտարի ավելանում է նավթի հանույթը։ Եթե 1964 թ. այստեղ այն կազմում էր 5 մլն տոննա, 1968 թ. հասավ 42,5 մլն, իսկ 1970 թ. կկազմի 50 մլն տոննա։ 1965 թ. շահագործման հանձնվեց երկրի ամենախոշոր նավթամուղը, որն ունի 805 կմ երկարություն (Խասսի-Մեսաուդ-Արզո)։ Ներկայումս Ալժիրի կառավարությունը մի շարք միջոցառումներ է ձեռնարկել օտարերկրյա մոնոպոլիստների իրավունքները սահմանափակելու և նավթարդյունաբերությունն ազգայնացնելու համար։ Ալժիրի նավթը պետք է ծառայի Ալժիրին— այս է ժողովրդի պահանջը։

Աֆրիկայում նավթի պաշարներով և հանույթով կարևոր տեղ է գրավում Նիգերիան։ Այստեղ 1966 թ. նավթի հանույթը կազմեց 21 մլն, իսկ 1967 թ. 15,7 մլն, 1968 թ. 6,3 մլն տոննա։ Ինչպես հայտնի է, երկրորդ տարին է այստեղ Նիգերիայի ֆեդերալ կառավարության և նրա Արևելյան մարզի Բիաֆրայի Հանրապետության միջև եղբայրասպան պատերազմ է մղվում։ Պատերազմի հիմնական պատճառը բացառապես արևմտյան նավթային մոնոպոլիաներն են, որոնք կիրառում են «բաժանի՛ր, որ տիրես» տխրահռչակ քաղաքականությունը։

Նավթային մոնոպոլիաների պլաններում կարևոր տեղ են գրավում Հարավ-Արևելյան Ասիայի նավթային ռեսուրսները։

Նավթով հարուստ երկրներից են Ինդոնեզիան, Բիրման, Հնդկաստանը, Ցեյլոնը, Բրունեյը։ Ձեռք բերելով լիակատար անկախություն, 1949թ. Ինդոնեզիան եռանդուն կերպով հաղթահարում էր բոլոր դժվարությունները, ամրապնդում իր պետականությունը։ Եթե 1950 թ. այստեղ նավթի հանույթը կազմում էր 6,4 մլն տոննա, ապա 1964 թ. այն հասավ 23 մլն-ի։ Ինդոնեզիայի ժողովրդի առջև ծառացած հիմնական ու ամենակարևոր խնդիրն էր՝ վերացնել գաղութատիրության մնացորդները, հասնել տնտեսական անկախության։ Այդ նպատակով կառավարությունն ազգայնացրել էր նավթահանքերը, պայքարում էր նավթային մոնոպոլիաները երկրից դուրս հանելու համար։ Սակայն չորրորդ տարին է, ինչ Ինդոնեզիայի վրա սև ամպեր են կուտակվել։ Իշխանությունը, Սուխարտոյի գլխավորությամբ, զավթել են ռազմական մի խումբ գեներալներ և վերականգնել օտարերկրյա մոնոպոլիաների իրավունքները։ Ո՛չ միայն Ինդոնեզիայի նավթային արդյունաբերությունը, այլև տնտեսական բոլոր բարձունքների տերն ու տնօրենը անգլո-ամերիկյան իմպերիալիստներն են։

Սեփական նավթարդյունաբերության համար պայքարի լավագույն օրինակ է տալիս Բիրմայի ժողովուրդը։ 1963 թ. ազգայնացվեց Բիրմա Օյլ անգլիական ընկերության ունեցվածքը։ Նավթամշակման մի քանի գործարաններ են կառուցվել Սիրիամե և այլ քաղաքներում։ Կառավարությունը պլան է մշակել երկրի նավթարդյունաբերության հետագա զարգացման համար։

Մինչև 1955 թ. Հնդկաստանը իր սեփական կարիքների համար տարեկան մի քանի մլրդ ռուփիի նավթ էր ներմուծում արտասահմանից. Նույն թվականին Հնդկաստանի կառավարությունը դիմեց Սովետական Միությանը և Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությանը՝ օգնելու երկրի նավթային պաշարների հետազոտմանը։ Սովետական և ռումինական մասնագետները մի շարք վայրերում (Կամբեում՝ Անկլեշում, Կալոլեում, Ռուդրասագարում և այլուր) հայտնաբերեցին նավթի հարուստ հանքավայրեր։ Հնդկաստանում 1963 թ. նավթի հանույթը կազմեց 1,3 մլն տոննա, 1968 թ.՝ 5 մլն։ Սովետական մասնագետները,— գրում է հնդկական «Լինկ» ամսագիրը,— խորտակեցին այն ֆատալիստական տեսությունը, որ Հնդկաստանի ընդերքն իբր աղքատ է նավթով։

Սովետական Միությունն անշահախնդիր կերպով Հնդկաստանի նավթարդյունաբերության համար պատրաստում է հազարավոր մասնագետներ, օգնում ստեղծելու սեփական նավթարդյունաբերություն, ազատվելու օտարերկրյա կախվածությունից։

1962 թ. Ցեյլոնի կառավարությունն ազգայնացրեց նավթարդյունաբերությունը, որը մեծ աղմուկ բարձրացրեց անգլո-ամերիկյան նավթային մագնատների շրջանում։

Ուոլլ-ստրիտի և Սիտիի տերերն առաջարկեցին դադարեցնել Ցեյլոնին տրվող օգնությունը։ Կալտեքս կոմպանիայի վարչության ղեկավար Բեռնարդը պահանջեց, որ ԱՄՆ հրաժարվի Ցեյլոնի թեյը և կաուչուկը գնելուց։ Իմպերիալիստների ոչ մի շանտաժ չօգնեց իրենց կորցրած դիրքերը վերականգնելուն։ Ցեյլոնը չպետք է պարի իմպերիալիզմի սրինգի տակ,— հայտարարել է նախկին պրեմիեր մինիստր Սիրիմավո Բանդարանաիկեն, իմ երկիրը անկախությունը չի վաճառի ամերիկյան օգնությանը։

Ցեյլոնում սեփական նավթարդյունաբերություն ստեղծելու համար անշահախնդիր օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները։

Կարաիբյան ծովի ավազանը իր նավթային հարուստ ռեսուրսներով կարևոր տեղ է գրավում իմպերիալիստական տերությունների պլաններում։ Այդ ավազանում են ընկած Լատինական Ամերիկայի երկրները, որի ժողովուրդների ազատագրական պայքարը աշխարհի հասարակայնության ուշադրությանն է արժանացել։

Լատինական Ամերիկայի 22 երկրներից 10-ը հարուստ են նավթով, որոնց ընդհանուր պաշարը կազմում է 3,5 մլրդ տոննա։ 1963 թ. այս երկրներում նավթի հանույթը կազմեց 225 մլն տոննա։ Նավթի հանույթով և պաշարներով առավել աչքի են ընկնում՝ Վենեսուելան, Մեքսիկան, Արգենտինան, Կոլումբիան, Տրինիդադը, Բրազիլիան, Պերուն և Կուբան։ Բացի Կուբայից, մնացած երկրների նավթային ռեսուրսները գտնվում են գերազանցապես ամերիկյան նավթային մոնոպոլիաների ձեռքում։ Այդ երկրներից իր պաշարներով (2,5 մլրդ տոննա) և նավթի հանույթով առաջին տեղը գրավում է Վենեսուելան՝ Փոքրիկ Վենետիկը, այդպես էին կոչում Վենեսուելան իսպանական գաղութարարները։

1950 թ. այստեղ նավթի հանույթը կազմեց 87 մլն, իսկ 1968 թ.՝ 187,5 մլն տոննա։ Վենեսուելան նավթի հանույթով կապիտալիստական աշխարհում գրավում է երկրորդ տեղը (ԱՄՆ-ից

հետո), արտահանությամբ՝ առաջին (տարեկան արտահանվում է 150 մլն տոննա)։ Սակայն իրեն՝ Վենեսուելային հազիվ բաժին է ընկնում նավթի վաճառքից ստացած եկամտի մեկ տասներորդ մասը։ Մնացածը մտնում է օտարերկրյա, հատկապես Ռոկֆելերի գանձարանը։ Եվ իզուր չէ, որ Վենեսուելան անվանում են «Ռոկֆելերի երկրորդ տունը»։ Վենեսուելայի ժողովուրդը մեկ տասնամյակ շարունակ պայքարում է ռոկֆելերյան կոմպանիայի և երկրի ռեակցիոն ուժերի դեմ, հանուն իր անկախության և ազատության։ Հայրենասիրական այդ ճակատի մեջ միավորվել են կոմունիստական կուսակցությունը, հանրապետական դեմոկրատական միությունը, ձախերի հեղափոխական շարժումը և այլ քաղաքական ուժեր։ Գնալով լայն ծավալ են ստանում պարտիզանական շարժումները։ Անցյալ տարվա հոկտեմբերի վերջին պարտիզանները լուրջ հարվածներ հասցրին երկրի ռեակցիոն ուժերին և ամերիկյան յանկիներին։

Ամերիկյան նավթային մագնատներին ծանր հարված հասցրին Արգենտինայի և Մեքսիկայի ժողովուրդները, որոնց պահանջով ազգայնացվեցին օտարերկրյա նավթային կոմպանիաների ունեցվածքը։ Նավթի հանույթը 1968 թվականին Արգենտինայում կազմեց 21 մլն տոննա, 1963 թվականի 15-ի դիմաց, իսկ Մեքսիկայում, համապատասխանաբար՝ 23 և 17 մլն տոննա։ Վերոհիշյալ երկրների օրինակին հետևեցին Բրազիլիայի, Պերուի ժողովուրդները։ 1963 թ. Բրազիլիայում նախկին պրեզիդենտ Ժոաո Գուլարտի դեկրետով ազգայնացվեց երկրի նավթարդյունաբերությունը, որը գրեթե ամբողջությամբ պատկանում էր ամերիկյան ընկերություններին։ Վերջիններս ավիններով ընդունեցին այդ որոշումը։ 1964 թ. ապրիլին նավթային մագնատների օգնությամբ տապալվեց Գուլարտի կառավարությունը և կրկին նավթի տերերը դարձան հյուսիս-ամերիկյան նավթային մոնոպոլիաները։

Աշխարհի տարբեր մասերում օրըստօրե ուժեղացող ազգային ազատագրական պայքարը փակուղու առաջ է կանգնեցրել նավթային 8 խոշոր կոմպանիաներին, որոնք դիմում են բոլոր միջոցներին պաշտպանելու իրենց դիրքերը նավթով հարուստ շրջաններում։

1960 թ. կազմակերպվեց, այսպես կոչված՝ նավթ արտահանող երկրների կազմակերպություն (ՆԱԵԿ)։ Հիշյալ կազմակերպության մեջ մտան Իրանը, Իրաքը, Սաուդյան Արաբիան, Կատարը, Քուվեյտը, Լիբիան, Վենեսուելան և Ինդոնեզիան։ Այս երկրները տալիս են նավթի համաշխարհային արդյունահանության 70 տոկոսը։ 1964 թ. նոյեմբերի 22-ին Ջակարտայում բացվեց ՆԱԵԿ-ի կոնֆերանսը։ Կոնֆերանսի պատգամավորները միահամուռ պահանջեցին՝ ավելացնել նավթից ստացվող շահույթները, վերացնել օտարերկրյա բռնացումը նավթարդյունահանման՝ ազգային էկոնոմիկայի հիմնական ճյուղերից մեկում։ Հաղթահարելով մոնոպոլիաների դիմադրությունը, Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների ներկայացուցիչները հասան այն բանին, որ իրենց շահույթը 1966 թ. հասցրին 500 մլն դոլարի, մինչ այդ եղած 150 մլն-ի դիմաց։

Նավթ արտահանող երկրներն իրենց պայքարում հենվում են ՍՍՀՄ վրա. մեր երկրում նավթի հանույթը 1968 թ. կազմեց 309 մլն տոննա։ Սովետական Միությունը անշահախնդիր նավթի առևտուր է անում աշխարհի 40 երկրների հետ, ոչ դեմպինգյան գներով, ինչպես բարբաջում են նավթային մոնոպոլիաները։

Աշխարհը ականատես եղավ Բարեկամություն— հսկա նավթամուղի աշխատանքի ավարտմանը։ Սովետական նավթը այդ նավթամուղով հոսում է մեր բարեկամ երկրները՝ ԳԴՀ, Լեհաստան, Հունգարիա, Չեխոսլովակիա. օրինակ, 1966—70 թթ. Սովետական Միությունից այդ նավթամուղով Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետություն է հոսելու 39—40 մլն տոննա նավթ։ Սովետական Միության նավթարդյունաբերության բուռն զարգացումն ահ ու սարսափ է պատճառել անգլո-ամերիկյան իմպերիալիստներին։ Վերջին ժամանակներս նրանք հաճախ են հայտարարում, թե «սովետական նավթը վտանգի տակ է դրել Մերձավոր ու Միջին Արևելքի նավթարդյունաբերությունը», որ, իբր, «Սովետական Միությունը էժան է վաճառում նավթը՝ վտանգի տակ դնելով արաբների գոյությունը», «զգուշացեք արաբներ, կոմունիստական վտանգից» և այլն։

Արաբական ժողովուրդները Սովետական Միությանը դիտում են որպես իրենց անշահախնդիր բարեկամ։ Միայն արաբական 5 երկրներում այն կառուցում է հարյուրից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում Ասուանի հսկա ամբարտակը։ Սովետական Միության օգնությամբ էր, որ 1956 թ. եգիպտական ժողովուրդը ջախջախեց անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսորներին։ Ավելին, արաբ ժողովրդի պատմության ահեղ ժամին 1967 թ. հունիսին (Իսրայելի ագրեսիայի օրերին), երբ վճռվում էր պատերազմի և խաղաղության հարցը, Սովետական Միությունը ձեռնարկեց վճռական միջոցներ՝ պատերազմական գործողությունները դադարեցնելու համար։

Իմպերիալիզմի դեմ նավթով հարուստ երկրների ժողովուրդների քաղաքական ու տնտեսական անկիջում պայքարը շարունակվում է։

**Մ. Մ. ԴԱՎԹՅԱՆ**

ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ

# ՇՐՋԱՆԱՅԻՆ ՄԱՄՈՒԼԻ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Ընթացիկ տարին մեզ ընդհուպ մոտեցնում է պատմական մեծ տարելիցին՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։ Յուրաքանչյուր կոմունիստի, սովետական յուրաքանչյուր մարդու համար անսահմանորեն թանկ ու հարազատ է աշխատավորների մեծ առաջնորդի անունը։ Ուստի միահամուռ է տասնյակ միլիոնավոր աշխատավորների ձգտումը՝ պանծալի հոբելյանը նշանավորել Իլյիչի պատգամների իրականացման նոր հաջողություններով։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նախապատրաստվելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ առաջ քաշված խնդիրներն առավել պատասխանատու են դարձնում գաղափարական ճակատի յուրաքանչյուր աշխատողի, բոլոր նրանց, ովքեր կոչված են իրենց գրչով ծառայելու լենինյան գաղափարների պրոպագանդմանն ու իրականացմանը։ Հասկանալի է, որ այդ գործում շատ անելիքներ ունեն շրջանային թերթերում աշխատող ժուռնալիստները, որոնց կուսակցությունը վստահել է մասսաների շրջանում տարվող աշխատանքի կարևորագույն տեղամասերից մեկը։

Շրջանային թերթերի հետագա գործունեության, նրանց գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման համար կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում շրջանային թերթերի դերի բարձրացման մասին» որոշումը։ Այդ փաստաթուղթը վկայում է շրջանային թերթերի նկատմամբ մեր կուսակցության ամենօրյա հոգատարության և այն մեծ նշանակության մասին, որ տրվում է նրանց կոմունիստական շինարարության արդի էտապում։

Տվյալ որոշումը գործունեության ծավալուն ծրագիր է շրջանային թերթերի համար։ Կենսագործելով կուսակցության պահանջը, հանրապետության շրջանային թերթերի խմբագրությունները վերջին ժամանակներում բարելավել են հրապարակվող հոդվածների որակը, բարձրացրել դրանց գաղափարական-քաղաքական մակարդակը։ Այժմ թերթերի էջերում պարբերաբար լուսաբանվում են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, առաջավոր փորձի, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների պրոպագանդման ու արմատավորման հարցերը։

Շրջանային թերթերի էջերում արժանի տեղ են գրավում կուսակցական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական աշխատանքի, տեղական սովետների, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների գործունեության հարցերը։ Մեծ ուշադրություն է նվիրվում ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի պրոպագանդմանը։

Հենվելով բանգյուղթղթակիցների վրա, շրջանային մամուլն աշխատավորության լայն զանգվածներին պարզաբանում է կուսակցության և կառավարության որոշումների խոր իմաստն ու նշանակությունը, պաշտպանում և զարգացնում նորի, առաջավորի ծիլերը, խրախուսում արդյունաբերության ու գյուղատնտեսության անշեղ վերելքը։ Այս առումով հիշատակության են արժանի «Միածան» (Նոյեմբերյան), «Լոռի» (Ալավերդի), «Լենինյան ուղիով» (Իջևան), «Այգաբաց» (Շամշադին) և մի շարք ուրիշ թերթեր, որոնք օգնում են կուսկազմակերպություններին՝ աշխատավորներին մոբիլիզացնելու հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Զգալի թվով թերթեր հաջողությամբ են կատարում իրենց առջև դրված խնդիրները։ Այսպես, օրինակ, գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերը լավ են լուսաբանվում Շամշադինի շրջանային «Այգաբաց» թերթում։ Դրանք մատուցվում են տարբեր ձևերով, որոնք դյուրացնում են ընթերցումը։ «Առաջավոր փորձը բոլորին» խորագրի տակ սիստեմատիկ հրապարակվել են բազմաթիվ արժեքավոր հոդվածներ ու թղթակցություններ։ Այդպիսիներից են «Աշխատանքով վաստակած փառք», «Ավելի վճռականորեն կշարունակենք առաջընթացը», «Հաստատ կմնանք մեր խոստմանը», «Հաղթանակում են գործիմացությունը, վճռականությունը, կամքը, աշխատասիրությունը» և այլն։ Նյութերն ընտրված են խնամքով, մշակված այնպես, որ իսկապես ծառայում են առաջավոր փորձի պրոպագանդմանը։ Բովանդակալից նյութեր են տպագրված հատկապես արտադրության վերաբերյալ։

Նշված հոդվածներում արծարծված են սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման, տնտեսությունների համակողմանի զարգացման, ինչպես նաև եղած թերությունների վերացման հարցերը։ Այդ տեսակետից հատկապես ուշագրավ են՝ «Ամփոփեցին առաջին կիսամյակի արդյունքները», «Երբ դաշտավարի օրն է վճռական», «Թերթի ստուգայցը Մովսեսում և Ներքին Կաթնաղբյուրում», «Ամեն ինչ կանենք, որ խոստումը կատարվի», ««Այգաբացի» ստուգայցը Թովուզի կոլտնտեսությունում» հոդվածները։

Ցավոք, ոչ բոլոր շրջանային թերթերն են, որ խոր ու բազմակողմանիորեն են լուսաբանում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման, գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի հարցերը։

Վերցնենք, օրինակ, Ապարանի շրջանի «Ծաղկունք» թերթը։

Անցյալ տարվա հերթական № 33-ում այն տպագրել է շրջանի գյուղատնտեսության աշխատողների 1968 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Թվում էր, թե պարտավորությունների կատարման ապահովումը պետք է գտնվեր թերթի ուշադրության կենտրոնում և այն համարից համար կանդրադառնար դրան, կլուսաբաներ, թե ով ինչպես է կենսագործում վերցրած պարտավորությունները, կքննադատեր այդ գործում ետ մնացողներին։



Դժբախտաբար, շրջանային թերթն այդպես չի վարվել, դեպքից-դեպք է անդրադարձել մրցության հարցերին։ Մրցությանը վերաբերող հատուկենտ նյութերը ինֆորմացիոն բնույթ են կրում։ Հազվադեպ են թերթում երևում ծանրակշիռ, առաջավոր տնտեսությունների փորձն ընդհանրացնող, թերությունները բացահայտող թղթակցություններ ու հոդվածներ։

Թերթում բացակայում է «Ստուգում ենք սոցիալիստական պարտավորությունների կատարումը» կամ նման որևէ խորագիր, որի միջոցով հայտնի դառնար, թե ինչպես է ընթանում պարտավորությունների կատարումը։

1968 թ. № 69-ում թերթը փորձել է «Առաջընթացն ակնհայտ է» առաջնորդող հոդվածում անդրադառնալ մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարմանը, սակայն բավարարվել է միայն անասնաբուծության վիճակը գովերգելով։ Թերթը հիշատակում է, «որ հաջողությունների ձեռքբերման մեջ առանձնապես պետք է նշել Ջրնաղի, Բուժականի, Վարդենուտի, Ծաղկաշենի և մի քանի սովխոզների դրական աշխատանքը», իսկ թե ո՞րն է դրանց դրական աշխատանքը, այդ մասին ոչինչ չի ասվում ընթերցողներին։

Նույն առաջնորդողում թերթը փորձել է քննադատել անասնաբուծական մթերքների արտադրության գործում ետ մնացողներին, բայց բավարարվել է միայն չորս կոլտնտեսության անուններ հիշատակելով, ասելով, որ «այստեղ լուրջ պայքար չի տարվում անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի գծով ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու համար»։ Իսկ ինչո՞ւ են ետ մնում կամ ի՞նչն է խանգարում պարտավորությունների կատարմանը, այդ մասին «Ծաղկունք»-ը լռում է։

Ի դեպ, պետք է ասել, որ թերթն աշխատավորների ուշադրությունը չի կենտրոնացնում մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման վրա։

Օգոստոսի 15-ին «Անասնաբուծական մթերքների առատության համար» առաջնորդող հոդվածը (որը զբաղեցնում է թերթի մոտ մեկ էջը) նույնպես շատ ընդհանուր է։ Նրանում նույնիսկ չեն հիշատակվում սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունները և ամբողջ խոսքը վերաբերում է միայն պլանային առաջադրանքներին։ Այս առաջնորդող հոդվածում նույնպես շրջանցվել է թերությունների հանգամանալից վերլուծությունը։

Ապարանի շրջանում գյուղատնտեսական արտադրության հիմնական ճյուղերից մեկը անասնաբուծությունն է։ Հետևապես թերթը պետք է միշտ իր ուշադրության կենտրոնում պահի անասնաբուծությունը վարելու կուլտուրայի բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացման, աշխատանքի կազմակերպման և լրացուցիչ վարձատրության, առաջավորների փորձի տարածման ու գիտության նվաճումների արմատավորման հարցերը։ Ցավոք, դրանք պատշաճ կերպով չեն լուսաբանվում։ Թերթի էջերում քիչ են հանդես գալիս արտադրության առաջավորները, գյուղատնտեսության մասնագետները, տնտեսությունների ղեկավար աշխատողները։

«Ծաղկունք» թերթի խմբագրությունը պետք է վերակառուցի իր գործունեությունը, խոր ու բազմակողմանի կերպով լուսաբանի գյուղատնտեսության հարցերը։

Շրջանային թերթերը կոչված են լայնորեն լուսաբանելու շրջանների տըն-

տեսական կյանքը, նպաստելու գյուղի աշխատավորների ակտիվության զարգացմանը, ցույց տալու հանրային տնտեսության զարգացման ու վերելքի, աշխատանքի գիտական կազմակերպման, աշխատանքային ու պետական կարգապահության ամրապնդման գործում նրանց մասնակցության ձևերն ու մեթոդները։

Թերթերը պետք է կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպությունների, մասնագետների, տնտեսությունների բոլոր աշխատողների ուշադրությունը կենտրոնացնեն հողագործության ու անասնապահության կուլտուրայի բարձրացման, գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման վրա։

Անհրաժեշտ է լայնորեն պրոպագանդել գյուղատնտեսական գիտության և առաջավոր փորձի նորագույն նվաճումները, թերթի էջերում սիստեմատիկաբար պատմել կոլտնտեսականների բարոյական ու նյութական շահագրգռվածության բարձրացման կիրառվող ձևերի մասին, մինչև վերջ կենսագործել ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան և ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումների որոշումները։

Շրջանային թերթերի աշխատանքի կարևոր բնագավառներից է և արդյունաբերության էկոնոմիկայի հարցերի բազմակողմանի լուսաբանումը։ Խոսքը վերաբերում է գլխավորապես պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի արմատավորման հետ կապված խնդիրների լուսաբանմանը։ Ինչպես ցույց է տալիս փորձը, տնտեսական ռեֆորմը լայն հնարավորություններ ստեղծեց հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար։ Մասսաներին ներգրավել տնտեսական ռեֆորմի իրականացման գործում, ներարկել նրանց տնտեսական հետազոտություններին մասնակցելու ձգտում՝ ահա մեր մամուլի կարևոր խնդիրներից մեկը։ Վ. Ի. Լենինը նշում էր. «Որքան ավելի խորն է վերափոխումը, որը մենք ցանկանում ենք կատարել, այնքան ավելի պետք է բարձրացնել հետաքրքրությունը և գիտակցական վերաբերմունքը նրա նկատմամբ, դրա անհրաժեշտության մեջ համոզել նորանոր միլիոնների ու տասնյակ միլիոնների...»։

Ներկայումս հանրապետության ձեռնարկությունների զգալի մասն անցել է տնտեսավարման նոր սիստեմին։ Մշակվում են արտադրության ղեկավարման, տնտեսական աշխատանքի, նյութական խթանման նոր ձևեր ու մեթոդներ։ Այժմ արտադրության ընթացքում ավելի ցայտուն կերպով են դրսևորվում մարդկանց միջև առաջ եկող կոմունիստական հարաբերությունները։

Չի կարելի ասել, թե մեր շրջանային թերթերի էջերում այդ թեման տեղ չունի։ Ժամանակ առ ժամանակ համապատասխան նյութեր են հրապարակում Գորիսի, Ղափանի, Ալավերդու, Կամոյի, Աբովյանի և մի շարք այլ շրջանային թերթեր։ Սակայն այդ նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ շատ խմբագրությունների չի հաջողվել վեր հանելու տնտեսական ռեֆորմի էությունը, նրա անվիճելի առավելությունները։ Հրազդանի շրջանային թերթը, օրինակ, ամբողջ 1968 թ. ընթացքում այդ թեմայով տպագրել է ընդամենը... մեկ թղթակցություն։ Ի դեպ, այն էլ տնտեսագիտական որևէ վերլուծություն չի պարունակում։ Մինչդեռ, անհրաժեշտ էր ցույց տալ, թե ինչպիսի՞ նոր ռեզերվներ են հայտաբերվում տնտեսավարման նոր ռեֆորմի իրականացման շնորհիվ, որքա՞ն օգուտ են ստանում դրանից հասարակությունն ամբող-



ջությամբ վերցրած և առանձին անհատներ, ինչպիսի՞ նոր գծեր են երևում բանվորի, ինժեների, ծառայողի, տնտեսվարի բնավորության մեջ։

Այժմ ավելի ամուր են դառնում ձեռնարկության և հասարակության, կոլեկտիվի և առանձին արտադրողի կապերը և շահերի փոխադարձ պայմանավորվածությունը։ «Տնտեսական ռեֆորմը և մարդը», «Ռեֆորմը և կոլեկտիվը», «Տնտեսական ռեֆորմը և հնգամյակը»՝ այս ու նման ռուբրիկաները չպետք է անհետանան շրջանային թերթերի էջերից, առանձնապես այն շրջաններում, որտեղ գործում են մեծ թվով արդյունաբերական ձեռնարկություններ, տրանսպորտային կազմակերպություններ։

Ճիշտ չէ, երբ տնտեսական ռեֆորմի կենսագործման հետ կապված հարցերը լուսաբանելիս, հաճախ այնպես են մոտենում խնդրին, իբր նոր պայմաններում աշխատանքի միակ խթանը աշխատողի նյութական շահագրգռվածությունն է, իբր միակ ազդակը դառնում է ռուբլին։ Հանդես գալով Լենինգրադի մարզային կուսակցական կոնֆերանսում, Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Ինչպես հայտնի է, կուսակցությունը ձգտում է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք բարձրացնեն տնտեսական շահագրգռվածությունն աշխատանքում։ Բայց կարևոր է, որպեսզի ռուբլին չլինի միակ խթանող պատճառը, որպեսզի նրա ներգործությունը մարդկանց վրա սերտորեն զուգակցվի աշխատանքի նկատմամբ բարոյական խթանների հետ, որպեսզի մշտապես դաստիարակվի և ամրապնդվի սովետական մարդու կոմունիստական գիտակցությունը»։

Շրջանային թերթերը միաժամանակ պետք է սիստեմատիկորեն նյութեր տպագրեն տեղական սովետների գործունեության, ուսումնական հաստատությունների, առողջապահական հիմնարկների, առևտրի, կենցաղսպասարկման օբյեկտների աշխատանքների և դրանցում տեղ գտած թերությունների մասին։

Ներկայումս, երբ մեր երկիրը լուծում է կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները, էլ ավելի է աճում մամուլի, այդ թվում նաև շրջանային թերթերի դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում շրջանային թերթերի դերը բարձրացնելու մասին» որոշման մեջ ասվում է. «Շրջանային թերթերը կոչված են.

— Կոնկրետ օրինակներով ու փաստերով բացատրել կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը, սոցիալիստական կարգերի իսկական դեմոկրատական հիմունքները, պրոպագանդել մեր երկրի ժողովուրդների անխախտ եղբայրությունն ու բարեկամությունը։ Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել կոմունիստական համոզվածությունն ամրապնդելու, սովետական յուրաքանչյուր մարդու մեջ սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի զգացմունքներ դաստիարակելու, գաղափարական տոկունություն և բուրժուական ազդեցության բոլոր ձևերին դիմագրավելու ունակություն դաստիարակելու հարցերին»։

Հանրապետության շրջանային թերթերը զգալի աշխատանք են կատարում կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների կողմից տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքը լուսաբանելու, մարքս-լենինյան տեսությունը պրոպագանդելու, երիտասարդության կուսակցության և մեր ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատան-

քային պանծալի տրադիցիաների ոգով դաստիարակելու բնագավառում։ Ճիշտ են վարվում Իջևանի «Լենինյան ուղիով», Գորիսի «Զանգեզուր», Ազիզբեկովի «Ջերմուկ», Գուգարքի «Գուգարք» թերթերը, երբ հաճախակի տպագրում են հին բոլշևիկների, կոմերիտականների, քաղաքացիական կռիվների և Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների հիշողությունները մեր հայրենիքի ազատության ու անկախության համար մղած պայքարի մասին։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում արժեքավոր փորձ են կուտակել Սիսիանի շրջանային «Որոտան», Արտաշատի «Արտաշատ» և մի շարք այլ թերթեր։

Մեր շրջանային թերթերի էջերում հաճախ են տպագրվում նյութեր արտադրության առաջավորների, նրանց աշխատանքային նվաճումների, ձեռք բերած առաջավոր փորձի մասին, որոնց դաստիարակչական նշանակությունն անառարկելի է։

Շրջանային թերթերը այսուհետև ևս պետք է իրենց ուշադրության կենտրոնում պահեն աշխատավորների շրջանում տարվող գաղափարական աշխատանքի հարցերը, վառ, հուզիչ նյութեր հրապարակեն կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակների մասին, ակտիվորեն պրոպագանդեն ՍՄԿԿ-ի և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը, հատուկ ուշադրություն դարձնեն աշխատավորությանը, հատկապես երիտասարդությանը մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու վրա։

Միաժամանակ պետք է նշել, որ շրջանային մի շարք թերթեր թույլ են պրոպագանդում սոցիալիզմի առավելությունները, մեր սովետական ապրելակերպը, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պատվիրանները, անբավարար են լուսաբանում շրջաններում տարվող գաղափարական աշխատանքի հարցերը։ Առանձին թերթեր քիչ նյութեր են հրապարակում՝ նվիրված ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին։ Չի կարելի նորմալ համարել, օրինակ, որ «Սևան» թերթը 1968 թվականի ընթացքում այդ թեմային նվիրված տպագրել է ընդամենը երկու հոդված։

Իմպերիալիստական պրոպագանդան մեր երկրի դեմ ուղղված գաղափարական դիվերսիաներում մեծ տեղ է հատկացնում մարդկանց ապոլիտիկության, գաղափարազրկության, նիհիլիզմի ներարկմանը։ Մեր գաղափարական հակառակորդները փորձում են ներգործել սովետական մարդկանց վրա, մթագնել նրանց գիտակցությունը և կամազրկել։ Իրենց սարսափ գուժող ապագայից խելակորույս, նրանք նենգամտորեն զրպարտում են սոցիալիստական կարգերը, խեղաթյուրված են ներկայացնում մեր իրականությունը, փորձում են նսեմացնել սոցիալիստական երկրների աշխատավորների նվաճումները։ Դրա հետ մեկտեղ իմպերիալիստական ռեակցիան ամեն կերպ գովաբանում է բուրժուական ապրելակերպը, ռեկլամում է այսպես կոչված «ազատ աշխարհի» «հմայքները», փառաբանում է կապիտալիստական կեղեքիչ հարաբերությունները, վարձու ստրկության սիստեմը։

Շրջանային թերթերը պետք է անհաշտ պայքար մղեն բուրժուական գաղափարախոսության ամեն դրսևորումների դեմ, ավելի ուժեղացնեն աշխատավորության և, հատկապես, երիտասարդության հայրենասիրական դաստիարակությունը, մեր մեծ ու հզոր սովետական երկրի քաղաքացու հպարտության



զգացումը, երիտասարդությանը դաստիարակելու անցյալի հեղափոխական տրադիցիաներով, ներկայի հարուստ հերոիկայով, ապագայի պայծառ իդեալներով։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ շրջանային թերթերի գործունեության մեջ կարևորագույն տեղ պետք է տրվի աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը, սոցիալիստական սեփականության հանդեպ սրտացավ, հոգատար վերաբերմունքի արմատավորմանը։ Սակայն փաստերը վկայում են, որ շրջանային մի շարք թերթեր (Հոկտեմբերյանի, Աշտարակի, Արտաշատի) իրենց էջերում սուր պայքար չեն ծավալում պորտաբույծների, սպեկուլյանտների, սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություններ կատարող և այլ հակահասարակական տարրերի դեմ։

Սոցիալիստական սեփականությունը մեր հասարակարգի հիմքերի հիմքն է և մեր թերթերը պետք է կուսակցական կազմակերպություններին օգնեն՝ դռները ամուր փակել սոցիալիստական սեփականությունը հափշտակողների դեմ, աչքի լույսի պես պահպանեն ժողովրդական ունեցվածքը։

Ամբողջ երկրում ծավալված հսկայական ու բազմազան աշխատանքի մեջ, որ նախորդում է փառապանծ լենինյան հոբելյանին, աչքի ընկնող տեղ է պատկանում մեր մամուլին։ Պետք է ասել, որ հանրապետության մամուլը, այդ թվում և շրջանային թերթերը, զգալի աշխատանք են կատարում համակողմանիորեն արտացոլելու Վ. Ի. Լենինի կյանքն ու հեղափոխական գործունեությունը, նրա տեսական հարուստ ժառանգությունը, ՍՄԿԿ-ի պայքարը մարքսիզմ-լենինիզմի գաղափարները կենսագործելու համար։ Թերթերը հանգամանորեն պատմում են, թե լենինյան հոբելյանի նախապատրաստությունն ինչպես է կատարվում կոլտնտեսություններում ու սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում, կուլտուր-լուսավորական հիմնարկներում։ Նրանք հիմնականում հաջողությամբ են ցույց տալիս Իլյիչի ծննդյան 100-ամյակն արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության նոր վերելքը։

Լենինյան թեման լավ են լուսաբանում Էջմիածնի շրջանի «Կոմունիզմի ուղիով», Մարտունու շրջանի «Թռիչք», Արթիկի շրջանի «Լեռնագործ» և մի շարք այլ թերթեր։ «Կենսագործում ենք մեծ Լենինի պատգամները» խորագիրը միշտ երևում է «Կոմունիզմի ուղիով» թերթի էջերում։

Մարտունու շրջանային «Թռիչք» թերթը մշակել է թեմատիկ պլան և հաջողությամբ լուսաբանում է Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստությունը։ Թերթը հետաքրքրական նյութեր է հրապարակում շրջանի կյանքի տարբեր ասպարեզներում լենինյան գաղափարների իրականացման մասին։

Շրջանային թերթերը պետք է ցույց տան Լենինի ուսմունքի ինտերնացիոնալ նշանակությունը, դրա վերափոխիչ դերն արդի աշխարհում, մեր պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը որպես լենինյան գաղափարների մարմնավորում, լենինիզմ՝ գործողության մեջ։ Անհրաժեշտ է, միաժամանակ, լենինյան թեման մամուլում լուսաբանելիս խստորեն ղեկավարվել հենց լենինյան հանրահայտ կանոնով՝ «Լավ է քիչ, բայց լավ»։

Շրջանային թերթերի աշխատանքի կարևոր բնագավառներից է կուսակցական կյանքի լուսաբանումը։ Կուսակցական կյանքի հարցերը գործիմացությամբ են լուսաբանում Կրասնոսելսկի «Բարեկամություն», Կամոյի շրջանի «Լենինյան դրոշով» թերթերը։ Այս թերթերի «Կուսակցական կյանք» խորագրի

*տակ զետեղված մի շարք հոդվածներում նկարագրված են կուսկազմակերպությունների աշխատանքը, նրանց գործունեության ձևերն ու մեթոդները։*

*Սակայն առանձին շրջանային թերթերում կուսակցական կյանքի հարցերին նվիրված հոդվածների զգալի մասը լցված են պարզապես թվերով ու փաստերով, քիչ բանով են տարբերվում արտադրական հարցերին նվիրված հոդվածներից։ Այդ հոդվածներում հազվադեպ կարելի է հանդիպել այնպիսի հարցերի լուսաբանման, ինչպես, օրինակ, ինչպիսի՞ եղանակով է իրականացվում սկզբնական կուսակցական կազմակերպության վերահսկողությունը կոլտնտեսության վարչության, սովխոզի, ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, ինչպե՞ս է կազմակերպվում ու ստուգվում կուսակցական ժողովներում ընդունված որոշումների կատարումը, կոմունիստների կողմից կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղական ինտելիգենցիայի շրջանում տարվող քաղաքական, կազմակերպական աշխատանքը, կուսակցական խմբերի գործունեության ձևերն ու մեթոդները։ «Կոմունիստը իր կազմակերպությունում», «Նամակներ սկզբնական կուսկազմակերպություններից», «Մեր կոմունիստները» և այլ խորագրերը, որոնք լայնորեն կիրառվում են միութենական ու հանրապետական մամուլում, արժանի են ընդօրինակման շրջանային թերթերի էջերում։*

*Մեր հասարակության զարգացումը ուղեկցվում է մասսաների քաղաքական ակտիվության անընդհատ վերելքով։ Ուստի, այժմ մամուլի էջերում ավելի շատ տեղ պետք է տրվի աշխատավորների նախաձեռնությանը։ Հաճախակի պետք է հրապարակել նրանց հանրօգուտ նամակները, առաջարկությունները, լուսաբանել նրանց գանգատների քննարկման ընթացքը։*

*Խմբագրության փոստը նյութ է տալիս սիստեմատիկաբար հանդես գալու համար, ինֆորմացիա է տալիս, հուշում նոր թեմաներ, օգնում է ճիշտ գնահատական տալու կատարվածին, մի խոսքով, հուսալի հենարան է ծառայում խմբագրության աշխատանքում։ Այս կապակցությամբ չի կարելի նորմալ համարել, օրինակ, որ Թալինի շրջանի «Կոմունիզմի դրոշով», Անիի շրջանի «Անի» թերթերը 6 ամսում իրենց էջերում տպագրել են 10—12 նամակ։*

*Աշխատավորների արժեքավոր նամակների սիստեմատիկ հրապարակումը պետք է մշտապես գտնվի խմբագրությունների ուշադրության կենտրոնում։ Չպետք է մոռանալ, որ յուրաքանչյուր նամակի հեղինակը կենդանի մարդն է, որի նկատմամբ հոգատարության ցուցաբերումը մեր բոլորի, այդ թվում և մամուլի սուրբ պարտականությունն է։*

*Յուրաքանչյուր թերթ ընթերցողների հետաքրքրությունը հարուցում է ոչ միայն իր հարուստ բովանդակությամբ, այլև գրավիչ արտաքին ձևավորմամբ։ Թեմաների բազմազանությունը, գործի էության մեջ թափանցման խորությունը պետք է օրգանապես զուգորդվեն լրագրային բարձր կուլտուրայի, ձևերի ու ժանրերի բազմակողմանիության և ձևավորման կատարելության հետ, մինչդեռ Ղուկասյանի «Գարուն», Բասարգեչարի «Առատության համար» շրջանային թերթերը հաճախ գորշ տեսք ունեն, կրկնում են շաբլոն վերնագրեր։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ավելի են բարդանում մեր մամուլի, այդ թվում և շրջանային թերթերի առջև ծառացող խնդիրները։ Յուրաքանչյուր շրջանային թերթ պետք է իր աշխատանքները վերակառուցի նոր պահանջների համաձայն և առավել պատվով կատարի իր կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի ու կազմակերպչի դերը։ Այդ գործում նրանք պետք է ստանան կուսակցության շրջկոմների ամենօրյա ղեկավարությունն ու օգնությունը։*

**Ծ. Խ. ՄՀՈՅԻ**
Պատմական գիտությունների թեկնածու

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՔՐԴՍՏԱՆՈՒՄ

(1918—1925 թթ.)

*Քրդստանը Մերձավոր Արևելքի այն երկրներից է, որը ո՛չ միայն իմպերիալիզմի գործարքների առարկա էր, այլև պատերազմական գործողությունների թատերաբեմ։*

*Որպես օսմանյան կայսրության դժնդակ ռեժիմի տակ հեծող ժողովուրդներից մեկը, քրդերը ևս ջանում էին օգտագործել այդ կայսրության քայքայումը և հասնել ազգային ինքնուրույնության։ Հոկտեմբերյան հեղափոխությունը, որի հաղթանակը ուժգնորեն խթանեց Արևելքի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժմանը, բարերար ազդեցություն ունեցավ նաև Քրդստանի ժողովրդական զանգվածների ազատագրական պայքարի վրա։*

*Արևելքի ճնշված ժողովուրդները, ինչպես նշել է Խալեդ Բեգթաշը, արդեն «իրենց թիկունքում ունեին մեծ պետություն, որպիսին բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետությունն էր, որը վարում էր մինչ այդ պատմության մեջ իր նմանը չունեցող նոր արտաքին քաղաքականություն, որը նման չէր ոչ ռուսական հին քաղաքականության, ոչ ամերիկյան, ոչ անգլիական և ոչ էլ ֆրանսիական քաղաքականությանը»։*

*1917 թ. նոյեմբերի 2 (15)-ի «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում», որը լայն արձագանք գտավ Արևելքի կախյալ ու ճնշված ժողովուրդների շրջանում, կոնկրետ մարմնավորվեցին կոմունիստական կուսակցության, նրա առաջնորդ Լենինի հայտնի դրույթները— փոքր ու մեծ ազգերի իրավահավասարություն, ազգային կամ ազգային-կրոնական ամեն տեսակ արտոնությունների վերացում, ազգային փոքրամասնությունների և էթնիկական խմբերի ազատ զարգացում, ազգային ինքնուրույնության, մինչև իսկ անջատման և անկախ պետականություն ստեղծելու իրավունք։*

*Նույն թվականի նոյեմբերի 20-ին (դեկտեմբերի 3-ին) Ռուսաստանի*

ժողովրդական կոմիսարների խորհուրդը հրապարակեց հատուկ դիմում՝ ուղղված «Ռուսաստանի և Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին»։ Սովետական կառավարությունը հայտարարում էր իր վճռականությունը ցարիզմի քաղաքականությունից հրաժարվելու և նրա կողմից կնքված ամեն տեսակ անհավասար պայմանագրերը ոչնչացնելու մասին։ Անմիջապես հեղափոխության հաղթանակից հետո սովետական կառավարությունը ձեռնարկեց ցարական ու ժամանակավոր կառավարությունների գաղտնի պայմանագրերի ու դիվանագիտական փաստաթղթերի հրապարակումը։

Գաղտնի փաստաթղթերի լույս ընծայմամբ մերկացվեցին ցարիզմի ու նրա իմպերիալիստական դաշնակիցների հակաժողովրդական ծրագրերն առաջին համաշխարհային պատերազմում։ Ինչպես նշում է քուրդ պատմաբան Աբդել Ռահման Ղասեմլին, «հրապարակելով Սայքս Պիկոյի, ինչպես նաև մյուս գաղտնի պայմանագրերը, սովետական կառավարությունն օգնեց Մերձավոր Արևելքի ժողովուրդներին՝ ըմբռնելու իմպերիալիստների կողմից նյութվող դավադրությունների իմաստը»։

Իմպերիալիստական տերությունները, չնայած Թուրքիայի դեմ տարած ռազմական հաղթանակին, հարկադրված էին առերես հաշվի առնել արաբների, քրդերի ու մյուս ժողովուրդների՝ անկախություն ձեռք բերելու տրամադրությունները։ Նրանք, սակայն, վարում էին խուսանավելու քաղաքականություն, որովհետև քրդերի ազատագրական պայքարը հակասում էր նրանց շահերին։

Օկուպացիայից անմիջապես հետո ամբողջ Հարավային Քրդստանը պաշտոնապես ընկավ անգլիական սպաների իշխանության տակ։ Միաժամանակ Իրաքում բրիտանական քաղաքացիական վարչությունն աշխատում էր ստեղծել քրդերի՝ «ինքնուրույնության հասնելու տրամադրությունները հաշվի առնելու» տպավորություն։ Ինչպես արդեն վերը նշվեց, այս քայլը Անգլիային պետք էր, որովհետև առջևում էր Մոսուլի վիլայեթի (Հարավային Քրդստան) շուրջ տեղի ունենալիք դիվանագիտական բարդ պայքարը։ Ոչ քիչ նշանակություն ունեցավ նաև այն փաստը, որ անգլիական զինված ուժերը դժվարությամբ էին կարողանում հնազանդության մեջ պահել ինչպես արաբական, այնպես էլ քրդական շրջաններին, որոնք պայքարում էին օսմանյան տիրապետությունն անգլիականով փոխարինելու պլանների դեմ։

Հոկտեմբերյան հեղափոխության իրադարձությունները խոշոր ազդեցություն ունեցան քրդական ժողովրդական զանգվածների վրա, նոր թափ ստացավ ազգային-ազատագրական պայքարը։ Նման պայմաններում անգլիական քաղաքացիական վարչությունը «հարկադրված էր ընդունել քրդական մի շարք շրջանների ինքնավարությունը»։

Քուրդ ակտիվ հասարակական գործիչ Շեյխ Մահմուդ Բարզինջանը Իրաքում անգլիական գերագույն կոմիսարին ներկայացրեց մի փաստաթուղթ, որն ստորագրել էին քրդական քառասուն առաջնորդներ։ Այստեղ նշվում էր, թե քանի որ «...բրիտանական կառավարությունը խոստացել է ազատել արևելյան ժողովուրդներին թուրքական ճնշումից, քրդերը խնդրում են ապահովել իրենց ինքնուրույնությունը և ազատ զարգացումը»։ Մահմուդ Բարզինջանը նշանակվեց քրդական ինքնավար շրջանի (Սուլեյմանիե կենտրոնով) հուկումդար (կառավարիչ). Նրա նպատակն էր ընդարձակել իր իշխանության սահմանները և ի վերջո հասնել քրդերի իսկական անկախ պետության ստեղծման։ Անգլիական իմպերիալիզմը, սակայն, մտադիր չէր նպաստելու քրդերի



անկախության գործին։ Ընդհակառակը, նա ամեն կերպ ջանում էր սահմանափակել քրդական ինքնավար շրջանի իրավունքները։ Ինքնուրույն քաղաքականություն վարելու Մահմուդ Բարզինջանի ծրագիրն սկզբից ևեթ հանդիպեց անգլիացիների դիմադրությանը։ Սիրաշահելով քրդական ավագանու մի մասին, անգլիացիները ձգնում էին պահպանել ու ամրապնդել իրենց իշխանությունը։ Այս քաղաքականությունը, սակայն, ուներ իր խոցելի կողմերը և անկենսունակ գտնվեց։

Իրաքում անգլիական գերագույն կոմիսար Առնոլդ Վիլսոնը հարկադրված խոստովանում է, որ գյուղացիական ամենալայն զանգվածները, որոնք սկզբնական շրջանում միամտորեն կարծում էին, թե «անգլիացիները կկաշկանդեն ցեղապետների կողմից նրանց նկատմամբ կիրառվող բռնապետական իշխանությունը», հուսախաբվեցին։

Զանգվածային բնույթ կրող դժգոհության պայմաններում Մահմուդ Բարզինջանը որոշեց ազատվել «անգլիական հովանավորությունից» և հասնել իսկական ինքնուրույնության։

1919 թ. մայիսի 23-ին իր ուժերով նա հարձակվեց Սուլեյմանիեի անգլիական «քաղաքական սպայի» ռեզիդենցիայի վրա, ձերբակալեց նրա անձնակազմը մայոր Գրինհաուզի գլխավորությամբ և հռչակեց Քրդստանի անկախությունը։ Անգլիական, այսպես կոչված՝ «քաղաքական վարչության» դրոշի փոխարեն Սուլեյմանիեի վարչական շենքի կատարին բարձրացվեց քրդական ազգային դրոշը։ Մայիսի 26-ին ապստամբները գրավեցին Խանեկինը։ Սուլեյմանիեին մոտեցող անգլիական զորաբանակի և քրդական ապստամբ ուժերի միջև տեղի ունեցավ ճակատամարտ։ Ապստամբները պարտության մատնեցին անգլիական օկուպացիոն զորքերին։

«Շատ տատանվողներ միացան Մահմուդին,— գրում է հիշյալ իրադարձությունների մասնակից, անգլիական սպա Էդմոնդսը։ Նույնիսկ սահմանի մյուս կողմը՝ Պարսկաստանի քրդական ցեղերը ապստամբեցին իրենց կառավարության դեմ, պահանջելով մտնել Շեյխ Մահմուդի ղեկավարած քրդական պետության մեջ»։ Անգլիական կառավարության պահանջով օկուպացիոն իշխանությունները վճռական միջոցներ ձեռնարկեցին ապստամբությունը ջախջախելու համար։ Գեներալ Թեոդոր Ֆրեյզերի ընդհանուր հրամանատարությամբ զորքի մի քանի տեսակներ արշավեցին Սուլեյմանիեի վրա։ Անգլիական անհամեմատ մեծաթիվ ու լավ զինված բանակի և քրդական ուժերի վճռական ճակատամարտը տեղի ունեցավ 1919 թ. հունիսի 18-ին Բազիանի կիրճի շրջանում։ Քրդական ազգային ուժերը պարտություն կրեցին, իսկ վիրավորված Մահմուդ Բարզինջանին որպես գերի ուղարկեցին Բաղդադ։ Անգլիական ռազմական դատարանը քրդական շարժման ղեկավարի նկատմամբ մահվան դատավճիռ կայացրեց, որը որոշ ժամանակ անց փոխարինվեց տասը տարվա բանտարկությամբ. նրան աքսորեցին Հնդկաստան։

Չնայած ապստամբությունը պարտվել էր, մինչև 1919 թ. վերջերը անգլիական զորքերը «սանրում» էին Ամադիայի, Աքրայի և, մասնավորապես, Բարզանի շրջանները։ Օկուպացիոն իշխանությունները ռազմական հաջողությունների հասան, սակայն նրանց դրությունը հուսալի չէր։ Պատահական չէ, որ Անգլիայի «Հնդկական գործերի դեպարտամենտը», որն զբաղվում էր Իրաքի հարցերով, 1919 թ. օգոստոսի 24-ին նույնիսկ հարցնում էր գերագույն կոմիսար Վիլսոնին, թե «ներկա իրադրության մեջ արդյոք նա նպատակահարմար չի՞ գտնում ետ կանչել անգլիական ծառայողներին... և ձեռք քաշել

քրդերից» (L. Rambout, Les Kurdes et le Droit, Paris, *1947*, p. *53*)։ *Մահմուդ Բարզինջանին հնազանդեցնելու և «քրդական ինքնավարությունը» իրենց շահերի համար օգտագործելու բրիտանական իշխանությունների պլանները քննություն չէին բռնում։ Քրդական շարժումն ինքնուրույն կերպով զարգանալու և սեփական նպատակներ հետապնդելու որոշակի տենդենց ուներ։ Այս առումով ուշագրավ են անգլիական իշխանությունների խոստովանությունները։*

*«Նորին մեծություն բրիտանական կառավարությունը կարծում էր,— Իրաքի ներքաղաքական վիճակին վերաբերող մի հեռագրում հաղորդում էր անգլիական պաշտոնյաներից մեկը,— որ Հարավային Քրդստանի բնակչությունը հավատարիմ է լինելու նրան և այդ պատճառով էլ համաձայնվեց քուրդ առաջնորդների գլխավորությամբ ստեղծել քրդական ինքնավար գոտի։ Սակայն պարզվում է, որ այս կարծիքը ճիշտ հիմնավորված չէր և բնակիչները բրիտանական ազդեցությունը ողջունելու փոխարեն այնքան դժգոհ են, որ նրանց հսկելու համար պահանջվում են ստրատեգիական երկաթուղիներ»։*

*Անգլիական իմպերիալիզմի դեմ ուղղված քրդական ապստամբությունը որոշակի հետքեր թողեց Քրդստանի ժողովրդական զանգվածների տրամադրությունների վրա։ Նման պայմաններում Ռուսաստանի հեղափոխական իրադարձությունները լայն արձագանք էին գտնում Իրաքում և Հարավային Քրդստանում։ Այսպես, օրինակ, 1919 թ. վերջերին գերագույն կոմիսար Վիլսոնին ուղղված նամակում Սուլեյմանիեի նահանգապետ Սոնը գրում էր. «...Նկատի ունենալով բոլշևիկների վերջին հաջողությունները... չպետք է աչքաթող անել Քրդստանում արտակարգ վիճակի առաջացման հնարավորությունը»։ Ակնարկելով Հարավային Քրդստանում Մահմուդ Բարզինջանի ապստամբության պարտությունից հետո նոր ելույթների հնարավորությունը և այդ կապակցությամբ «բոլշևիկների գաղափարների տարածման վտանգը», Սոնը Սուլեյմանիեից գրում է.* «Բոլշևիզմի անունը և սկզբունքները, դժբախտաբար, այստեղ հայտնի են դառնում»: *Քուրդ պատմաբան Աբդուլ Ազիզ Յամուլքին գրել է. «Միայն Քրդստանին հարևան Ռուսաստանից է, որ փչում է վաղորդյան մեղմ զեփյուռը և նշմարվում է պայծառ լույսը»։*

*Արաբական և քրդական տարբեր շրջաններում տեղի ունեցող անջատ-անջատ ելույթներին հաջորդեց 1920 թ. հուժկու ապստամբությունը, որն ընդունեց համազգային բնույթ։ Այն մեծ նշանակություն ունեցավ Իրաքի ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարգացման համար և հարկադրեց բրիտանական գաղութարարներին հրաժարվելու Իրաքի նկատմամբ ունեցած բացահայտ գաղութարարական պլաններից, անցնելու այսպես կոչված Մանդատային սիստեմին։*

*1920 թվականին Քրդստանում ևս տեղի ունեցան մի շարք ելույթներ անգլիական օկուպացիոն իշխանությունների դեմ, որոնք ճիշտ է, սերտորեն կապված չէին արաբական շարժման հետ և ունեին հիմնականում տեղական բնույթ, բայց հանդիսանում էին անգլիական իմպերիալիզմի դեմ մղվող ընդհանուր պայքարի մի մասը և նպաստում էին համաիրաքյան ապստամբության ծավալմանը։*

*1921 թ. ամռանը բրիտանական իմպերիալիզմն Իրաքի գահին կարգեց իր կամակատար Ֆեյսալ Ալ Հաշիմիին։ Անգլիական իշխանությունները հայտարարեցին, թե հանրաքվեի ժամանակ Ֆեյսալին թագավոր կարգելու օգտին արտահայտվել է Իրաքի արաբ և քուրդ ազգաբնակչության 96 տոկոսը։ Սա բացահայտ կեղծիք էր։ Մոսուլում օրինակ, հավանություն տրվեց Ֆեյսալին թագավոր կարգելու որոշմանը միայն այն պայմանով, որ «հարգվեն քրդերի և ազգային այլ փոքրամասնությունների իրավունքները», Կիրկուկում բնակչությունը քվեարկեց Ֆեյսալի թեկնածության դեմ, իսկ Սուլեյմանիեում ժողովուրդը բացահայտ բոյկոտ հայտարարեց հանրաքվեին և պահանջեց ստեղծել քրդական ինքնավար շրջան Մահմուդ Բարզինջանի գլխավորությամբ։*

*Բնորոշ է, որ Ֆեյսալի թագադրության ժամանակ ներկա չէր Հարավային Քրդստանի ոչ մի ներկայացուցիչ։ «Նա թագադրվեց թաքուն, բարակների մեջ գտնվող հրապարակում,— գրում էր անգլիական «Դեյլի Հերալդ» թերթը։— Ներկա էր բրիտանական աստիճանավորների և նրա կողմնակիցների մի խումբ։ Նրա հետևում կանգնած էր բրիտանական հետևակայինների մի գումարտակ՝ սվինները գլխավերևում պահած։ Դա սիմվոլիկ է։ Ֆեյսալի գահը չի հիմնված Իրաքի ժողովրդի ազատ ընտրության վրա, այլ ստեղծված է բացառապես բրիտանական կայազորի սվինների շնորհիվ։ Ֆեյսալը թագավոր տիկնիկ է, սիրալիր, թույլ մարդ և հարմար է Չերչիլի և նրա յուրայինների կամակատար դառնալու»։*

*Իրաքի ժողովրդական զանգվածները դժգոհ էին երկրում միապետական ռեժիմ հաստատելու անգլիական իմպերիալիզմի ծրագրից և պայքարում էին նրա դեմ։ Սակայն Ֆեյսալի գահակալությունը և արաբական կառավարության կազմավորումը զգալի չափով մեղմացրեց կրքերը։ Անգլիական կառավարությունն արդեն կարող էր հենվել իշխանություն ստացած, իրեն հավատարիմ ֆեոդալների ու շեյխերի օգնության վրա, որոնք հնարավորություն ունեին արաբական հասարակայնությանը ներշնչելու «Իրաքի անկախության» գաղափարը։ Հակառակ պատկերն էր տիրում Քրդստանում։ Քրդական հասարակայնության համար հաշիմյան միապետական ռեժիմի հաստատումը և տվյալ պետության կազմում իրավական անորոշ վիճակը երկյուղելու տեղիք էր տվել։ «Հաշիմյան տիրակալի պանարաբական պլանները,— այդ առթիվ գրում է ֆրանսիացի պատմաբան Բերնար Վերնիեն,— խորապես անհանգստացնում էին քրդական փոքրամասնությանը»։ Օգտվելով նման իրավիճակից, Թուրքիան աշխատում էր վերստին տիրանալ Հարավային Քրդստանին։*

*Անգլիացիների դեմ սկսված զանգվածային բնույթի զինված ելույթների պայմաններում թուրքական զինված ուժերը շարունակում էին խորանալ Հարավային Քրդստանի տարբեր շրջանները։ Շուտով նրանք գրավեցին Ռևանդուզը։ Քրդական ապստամբած շրջանների դեմ գործադրվեց անգլիական ռազմական ավիացիան։ «Վերջերս մեր ինքնաթիռները երեք օրվա ընթացքում դաժան ռմբակոծման ենթարկեցին քրդական գյուղերը,— գրում էր անգլիական «Թայմս» թերթը։ Մի՞թե այս խելացնոր քաղաքականությունն այսուհետև նույնպես պետք է շարունակվի»։ Չնայած քուրդ մի շարք դավաճան ֆեոդալների օգնությանը՝ անգլիացիների դրությունը հուսալի չէր թվում։*

*Նման իրադրության մեջ անգլիական իշխանությունները հարկադրված էին վերստին «խոստանալ» քրդերին այս կամ այն կերպ ինքնավարություն տալու մասին։ Այդ ժամանակ Մահմուդ Բարզինջանին Հնդկաստանից արդեն բերել էին Քուվեյտ։ 1922 թ. սեպտեմբերի 14-ին նա նշանակվեց Սուլեյմանիեի «ընտրական խորհրդի» նախագահ կամ հուկումդար (կառավարիչ)։ Դրանով անգլիացիները նպատակ ունեին հանդարտեցնել իրադրությունը Քրդստանում։*

*Դիմելով այդ քայլին, անգլիական իմպերիալիզմն ուներ իր սեփական պլանները և «մի գնդակով երկու նապաստակ էր խփում»։ Ի դեմս «Քրդական*

ինքնավար շրջանի», նա իր ձեռքի տակ նպաստավոր փաստարկ ուներ Մոսուլի վիլայեթի շուրջը Թուրքիայի հետ ունեցած կոնֆլիկտի մեջ։ Մյուս կողմից հիշյալ միջոցառումն անգլիական կառավարության ձեռքին Իրաքի նորաստեղծ կառավարության վրա ճնշում գործադրելու միջոց էր, որպեսզի նրան թելադրի իր կամքը, մասնավորապես 1922 թ. անգլո-իրաքյան անհավասար պայմանագրի հաստատման հարցում։ Պատահական չէ, որ տակտիկական նույնպիսի նկատառումներով քրդերին սիրաշահելու և նույնիսկ նրանց «ազգային իրավունքները հաշվի առնելու պատրաստակամություն» էին հայտնում նաև Թուրքիայի կառավարող շրջանները։ Վերջիններս խոսում էին «թուրքերի և քրդերի եղբայրության», քրդերի իրավունքների ճանաչման ու «Թուրքիայի հովանավորության ներքո քրդական պետության գոյության անհրաժեշտության մասին» (A. Safrastian, Kurds and Kurdistan, London, 1948, p. 81)։

Ստեղծվեց քրդական ազգային կառավարություն։ Մահմուդ Բարզինջանը դարձավ պետության ղեկավարը, Մինիստրների խորհրդի նախագահը Շեյխ Կադերն էր։ Սակայն քրդական նորաստեղծ կառավարությունը գտնվում էր ներքին և արտաքին բարդ պայմաններում, որոնք կանխորոշեցին նրա վաղաժամ վախճանը։

1922 թ. անգլո-իրաքյան պայմանագրի մեջ քրդերի ազգային իրավունքների հարգման մասին երաշխիքների բացակայությունը և հակաքրդական մի շարք այլ միջոցառումներ պարզորոշ ցույց էին տալիս, որ անգլիական և իրաքյան կառավարությունները մտադիր չէին իսկական իմաստով ճանաչելու քրդերի ազգային ինքնուրույնությունը։ Արտաքին բարդ պայմանների հետ մեկտեղ, քրդական կառավարության առջև կանգնած էին ներքաղաքական բարդ խնդիրներ։ Երկարատև պատերազմը քայքայել էր տնտեսությունը, կառավարությունը հնարավորություն և միջոցներ չուներ սոցիալական շատ թե քիչ շոշափելի վերափոխումները իրականացնելու համար։ Քրդական մի շարք խոշոր ֆեոդալներ թշնամաբար ընդունեցին Մահմուդ Բարզինջանի իշխանությունը, որը հմտորեն օգտագործվում էր անգլիական իմպերիալիստների կողմից։

1922 թ. վերջերին արդեն Բաղդադի և Սուլեյմանիեի հարաբերություններում մեջ ակնհայտ էր բացահայտ լարվածությունը։ «Շեյխ Մահմուդը կռահում էր,— գրում է արաբ պատմաբան Մահմուդ Ադ-Դուրան,— որ անգլիացիները նրա հետ վերաբերվելու են ինչպես 1919 թվականին»։

Իշխանության գլուխ անցնելով Մահմուդ Բարզինջանը ոչ միայն չենթարկվեց անգլիական իմպերիալիստների կամքին, այլև ակտիվ կերպով կողմնակիցներ էր փնտրում նրանց դեմ պայքարելու համար։ 1923 թ. սկզբներից Սուլեյմանիեի դեմ ռազմական գործողություններ սկսելու մանրամասն պլաններ մշակվեցին։ Մայիսին տեղի ունեցան մի շարք արյունալի ճակատամարտեր քրդական ինքնավարության կողմնակիցների և անգլիական զորքերի միջև։ Ինչպես միշտ, անգլիական զինված ուժերը ավիացիայի միջոցով աննախադեպ արհավիրքներ բերեցին Քրդստանի բնակչությանը, օդից ռմբակոծման էին ենթարկում քաղաքներն ու գյուղերը, ոչնչացնում էին նույնիսկ անասունների հոտերը։ Մահմուդ Բարզինջանը հարկադրված եղավ իր ուժերի հետ միասին թողնել Սուլեյմանիեն և ապաստանել Իրանական Քրդստանում։

Կրիտիկական այս իրադրության մեջ Քրդստանի հասարակայնության



լայն խավերը իրենց հայացքը հառել էին առաջին սոցիալիստական երկրին և նրա հետ էին կապում ազգային անկախություն ձեռք բերելու իրենց հույսերը։ Դրա կոնկրետ արտահայտությունը հանդիսացան Մահմուդ Բարզինջանի մի քանի գրավոր դիմումները Լենինի գլխավորած կառավարությանը։ 1923 թ. հունվարի սկզբներին Մահմուդ Բարզինջանը Թավրիզի սովետական հյուպատոսի միջոցով դիմելով ՍՍՀՄ կառավարությանը, գրում էր. «1917 թ., երբ աշխարհը լսեց իսկական ազատության ձայնը և իմացավ շահագործողների ու հանցագործների ճանկերից ազատագրված Ձեր ժողովրդի մասին, ամբողջ աշխարհի բոլոր ազգերը և ազգությունները ուրախության մեծ զգացում ապրեցին։ Այժմ վերջապես մենք հնարավորություն կունենանք իրագործելու քուրդ ժողովրդի ազգային իրավունքների ճանաչումը, որը բարեկամական ձեռք է մեկնում Ձեզ և ամենաանկեղծ կերպով ու ամբողջ սրտով ցանկանում է Ձեզ հետ ապրել որպես բարեկամ և եղբայր»։

Մ. Բարզինջանն իր նամակը ավարտում էր հետևյալ կերպ. «Դուք գիտեք, թե ում դեմ էր ուղղված ապստամբությունը Հարավային Քրդստանում։ Դուք գիտեք նաև հարևան երկրների վերաբերմունքն այս հարցերի նկատմամբ։ Հնարավոր չէ ամեն ինչի մասին մանրամասն գրել Ձեզ, քանի որ դիվանագիտական կապեր գոյություն չունեն մեր և Սովետական կառավարության միջև, որին ինչպես մենք կարծում ենք, կարելի է ապավինել։ Այնուհանդերձ ես կարող եմ Ձեզ ասել հետևյալը. ամբողջ քուրդ ժողովուրդը ռուս ժողովրդին նայում է որպես Արևելքի ազատարարի, ուստի մենք որոշեցինք մեր բախտը կապել ռուս ժողովրդի բախտի հետ։ Մեր մտահոգության հիմնական առարկան հանդիսանում է մեր արդարացի դատի պաշտպանությունը։ Մեր ժողովուրդն անհամբեր սպասում է փոխադարձ կապերի հաստատմանը»։

Սուլեյմանիեից հեռանալուց հետո, մասնավորապես Իրանում գտնվելու ժամանակ, Շեյխ Մահմուդը շարունակում էր մեծ ջանքեր գործադրել համաշխարհային առաջադեմ հասարակայնության ուշադրությունը անգլիական իմպերիալիստների բարբարոսությունների վրա բևեռելու համար։ ՍՍՀՄ կառավարությանն ուղղված 1923 թ. հունիսի 10-ի նամակում նա գրում էր. «Համաշխարհային պատերազմի սկսվելուց ի վեր, մենք, Հարավային Քրդստանի բնակիչներս, անընդհատ անգլիացիներից պահանջում ենք բավարարելու մեր ազգային պահանջները։ Սակայն անգլիական զորքերը և օդանավերը շարունակում են ավերել մեր երկիրը, սպանել մարդկանց և մեզ հնարավորություն չեն տալիս նույնիսկ արտահայտել մեր բողոքն ու դժգոհությունը։ 1922 թվականից անգլիական իշխանություններն իրենց զորքերի օգնությամբ բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի բռնի կերպով Հարավային Քրդստանը միացնեն Արաբստանին։ Անգլիական իշխանությունները ոչ մի օրենքի հետ հաշվի չեն նստում։ Հանուն մարդասիրության խնդրում ենք ուղարկել անաչառ պատվիրակություն, որպեսզի նա կարողանա անձամբ ականատես լինել անգլիական ճնշմանն ու ավերածություններին» («Правда», 22. VI. 1923)։

1923 թ. հուլիսի 27-ին Շեյխ Մահմուդը նոր հեռագրով դիմելով սովետական կառավարությանը նշում էր. «Անգլիական զորքերի արտակարգ ճնշումն ուժեղանում է օրըստօրե։ Ամբողջ Քրդստանի բնակչությունը ենթարկվում է ինքնաթիռների ռմբակոծման և զորքերի հարձակման... Երկիրը ավերածության է ենթարկվում... Խնդրում ենք արդար վճիռ և Ձեր մարդասիրական վերաբերմունքն այդ ճնշման դեմ» («Правда», 27. VII. 1923)։

Շեյխ Մահմուդի կողմից սովետական կառավարությանը ուղղված նամակները, ինչպես նշում է քուրդ պատմաբան Աբդել Ռահման Ղասեմլին, հանդիսանում են «Հոկտեմբերյան հեղափոխության արձագանքների վկայությունը Քրդստանում, ինչպես նաև այն բանի վկայությունը, որ քուրդ ժողովուրդը որպես անկախության համար պայքարող ժողովուրդներից մեկը, բարձր էր գնահատում Սովետական Միության ազդեցությունը և դերը ազատության և ազգերի ինքնորոշման համար մղվող պայքարում»։

Քրդական դեմոկրատական կուսակցության օրգան «Խաբաթ» («Պայքար») թերթն անդրադառնալով քրդական ազգային ազատագրական շարժման նկատմամբ Սովետական Միության բարյացակամ դիրքին, գրում էր. «Եթե իմպերիալիստների մեղքով Սովետական Միության համար ստեղծված դժվարին կացությունը նրան հնարավորություն չտվեց նյութական ուղղակի օգնություն ցույց տալ քուրդ ժողովրդին, ապա Իրաքում երկու ժողովուրդների՝ արաբների և քրդերի պայքարը թշնամու լծից հայրենիքի ազատագրման և երջանիկ կյանքի ստեղծման համար վայելում էր Սովետական Միության մըշտական համակրանքը և պաշտպանությունը»։

1918—1925 թվականների քրդական ազգային ազատագրական պայքարը ներքին և արտաքին մի շարք դժվարությունների պատճառով հաղթանակով չպսակվեց։ Սակայն քուրդ ժողովուրդը շարունակեց ազգային ինքնավարության համար պայքարը։ Մահմուդ Բարզինջանը փոփոխակի հաջողություններով շարունակեց պայքարը անգլիական իմպերիալիզմի և Իրաքի հաշիմյան միապետական ռեժիմի դեմ մինչև 1932 թվականը։ Իր պայքարի մեջ քուրդ աշխատավորական զանգվածները ի դեմս սոցիալիստական առաջին երկրի, մշտապես տեսել են իրենց ջերմ պաշտպանին։

Իրաքի կոմկուսն ընդունել է քուրդ ժողովրդի ազգային ինքնորոշման իրավունքները պաշտպանելու ծրագիր։ Կոմկուսի ընդունած որոշումներից մեկում ասված է. «Արաբ ժողովրդի կողմից բնակեցված տերիտորիան Իրաքում արաբիզմի ընդհանուր տերիտորիայի մի մասն է... Իրաքը կազմում է արաբական պետությունների ընտանիքի էական մասը... Սակայն իմպերիալիզմի կողմից գծված աշխարհագրական սահմաններով Իրաքն իր մեջ ներառնում է նաև Քրդստանի մի մասը։ Դրա համար էլ Իրաքը կազմված է էթնիկական երկու հիմնական խմբերից՝ արաբներից և քրդերից... Քրդերը կազմում են մեկ ազգ, որը, չնայած իմպերիալիստների կողմից նրա մասնատմանը, պատմականորեն հաստատված է ընդհանուր մի տերիտորիայի վրա... Նա ունի ընդհանուր լեզու և անհրաժեշտ հիմքը միատարր ազգային տնտեսություն, ազատություն և ազգային անկախություն ունենալու համար»։

Ազգային ինքնավարության համար պայքարը Հարավային Քրդստանում հարատևում է առ այսօր։ Այդ պայքարը արժանանում է Սովետական Միության և սոցիալիստական երկրների ջերմ պաշտպանությանը։ Ահա թե ինչու իր ազգային իրավունքների ճանաչման համար պայքարող քուրդ ժողովուրդը մեծ Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող սոցիալիզմի հետագա հաջողություններն ու ամրապնդումը համարում է իր ազգային պայքարի հաղթանակի հիմնական գրավականներից մեկը։



**Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ**

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՀԱՅԿՈՄԿՈՒՍԻ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

**Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

Պրոֆեսոր

Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմությունը կազմում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմության մի մասը և սկսվում է բանվորական շարժումից ու մարքսիզմի տարածումից։ Անդրկովկասում առաջին սոցիալ-դեմոկրատական խմբակներն ու կազմակերպությունները երևան եկան XIX դարի 90-ական թվականներին, ապա ձևավորվեցին ՌՍԴԲԿ Թիֆլիսի, Բաքվի ու Բաթումի կոմիտեները։ 1902 թ. Թիֆլիսում կազմավորվեց Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը (Ստ. Շահումյան, Բ. Կնունյանց, Ա. Զուրաբով, Մ. Մելիքյան, Ռ. Դաշտոյան, Ա. Խումարյան, Ա. Երզնկյան, Դ. Շահվերդյան և ուրիշներ), որն իրեն հոչակեց ՌՍԴԲԿ անբաժան մասը։ Նրա հրատարակած «Պրոլետարիատ» խսկրայական թերթի էջերում լույս տեսավ Միության մանիֆեստը, որի հրապարակումը «ամբողջ հոգով» ողջունեց Լենինը։

Բուն Հայաստանում առաջին մարքսիստական խմբակն ստեղծվեց 1899 թ. Ջալալօղլիում (այժմ՝ Ստեփանավան)՝ Ստ. Շահումյանի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ։ Հետագայում սոցիալ-դեմոկրատական խըմբակներ կազմակերպվեցին Երևանում, Ալեքսանդրապոլում (այժմ՝ Լենինական), Ալավերդում, Ղափանում, Կարսում, Սարիղամիշում, Նոր Բայազետում (այժմ՝ Կամո) ու այլ վայրերում, որոնք գնալով աճեցին ու դարձան կազմակերպություններ։

Անդրկովկասյան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները 1903 թ. միավորվեցին ՌՍԴԲԿ Կովկասյան միության մեջ, որի ղեկավար մարմինն էր Կովկասյան կոմիտեն։ Հայաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները հանդիսանում էին ՌՍԴԲԿ Կովկասյան միության անբաժան մասը և գործում էին միութենական կոմիտեի ղեկավարությամբ։ Վերջինս խոշոր դեր կատարեց երկրամասի բոլշևիկների համախմբման գործում, տարբեր ազգությունների շրջաններում հեղափոխական աշխատանքի ծավալման ասպարեզում։

Ռուսական առաջին հեղափոխության շրջանում եռանդով էին գործում Հայաստանի բոլշևիկները։ Նրանք անդուլ պայքար մղեցին լենինյան ստրատեգիայի ու տակտիկայի համար։ Կազմակերպչորեն ամրապնդվեցին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները, ձևավորվեց ՌՍԴԲԿ Երևանի կոմիտեն (Ա. Մալխասյան, Գ. Սոկոլովսկի, Կ. Ալավերդով, Վ. Բարժանսկի, Ա. Մռավյան, Մ. Միրաքյան, Վ. Նինուաշվիլի, Լ. Տեր-Հովհաննիսյան, Լ. Յաղուբյան և ուրիշներ), որը կուսակցության IV համագումարի պատգամավոր ընտրեց Ստ. Շահումյանին։ Բավականաչափ ուժեղացավ նաև Բորչալուի (Լոռու) կազմակերպությունը, որն ուներ գավառային կոմիտե (Ա. Կախոյան, Ա. Թումանյան, Ս. Էվոյան և ուրիշներ) և ՌՍԴԲԿ III համագումարի պատգամավորներ ընտրեց Ստ. Շահումյանին, Ա. Կախոյանին ու Մ. Ցխակայային։ Այդ համագումարում Երևանի կազմակերպության ներկայացուցիչն էր Գ. Սոկոլովսկին։ Նրանք հանդիպումներ ունեցան Վ. Ի. Լենինի հետ, որը մոտիկից ծանոթացավ տեղական իրադարձություններին և իր ցուցումներն ու խորհուրդները տվեց՝ ուժեղացնելու հեղափոխական աշխատանքը ժողովրդական մասսաների շրջանում։

Հայաստանի բոլշևիկներն անմիջականորեն կապված էին Բաքվի ու Թիֆլիսի հետ և օգնություն էին ստանում այնտեղի կազմակերպություններից, հատկապես այնպիսի լենինյաններից, ինչպիսիք էին՝ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ս. Կասյանը, Մ. Մելիքյանը, Հ. Հակոբյանը, Ս. Խանոյանը, Ալ. Խումարյանը և ուրիշներ։ Բաքվում ու Թիֆլիսում հրատարակվող մարքսիստական մամուլն ու գրականությունը տարածվում էր նաև Հայաստանում և հեղափոխական պայքարի կրակ բորբոքում բանվորների ու աշխատավոր գյուղացիների հոգում։ Այն հատկապես ուժգին էր հեղափոխական նոր վերելքի տարիներին։

Անդրկովկասի բոլշևիկներն իրենց դրսևորեցին որպես «կարծրաքար հեղափոխականներ» և պատվով բռնեցին նաև առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ծանր օրերի քննությունը։ Նրանց անմիջական ղեկավար Ստ. Շահումյանը 1915 թ. Վ. Ի. Լենինին և Ն. Կ. Կրուպսկայային ուղղած ծածկագիր նամակում ընդգծում էր. «Ընդհանրապես սասած՝ թույլ եմ տալիս կարծելու, որ ես և մեր բոլոր ազգականները [բոլշևիկները] բարձր ենք պահում մեր ընտանեկան [կուսակցության] դրոշակը և որ Դուք կարող եք մեր ռեպուտացիայի համար հանգիստ լինել» (Ստ. Շահումյան, հ. 2, էջ 349)։ Երկրամասի բոլշևիկների ղեկավար մարմինն էր 1915 թ. հոկտեմբերյան խորհրդակցությունում ընտրված ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոն, որի կազմում էին Ստ. Շահումյանը, Ֆ. Մախարաձեն, Ի. Ֆիոլետովը, Ս. Քավթարաձեն և ուրիշներ։

Այդպիսով, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները մշտապես հանդես էին գալիս որպես մի ամբողջություն և կազմում ՌՍԴԲԿ-ի առաջավոր ու մարտական ջոկատներից մեկը։ Նրանց ընդհանուր ղեկավարությունն իրականացվում էր կուսակցության Կենտկոմի և անձամբ Վ. Ի. Լենինի կողմից, որը և ապահովեց Անդրկովկասի ժողովուրդների ակտիվ մասնակցությունը ցարիզմի ու կապիտալիզմի խորտակմանը և սովետական իշխանության հաստատմանը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, երբ ինքնորոշման իրավունք ստացան նախկին ռուսական կայսրության բոլոր ժողովուրդները, Լենինի գլխավորած սովետական կառավարու-



թյունը հրապարակեց նաև դեկրետ «Թուրքահայաստանի մասին», որով ռուսական զորքերի կողմից գրավված Արևմտյան Հայաստանին նույնպես տրվում էր ազատ ինքնորոշման իրավունք, ընդհուպ մինչև լիակատար անկախություն։ Այդպիսով, հայկական հարցի լուծումը պետք է դուրս բերվեր թուրքական յաթաղանի ու միջազգային իմպերիալիզմի «հովանավորությունից» և հանձնվեր հայ ժողովրդին։ Դրա նախապայմաններից մեկը Հայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծումն էր, որը և իրականացվեց 1918 թ. սկզբին՝ Վ. Ի. Լենինի անմիջական գիտությամբ ու հավանությամբ, բոլշևիկյան կուսակցության Կենտկոմի աջակցությամբ։ Նույն թվականի մարտին կազմավորվեց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, որի մեջ մտան Գ. Հայկունին, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը, Հ. Հովսեփյանը, Գ. Կարագոզյանը, Մ. Սահակյանը։

Այդ կուսակցությունը հիմնականում պետք է գործեր արևմտահայերի մեջ թե բուն երկրում և թե գաղթականության շրջաններում (Անդրկովկասում ու Ռուսաստանում)։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունն աստիճանաբար աճեց ու ծավալեց եռանդուն գործունեություն։ Նրա Կենտկոմն սկզբում գտնվում էր Թիֆլիսում, ուր և հրատարակեց «Կարմիր օրեր» ու «Կարմիր դրոշակ» թերթերը։ Դրանք բոլշևիկյան մարտական օրգաններ էին, որոնց էջերում լայնորեն պրոպագանդվում էին մարքս-լենինյան գաղափարները, Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային-պատմական նշանակությունը, սովետական իշխանության փրկարար դերը, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը, ժողովուրդների բարեկամությունը, անողոքաբար մերկացվում էր միջազգային իմպերիալիզմը, թուրքական ագրեսիան ու օկուպացիան, դաշնակցության ազգադավ քաղաքականությունը և այլն։ Հայաստանի կոմկուսը հայ ժողովրդի փրկությունն ու ազատությունը կապում էր միայն սովետական իշխանության հետ և ընդգծում Սովետական Ռուսաստանի վճռական դերն այդ գործում։

Մեր կուսակցության անդամները, ղեկավար գործիչներն ու ագիտատորներն աշխատում էին նաև զինվորների, աշխատավորության շրջաններում, իրենց բաժանմունքներն ստեղծում Ալեքսանդրապոլում, Կարսում, Բաթումում, Սուխումում և այլուր։ Նրանք կապված էին նաև Բաքվի հետ և աջակցում էին կոմունայի գործին։

Հայ ժողովուրդը կարող է հպարտանալ, որ նրա զավակները մասնակցել են III Կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրմանը։ 1919 թ. մարտին Մոսկվայում տեղի ունեցավ Կոմինտերնի I կոնգրեսը, որին մասնակցում էին 21 երկրների 52 պատվիրակներ։ Հայաստանի կոմունիստական կուսակցության պատգամավորն էր Գ. Հայկունին, որը կոնգրեսին ներկայացրեց գրավոր զեկուցագիր, ուր տրվում էր Անդրկովկասի ու Հայաստանի քաղաքական դրության վերլուծությունը, խարազանվում օտարերկրյա իմպերիալիստների ու նրանց կամակատար բուրժուական նացիոնալիստների արյունոտ տիրապետությունը և ամենայն ուժով շեշտվում Հոկտեմբերյան հեղափոխության ու սովետական իշխանության փրկարար դերը։ Կոմինտերնի I կոնգրեսն ընդունեց ամբողջ աշխարհի պրոլետարներին ուղղված «Մանիֆեստ», որի տակ մյուս պատվիրակների հետ միասին ստորագրեց նաև Հայաստանի կոմկուսի ներկայացուցիչը։

Բնորոշ է նաև, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իր

երկու պատգամավորն է (Գ. Հայկունի և Վ. Տերյան) ուղարկում ՌԿ(բ)Կ VIII համագումար, այն էլ վճռական ձայնի իրավունքով:

Փաստորեն այդ ժամանակ Մոսկվայում էր գտնվում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և գործում էր Հայկական կոմիսարիատի հետ միասին: Վերականգնվեց նրա օրգան «Կարմիր դրոշակ»-ի հրատարակությունը (խմբագիր՝ Ա. Կարինյան), լույս ընծայվեցին 40 անուն աշխատություններ, այդ թվում՝ Վ. Ի. Լենինի մի շարք երկեր, որոնք տարածվում էին հայաբնակ վայրերում և օգնում ճիշտ հասկանալու սովետական կառավարության քաղաքականությունը: Միաժամանակ կուսակցական խմբեր ստեղծվեցին Մոսկվայում, Պետերբուրգում, Կիևում, Խարկովում, Օդեսայում, Աստրախանում, Սարատովում, Ցարիցինում, Յալթայում և այլուր, որոնք խոշոր աշխատանք տարան հայ աշխատավորների շրջանում:

Հասկանալի է, որ այդ ամենը կատարվում էր Վ. Ի. Լենինի ընդհանուր ղեկավարությամբ և ՌԿ(բ)Կ Կենտկոմի մշտական աջակցությամբ: Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմն իր աշխատանքի մասին սիստեմատիկաբար զեկուցում էր ՌԿ(բ)Կ Կենտկոմին:

Երբ Անդրկովկասում փոփոխվեց քաղաքական պայքարի իրադրությունը, ՌԿ(բ)Կ Կենտկոմի Քաղբյուրոն հավանություն տվեց Բաքվի բոլշևիկների առաջարկին, հրահանգելով պայքարել Սովետական Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի համար և յուրաքանչյուրում ձևավորել կոմունիստական կուսակցություն, որոնց անմիջականորեն կղեկավարի ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն:

Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության կազմակերպական լրիվ ձևավորման համար պետք էր լուծել նաև Ռուսաստանում գործող Հայաստանի կոմունիստական կուսակցության հարցը: Եթե առաջինը կապված էր Հայաստանի բուն տերիտորիայի հետ և կազմում էր ՌԿ(բ)Կ-ի անբաժան մասը, ապա երկրորդը հիմնականում գործում էր Ռուսաստանի հայաբնակ վայրերում և ձևականորեն չէր մտնում ՌԿ(բ)Կ-ի մեջ: Վլադիմիր Իլյիչ Լենինը, կուսակցության Կենտկոմը լիովին իրազեկ էին դրան և ելնելով հայ ժողովրդի յուրահատուկ վիճակից ու Հայաստանի միջազգային դրությունից, հնարավոր էին համարում դեռ 1918 թ. սկզբին ստեղծելու այդպիսի կուսակցություն: Այն բավականաչափ գործ կատարեց և լուծեց իր առաջ դրված խնդիրների մի մասը: Մյուս մասը չկատարվեց, որովհետև չիրագործվեց «Թուրքահայաստանի մասին» դեկրետը, իսկ դրա հանցավորները թուրքական զավթիչներն էին և Անդրկովկասի հակահեղափոխական ուժերը, որոնք երկրամասը կտրեցին Սովետական Ռուսաստանից և նրա դռները բացեցին իմպերիալիստների առջև:

Երբ 1919 թ. հասունացավ Հայաստանի տերիտորիալ կազմակերպության միավորման և ապա՝ բոլշևիկյան կուսակցության ձևավորման հարցը, «ՌԿ(բ)Կ Կենտկոմը ոչ մի որոշում չընդունեց հին ՀԿԿ-ի արձակման և նոր ՀԿԿ-ի ստեղծման մասին, որովհետև նա հին ՀԿԿ-ն չէր հակադրում Հայաստանում գոյություն ունեցող ՌԿ(բ)Կ կազմակերպություններին, այլ ամբողջությամբ վերցրած նրանց դիտում էր որպես Հայաստանում կոմունիստական շարժման բաղկացուցիչ մասեր» («Коммунист», 1962 г. № 6, стр. 83):

Վ. Ի. Լենինն անձամբ հետևում ու ղեկավարում էր ՌԿ(բ)Կ մասնաճյուղերի ձևավորման գործը: Այդպես էր Ուկրաինայում, Բելոռուսիայում, Անդրկովկասում և այլուր: ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն 1919 թ. սեպտեմբերի



19-ին որոշեց, որ «Հայաստանի ձևականորեն անկախ կոմունիստական կուսակցությունը պետք է գոյություն ունենա անկախ հայկական պետության սահմաններում» և նրա ներկայացուցիչը պետք է ժամանակավորապես մտցըվի Կովկասի Երկրային կոմիտեի կազմի մեջ[1]:

1919 թ. դեկտեմբերի 20-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ ընդունում է հետևյալ որոշումը. «Անհրաժեշտ գտնելով կոմունիստական կուսակցության՝ որպես տերիտորիալ կազմակերպության գոյությունը Հայաստան հանրապետության սահմաններում, ՌԿԿ Կովկասյան երկրային կոմիտեի ենթակայությամբ, հիմք ընդունել նախապատրաստված բանաձևն ու հրահանգի նախագիծը, առաջարկված Հայկունու կողմից, այդ փաստաթղթերի հիման վրա մշակել մանրամասն բանաձև և այն դնել քաղբյուրոյի քննարկմանը: Միաժամանակ քաղբյուրոն հանձնարարում է Կազմբյուրոյին որոշել Հայաստանի ԿԿ ԿԿ-ի կազմը»[2]:

Այդպես էլ արվում է. ընդ որում Ա. Միկոյանը լուրջ փոփոխություններ է մտցնում Գ. Հայկունու ներկայացրած հրահանգի նախագծում: Դեկտեմբերի 29-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն հաստատում է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի կազմը (Գ. Հայկունի, Վ. Երեմյան, Գ. Տեր-Մկրտչյան, Ս. Կասյան), իսկ 1920 թ. հունվարի 3-ին քաղբյուրոն՝ Լենինի մասնակցությամբ որոշում է ընդունում «Հայաստանում կոմունիստական աշխատանքի մասին»:

Ամենից առաջ այն բնորոշ է հետևյալ ընդհանուր հարցադրումով, որը դուրս է գալիս Հայաստանի շրջանակներից. «Պայքարը տեղական շովինիզմի դեմ և սոցիալիստական հեղափոխության պրոպագանդայի բարենպաստ պայմանների ստեղծումը ռուսաստանյան ցարիզմի լծի տակ գտնված ազգերի մեջ անհրաժեշտ են դարձնում, որպեսզի նախկին Ռուսաստանյան կայսրության սահմաններում փաստորեն ստեղծված «անկախ» պետությունների մեջ կոմունիստական կազմակերպությունները գործեն որպես ինքնուրույն կոմունիստական կուսակցություններ: Կազմակերպության այդպիսի ձևը հատկապես կարևոր է Արևելքում, նկատի ունենալով, որ Ասիայում կամ նրա նախադռանն ապրող ժողովուրդների վստահության նվաճումը հանդիսանում է Սովետական Ռուսաստանի և ՌԿԿ-ի հիմնական խնդիրներից մեկը»[3]:

Այնուհետև, մանրամասն մշակվում են կոմունիստական աշխատանքի կազմակերպական հիմունքները Կովկասում ու Հայաստանում: Բոլոր կոմունիստական կազմակերպությունները (ապա կուսակցությունները) գործում են երկրային կոմիտեի ղեկավարությամբ ու ֆինանսավորվում նրա կողմից: Հայաստանի կոմկուսի ներկայացուցիչը մտցվում է երկրային կոմիտեի մեջ, նրա Կենտկոմի կազմը ընտրվում է համագումարում (մինչ այդ նշանակվում է ՌԿ(բ)Կ Կենտկոմի կողմից): Հայաստանից դուրս հայ բանվորների շրջանում աշխատանք են տանում ՌԿ(բ)Կ-ի կամ ազգային կոմկուսների տեղական կոմիտեներին կից բաժինները՝ ազգային փոքրամասնությունների աշխատանքի գծով, իսկ Հայաստանում դրանց համար կազմակերպվում են սեկցիաներ ՀԿԿ Կենտկոմին ու նրա տեղական կոմիտեներին կից:

ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան երկրային կոմիտեն օժտված էր մարզկոմի բոլոր իրավունքներով և նրա ղեկավարությամբ ակտիվացավ կուսակ-

[1] ЦПА ИМЛ, ф. 17, ед. хр. 38/5293, л. 1.

[2] ЦПА ИМЛ, ф. 17, от.3 пр. 49, л. 2.

[3] ЦПА, ИМЛ, ф. 17, от 3, ед. хр. 52, л. 4:

ցական աշխատանքը տեղերում։ Հարկավոր էր արագացնել երկրամասի ազգային պետություններում կոմունիստական կուսակցությունների ձևավորումը, որպեսզի նրանք առավել կազմակերպվածությամբ գլխավորեին բանվորների ու գյուղացիների պայքարը կապիտալիստների ու կալվածատերերի, բուրժուական նացիոնալիստների տիրապետության դեմ և հաստատեին սովետական իշխանություն։ Անդրկովկասում առաջինը կազմավորվեց Ադրբեջանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը (1920 թ. փետրվարին) և ապա Վրաստանի ու Հայաստանի։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների միավորման գործում կարևոր դեր կատարեցին 1919 թ. սեպտեմբերյան խորհրդակցությունը և 1920 թ. հունվարյան կոնֆերանսը, որոնք տեղի ունեցան Երևանում։ Ընտրվեց Համահայաստանյան կուսակցական կենտրոն՝ ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ), որի մեջ մտան Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Ալավերդյանը, Ա. Նուրիջանյանը, Ս. Խանոյանը, Ղ. Ղուկասյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Մարտիկյանը, Հ. Կոստանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը և ուրիշներ։ Գնալով ուժեղանում էր կոմունիստների ծավալած քաղաքական-մասսայական աշխատանքը և Ա. Միկոյանը 1920 թ. մարտի 6-ին հայտնում է Աստրախան՝ Ս. Կիրովին, Մոսկվա հաղորդելու համար, որ «Հայաստանում աշխատանքը կարգի է գցվել։ Մեր ուժերն աճում են»։

Համաձայն կուսակցության IX համագումարի բանաձևի՝ մարզային բյուրոների կազմակերպման մասին, ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը 1920 թ. ապրիլի 8-ին որոշեց Կովկասյան երկրային կոմիտեի փոխարեն (այն արձակվեց) ստեղծել Կովկասյան բյուրո, որն զբաղվեց Հյուսիսային Կովկասի կուսակցական ու սոցիալիստական շինարարության հարցերով և սերտ կապեր հաստատեց Անդրկովկասի հետ։ Կոմունիստների ղեկավարությամբ Հայաստանում ու Վրաստանում 1920 թ. մայիսին տեղի ունեցան խոշոր ցույցեր ու ապստամբություններ, որոնք խարխլեցին դաշնակների ու մենշևիկների տիրապետությունը։ Թեև այդ ապստամբությունները պարտվեցին և ուժեղացավ տեռորը կոմունիստների դեմ, բայց և այնպես չընդհատվեց կուսակցական աշխատանքը։ Արմենկոմը ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյին զեկուցում է, որ շրջաններում վերականգնվում են կուսակցական կազմակերպությունները և նրանց օգնելու համար ուղարկվում են պատասխանատու աշխատողներ[1]։ Միաժամանակ անհրաժեշտ համարվեց ստեղծելու Հայաստանի կոմունիստական կուսակցության Արտասահմանյան բյուրո, որն սկզբում աշխատում էր Թիֆլիսում և ապա Բաքվում։ Նրա մեջ տարբեր ժամանակ մտել են Ա. Բեկզադյանը, Ա. Մռավյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Հ. Պողոսյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ա. Նուրիջանյանը, Հ. Կոստանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ի. Դովլաթյանը և ուրիշներ։

1920 թ. մայիսին ձևավորվում է Վրաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը, իսկ հունիսին՝ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը։ Իհարկե, դա նախապատրաստվեց Կովկասյան բյուրոյի կողմից և հավանություն տալով նրա միջնորդությանը, ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն 1920 թ. հունիսի 30-ին որոշեց. «Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծել կոմունիստական կուսակցություններ՝ նրանց տալով մարզային կազմակերպությունների իրավունքներ և ենթարկելով Կենտկոմի Կովկասյան բյուրոյին։ Տվյալ կուսակցական կազմակերպություններից յուրաքանչյուրը սպասարկում է իր տերիտորիայում ապրող ամբողջ բնակչությանը՝ անկախ նրա ազգային կազմից» (История КПСС, т. III, книга II, М., 1968, стр. 527)։

1920 թ. հուլիսին Կովկասյան բյուրոյի որոշմամբ ստեղծվում է ՀԿ(բ)Կ Կենտկոմ, որի անդամներն էին Ի. Դովլաթյանը, Հ. Կոստանյանը, Ա. Նուրիջանյանը, Ա. Խանջյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, իսկ թեկնածուներ՝ Շ. Ամիրխանյանը, Վ. Շահգելդյանը։ Օգոստոսին Ս. Տեր-Գաբրիելյանը նշանակվեց Կովկասյան բյուրոյի ներկայացուցիչը Հայաստանում և նրան հանձնարարվեց «ղեկավարել ամբողջ կուսակցական աշխատանքը մինչև Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի ձևավորումը»։ Կովկասյան բյուրոյի ներկայացմամբ ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն 1920 թ. հոկտեմբեր—նոյեմբերին հաստատում է ՀԿ(բ)Կ Կենտկոմի կազմը. Ի. Դովլաթյան, Հ. Կոստանյան, Ա. Նուրիջանյան, Ա. Խանջյան, Ս. Կասյան, Ս. Տեր-Գաբրիելյան, Ա. Բեկզադյան, թեկնածուներ՝ Շ. Ամիրխանյան և Վ. Շահգելդյան։

Այսպիսով, Վ. Ի. Լենինի ընդհանուր ղեկավարությամբ կազմակերպվեց Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը և արդեն 1920 թ. հոկտեմբերի սկզբին նրա Կենտկոմը հատուկ կոչով դիմեց աշխատավորությանը՝ կործանելու դաշնակցության տիրապետությունը և հաստատելու սովետական իշխանություն. «Մենք դիմում ենք Հայաստանի բանվոր-գյուղացիական մասսաներին, նրանց հեղափոխական կորովին ու դասակարգային գիտակցությանը՝ կազմակերպվելու կոմունիստական կուսակցության դրոշի շուրջը, հավաքելու ցրված հեղափոխական ուժերը, որպեսզի ձեռք-ձեռքի տված Խորհրդային Ռուսաստանի պրոլետարիատի հետ՝ միահամուռ ուժերով խորտակենք միջազգային իմպերիալիզմի հայկական-դաշնակցական հատվածի լուծը, նորից բարձրացնենք կոմունիզմի դրոշակը Հայաստանում» («Կոմունիստ» (Բաքու), 1920 թ., № 117)։

Այդպես էլ եղավ. 1920 թ. նոյեմբերի 29-ին հայոց աշխարհում ճառագեց ազատարար Հոկտեմբերի արևը։ Հազարամյակների ճանապարհ անցած հայ ժողովրդի պատմության մեջ սկսվեց նոր դարագլուխ։ Նա՝ կոմունիստական կուսակցության լենինյան ղեկավարությամբ ապրեց իսկական վերածնունդ և սովետական բոլոր ժողովուրդների հետ միասին անշեղորեն ընթանում է դեպի կոմունիզմ։



1 ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 850, թ. 8։

# Ի ԽՈՐՈՑ ՍՐՏԻ

Ժ. Ս. ԷԼՈՅԱՆ

Հնագույն ժամանակներից ի վեր ժողովուրդները պատմել են իրենց հերոսագործությունները, դեգերումներն ու պայքարը, երգել ուրախությունն ու վիշտը, կորուստներն ու նվաճումները: Չեն եղել գիր ու գրիչներ, գրողներ ու տպագրություն, բայց ժողովուրդներն ստեղծագործել, իսկ հեքիաթասացները, ասացողներն ու աշուղները շրջել են տեղից տեղ, երկրից երկիր, պատմել ու երգել նախնիներից լսածները, ավելացրել իրենցը, ստեղծագործել ու տարածել... Երգեր են երգվել, առասպելներ, հեքիաթներ պատմվել: Ժողովուրդը շարունակել և շարունակում է իր բանավոր բառ ու բանը հյուսել նաև գրի, տպագրության ստեղծումից հետո:

Ժողովրդական առավել մեծ ու խոր ստեղծագործությունները ծնվել են ազգերի ճակատագրի հետ կապված կարևորագույն, վճռական իրադարձություններում և խտացնելով, մարմնավորելով ժամանակի վեհ ու ազնիվ գաղափարները՝ արտացոլել ժողովուրդների ազատաբաղձ ոգին, որոնումներն ու պայքարը:

XX դարի սկզբում բռնկվեց, ծավալվեց ու հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՎԻԹ ստեղծող ժողովուրդն ստեղծեց իր նոր էպոսը՝ ԼԵՆԻՆ ՓԱՇԱՆ, նվիրված պրոլետարիատի մեծ առաջնորդին ու ղեկավարին: Ձևի ու բովանդակության, ժողովրդական վեհ գաղափարների ներդաշնակ մի կատարելություն է այն՝ էպիկական, հերոսական շնչով համակված: Լենինի հետ այստեղ հերոսացված է ողջ աշխատավորությունը: Մահից մազապուրծ մեր ժողովուրդն իր ուժի, անպարտելիության գիտակցությունը, թշնամու հանդեպ տածած ցասումն ու ատելությունն է խտացրել այստեղ, բոլոր աշխատավորների ազատության ու բարեկամության գաղափարը: Երախտապարտ ժողովրդի՝ իր ազատարարին ձոնված սրտի խոսքն է այս սաք-պոեմը, որը հյուսվեց ու տարածվեց ինչպես ամեն լավ գործ:

Պատմողներից, ասացողներից է մեծ չափով կախված այդպիսի ստեղծագործությունների ներգործության ուժը: Եթե նրանք կարողանում են իրենց կատարմամբ թափանցել ունկնդիրների սիրտը, ապա դրանք պահպանվում, անցնում են բերնե-բերան, հղկվում, մշակվում: Այդ է ցույց տալիս ասմունքի մեծ վարպետների՝ Սուրեն Քոչարյանի, Արկադի Ռայկինի, Վլադիմիր Յախոնտովի, Լեոնիդ Խմարայի, Իրակլի Անդրոնիկովի հույժ տպավորիչ կատարումը:

Երջանիկ մի զուգադիպությամբ ԼԵՆԻՆ ՓԱՇԱՆ գտավ իր վարպետ կատարողին՝ պրպտող ու ստեղծագործող ասմունքողին՝ մեր հանրապետության ժողովրդական արտիստ ՎԱՐՈՒԺԱՆ (ԺԱՆ) ԷԼՈՅԱՆԻՆ: Սիրել է նա ասմունքը, արտասանել մեր գրականության՝ սրտով ընտրած լավագույն կտորները, արտասանել խորապես զգալով, վերապրելով նյութը: Այդ է պատճառը, որ ամենուրեք սիրում են նրան, սպասում... Շատ անգամ ելույթից հետո նրան ուղեկցել է հիացական, միաժամանակ պարտավորեցնող մրմունջը՝ «Ապրի՛ս, լաո՛, ժողովուրդը կարոտ է քըզի»:

Նույնպիսի ոգևորությամբ նա ձեռնամուխ է եղել մեր աշխատավորների մեծագույն առաջնորդին նվիրված էպոսի՝ ԼԵՆԻՆ ՓԱՇԱՅԻ ստեղծագործական մշակմանն ու կատարմանը, որի համար 1937 թ. կայացած ասմունքողների հանրապետական մրցույթում արժանացել է առաջին մրցանակի:

Մեր ընթերցողներին հետաքրքրում են ասմունքի վարպետի ստեղծագործական որոնումները, այս էպոսի հետ կապված մի շարք այլ հարցեր:

Ահա թե ինչ պատմեց ԺԱՆ ԷԼՈՅԱՆԸ:



* * *

1937 թվականն էր: Հայտարարված էր ասմունքողների հանրապետական մրցույթ:

— Սա լավ գործ է, քեզ կհաջողվի, վերցրու, փորձիր,— փոքրիկ մի գրքույկ մեկնելով ինձ՝ ասաց ժողովրդական արտիստ Վարդան Աճեմյանը, որը դերասանական առաջին քայլերից սկսած այնպես ուշադիր, հոգատար էր իմ նըկատմամբ:

**Լենու խաքա̈թն** էր այն, որ կարդացի մի շընչով: Նյութի հետաքրքրականությունն ու բացառիկությունը՝ որպես ֆոլկլոր, գրավեցին ինձ: Լենինի մասին շատ ստեղծագործություններ կային (Մայակովսկու, Հակոբյանի, Չարենցի և այլոց), բայց ես որոնում էի ժողովըրդի ստեղծածը, ֆոլկլորը, և ահա, ներկայացավ պատեհ առիթը. ժողովրդի բառ ու բանով գըրված գողտրիկ, սրտաբուխ ստեղծագործություն էր **Լենին փաշան՝** նվիրված մեծ առաջնորդին, և ես որոշեցի հասցնել այն մեր ժողովրդին:

Գրառողը՝ Աշուղ Վերդին (Գեղամ Թարվերդյան), որ խոյեցի էր, որոշ ածականների ու նախդիրների ավելացմամբ կամեցել էր վերածել այն Խոյի բարբառի: Ստացվել էր խառը բարբառ: Որոշեցի պարզել՝ ո՞վ է հորինել պոեմը, ե՞րբ, ինչպե՞ս: Եվ սկսվեցին որոնումներս: Ըստ գրառողի, պոեմի հեղինակը՝ Խիզանցի գզրար Սեփոն է (Խիզանի բարբառը մոտ է Մոկսի ու Սասունի բարբառներին): Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ 1914 թ., Արևմտյան Հայաստանի Խիզան գավառից Իգդիր, ապա Էջմիածին է եկել գըզրար Սեփոն (Ստեփան): Չորս համագյուղացիներից գզրարների «դաստա» կազմած, նա շրջել է Հայաստանի տարբեր գավառները, Հայաստանից դուրս գտնվող հայաբնակ վայրերը, բուրդ գզել ու հետն էլ պատմել իր լսած ու հորինած հեքիաթներն ու առակները: Կարճ ժամանակամիջոցում Վըրըշիկ Սեփոն հայտնի է դարձել որպես վարպետ ասացող, չար մարդկանց, մեծամեծներին, խանութպաններին սրամիտ քաղյակներով ծաղրող: Թերևս դրա համար են նրան կոչել նաև Ջաղկի (ձաղկող) Սեփո: Մահ, կոտորած, ավեր տեսած աշխատավոր հայը Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո համակրանքով է լցվում «բալշուրիկների» (բոլշևիկների) հանդեպ: 1917 թ. նա արդեն լսել էր Լենինի մասին, ոգևորվել նրա կերպարով, հավատացել նրա գործի հաղթանակին ու որոշել նրան նվիրված մի հեքիաթ հորինել: Ասես նա զգում, երազում էր, որ Ռուսաստանի՝ այդ խորունկ ծովի ալիքները փոթորկելով կհասնեն Հայաստան, և մեր աշխատավորներին ևս կառնեն Լենինի բանակի, բոլշևիկների շարքերը:

Հայաստանում հաղթանակեց հեղափոխությունը: Սեփոն տեսավ, որ հնացել են իր հեքիաթները, ժողովուրդն անձկում է նոր հեքիաթի, նոր խոսքի. հասունացավ և նրա մըտահղացումը: 1922 թ. ստեղծվեց հեքիաթ Լենինի մասին: Իր գզրար ընկերների հետ շըրջելով ժողովրդի մեջ, մեծ ոգևորությամբ պատմում էր այն, երգում Լենինին, Լենինի հայ զինակիցներին՝ Շահումյանին, Մյասնիկյանին, Աթարբեկյանին, Ղուկասյանին... 1926 թ. Էջմիածնում մեռնում է գզրար Սեփոն, բայց հեքիաթը մնում է ժողովրդի մեջ:

Բանահավաք Վերդին 1934 թ. Աշտարակի շրջանի երբեմնի Մումուխան գյուղում հանդիպում է Ջաղկի Սեփոյի ընկերներից՝ Գաբո Բարձումյանին: Երբ Վերդին հարցնում է նըրան, թե ինչ հեքիաթներ գիտե, Գաբոն պատասխանում է.

— Վալլահ, ես բան լէ չըմ գինա, իմ բոլոր գիտցածներ Ջաղկի Սեփոյինն են: Շատ բան գինար էնի, հըմը իմ միտ մինակ **Լենու խաքա̈թն** ի մնացի: Թե կուզիք, պատմիմ:

Ու պատմում է: Աշուղ Վերդին գրի է առնում: Շուտով Մոսկվայի ժողովրդական ստեղծագործության տունը դիմում է բոլոր հանրապետություններին՝ հավաքելու և ուղարկելու Լենինի մասին հորինված ժողովրդական ստեղծագործությունները: Մոսկվա է ուղարկվում հայագետ Կ. Մելիք-Օհանջանյանի թարգմանությունը, որն արժանանում է ընդհանուրի հավանությանը: Հայաստանում առաջին անգամ **Լենին փաշան** տպագրվել է 1936 թ., **Լենինը հայ ֆոլկլորի մեջ** ժողովածուում, **Լենու խաքա̈թ** վերնագրով:

Ես սկսեցի աշխատել պոեմի վրա, որը հորինված էր ինձ հարազատ ու հաճելի բարբառով: Երկար եմ աշխատել, հղկել պոեմի լեզուն, փոխել անհասկանալի, մեր ժողովրդի միայն մի հատվածին հատուկ խիստ բարբառային բառերը, հանել ավելորդ նախդիրներն ու ածականները. գործողության դինամիզմը չխախտելու, խոսքն ավելի անմիջական, կոնկրետ ու դիպուկ դարձնելու նպատակով կրճատել եմ ձգձգված տեղերը և որոշ կրկնություններ: Ստեղծագործական այս պրոցեսը, որ շարունակվում է մինչև օրս, հոգեկան մեծ բավականություն է պատճառում ինձ:

Ժողովուրդը, որ դարերով պատմել է Դավթի մասին, երգել նրան, խտացրել նրա մեջ իր երազներն ու խոհերը, մարմնավորել ժողովրդի ազատագրական պայքարը, կատարյալ մարդու իր իդեալը, կերտեց և «բալշուրիկների դիհբաշու», նոր օրերի դասակարգային պայքարի հերոսի կերպարը: Ոչ թե մի ազգի, այլ բոլոր ազգերի աշխատավորների փաշան է Լենինը

(փաշա անելով ժողովուրդը հասկանում է առաջնորդ):

Չնայած **Սասունցի Դավթում** հիմնականում նկարագրված են ազգային-ազատագրական, իսկ **Լենին փաշայում**՝ դասակարգային պայքարի իրադարձություններ, սակայն դրանց միջև կան շատ զուգահեռներ, կիրառված են հերոսականացման նույնպիսի միջոցներ: Բայց դրանք բնավ մեխանիկական փոխառման արդյունք չեն, այլ ժողովուրդների զգացմունքների ու խոհերի, մտածելակերպի արդյունք. դարավոր ոճով ժողովուրդն արտահայտել է նոր մտքեր, նոր բովանդակություն: Ինչպես լսելով Սանասարի ու Բաղդասարի մարդասիրական գործերի մասին՝ աշխատավորներն աշխարհի բոլոր կողմերից գնում են նրանց մոտ՝ բնակվելու, ազատություն և աշխատանք ստանալու, այնպես էլ, երբ Լենին փաշան:

*Ես տը կռվիմ, ասից, տ՚ազատիմ զհաղկատ...*

աշխարհում որքան աղքատներ կային «թափան Լանին փաշին ք՚ոմագ»:

Երբ Դավթի պես ճակատ առ ճակատ, առանց խորամանկելու և խաբեության Լենինը կանչում է՝

*Է՞յ վրեժի կախ ի...*
*Ջարկե՛ք, որ զծի դուշման փուչ էնիք.*
*Կռվե՛ք, որ զծի ազատութեն ծեռք պերիք...*

ռուսաց զորքի զինվորներն ասում են.

*—Մենք վրե՞ զանինք մեր ֆազիր ախպրտանց.*

և անցնում են Լենինի կողմը:

Ժողովուրդը խորապես հասկացել է Լենինի զորքի հաղթանակի, սուլթանի՝ պարտության պատճառները: Ինձ հիացրեց ժողովրդի իմաստության այս պարզ, փայլուն արտահայտությունը.

*Էն վուր Լանին փաշի մարթերն ին, զմեն լէ*
*մեկ սիրտ, մեկ խոքի,*
*Զմեն լէ աշխարքից զուրկ, սիրտ վառված*
*մարթեր...*

Նրանք կռվում էին հանուն իրենց ազատության ու իրավունքի, դրա համար և՝

*Էլ չիրիշկին Թոփ զթվանք զպուլըմիտ.*
*Դոշով պացին ուրանց ճամփան...*

Իսկ շատ կոտորողին խաչ ու մեդալ խոստացող թագավոր-սուլթանի զորքը պարտվում է, որովհետև

*Էն վուր փարով էր էկի, ըզուր կլոխ*
*կը պախեր,*
*Էն վուր շուխ պախված էր, ըզուր կլոխ*
*կը ծածկեր.*
*Էն վուր վախկոտ-ջանպախ էր, զաթեն*
*կը վախեր ու կը փախեր,*
*Մացեր ին օտար մարթեր, վուր ուրանց վեջ*
*չէր:*

Խոր ու ազնիվ է աշխատավոր ժողովրդի խաղաղ ու բարեկեցիկ կյանքի մեծ նախանձախնդրի՝ Լենին փաշայի զայրույթը կեղեքողների, նրա ազատությանը բռնացողների դեմ: Երբ աշխատավորները հաղթում են և «ըռսաց ճոչ սուլթանին» բերում Լենինի մոտ, սուլթանը խնդրում է չսպանել իրեն, մի կտոր հող տալ, որ իր աղջիկների հետ ապրի...

*Ես չըմ հավտա էտա շողոմ խոսքերիդ.*
*Ասեց Լանին, քաշեց զսուր, կլոխն ի զարկ*

այն «դըմշելի», որ բազում օջախներ էր մարել, երեխաներ թողել որբ ու խեղճ, մայրեր ու քույրեր՝ սգավոր, ջահել կանայք՝ որբևայրի, բանտերը լցրել ազնիվ մարդկանցով և աննդհատ կռիվներ էր հրահրել աշխարհը զավթելու, «իրմով» անելու համար: Այստեղ արտահայտված է և ժողովրդի խոր ատելությունն ու ցասումը իշխողների ու բռնակալների հանդեպ: Ամեն անգամ այս տողերն արտասանելիս հիշում եմ Սասունցի Դավթի՝ Մսրա Մելքին ուղղված այս խոսքերը.

*Ես չը՛մ նստի քու հացին,*
*Դուրս արի, դուրս, զարկինք իրար:*

Ժողովուրդը ոչնչացնող ծաղրի է ենթարկել վատերին, բռնակալներին, ռուսաց սուլթանին անվանել է «զըռ դանդալոշ», «պաց պերան», «պիան սարսաղ»: **Լենին փաշան** հարուստ է մարտերի դինամիկ, հիպերբոլիկ նկարագրություններով, որ այնպես հատուկ են էպիկական ստեղծագործություններին: Մինչ այդ, մի այլ տեղ ես չէի հանդիպել հեղափոխության ընթացքի նման կենդանի, դինամիկ նկարագրության: Այսպես՝

*Մեկ զիամաթ փրթավ, զաշխար դպավ իրուր...*

կամ՝

*Զարկին, զարկվան, դուման էլավ հաշխար*
*պոնից,*
*Զարկին, զարկվան,— լեշը փռվավ*
*տապակ-տապակ.*
*Սպանվողաց արուն էլավ, կապեց զգետ,*
*Էս արունգետ քար կկլտորեր զմանաքաշ:*

Եվ հաղթեց Լենինի կամքը, Լենինի զորքը՝ ռանչպարը, բանվորը: Լենին փաշան «բալշուրիկի օրենք դրեց», փոխեց երկրի կարգը. նախկին նոքարներին, չոբաններին, ծառայողներին ուսում տվեց, «տարավ առաջ, տրեց սարքար», «երկիր զմեն հիստըկեց»: Բոլոր աշխատավորներին, բանվորներին իր թևի տակ առնող Լենինի շնորհիվ միայն հին աշխարհն ավերվեց ու մաքրվելով նորից շինվեց:

Ես երբեք չեմ մոռանում, որ ասմունքը թատրոն չէ,— շարունակում է վարպետը,— դժվար է մեն-մենակ՝ ժամերով գամված պահել ունկնդիրներով լի դահլիճը. իսկ ասմունքն առանց քեզ հառված, քո ամեն մի խոսքով, դիմախաղով ու շարժումով ապրող ունկնդրի, անհնար է: Այդ է պատճառը, որ ես միշտ մեծ կարևորություն եմ տալիս խոսքի կախարդիչ ուժին, ջանում հաղթահարել խոսքն այդպիսին դարձնելու դժվարությունը և շարունակ աշխատում, կատարելագործում եմ այն: Դերասանի, ասմունքողի խոսքը խճաքար է, որը երբ գցում ես ջուրը, մինչև տեղ չհասնի, չընկնի հատակին, պղպջակը ջրի երես դուրս չի գա. ժողովուրդն էլ մի ծով է, որին ուղղված խոսքը պետք է հասնի նրա սրտին, հուզի, փոթորկի, արձագանքվի, այդ հուզումը երևա նրա դեմքին, աչքերում... այդ շատ կարևոր է: Ուստի, ձայնային, ռիթմային միևնույն երանգով չեմ արտասանում բոլոր բառերն ու տողերը: Այսպես. երբ թվում եմ, թե որ երկրներն են զորք հանել Լենինի դեմ, այդ ամենից հետո շեշտում եմ հատկապես՝ «Տո, կոչոտ Ճափունլե, առավ էկավ, ուրեն զորք», կամ նշելով, որ երկրի բոլոր վայելքները հարուստներինն են, իսկ աղքատն այնքան է տանջվում, մինչև հոգին դուրս գա, շեշտում եմ.

*Ամմա դ՚արի, վուր անունք քիչ ին,*
*հաղկատ շա՜տ ի:*

Ամեն անգամ բարբառային նյութեր արտասանելիս տագնապով մտածում եմ. հին սերունդը գնալով պակասում, մոռացվում է բարբառը. կհասկանա՞ն, կընկալե՞ն ինձ արդյոք: Եվ միշտ, արտասանելուց հետո, ինձ զարմացնում է ժողովրդի փոխըմբռնումը: Ինձ թվում է, այդ փոխըմբռնման պատճառն այն է, որ մեր ժողովուրդն այս տարիների ընթացքում փոխվել, զարգացել է, անհամեմատ մեծացել է մտավորականության թիվը, որն ավելի խոր է ընկալում կյանքը, ավելի կարդացած է, զարգացած, և նրա համար ավելի հեշտ է հասկանալ, ըմբռնել բարբառային նրբությունները. բացի դրանից պոեմն ստեղծված է մեծ շնչով ու տաղանդով, չթուլացող դինամիզմով ու ռիթմով. իմ կարծիքով այդ ամենը և թեմայի հավերժականությունը, Լենինի հանդեպ ժողովրդի տածած անսպառ սերը, օրեցօր աճող հետաքրքրասիրությունն են այս պոեմի հավետ մատչելիության գաղտնիքը:

Հայաստանի գրեթե բոլոր շրջաններում, Հայաստանից դուրս գտնվող հայաբնակ վայրերում, սփյուռքում արտասանել եմ անմահ **Սասունցի Դավիթը,** Ե. Չարենցի **Խմբապետ Շավարշը,** Ա. Բակունցի **Մուրոյի զրույցը,** Գ. Էմինի **Սասունցիների պարը** և այլն, սիրով կերտել Առաքելի այնքա՜ն բնական, անմիջական, խոր ու պարզ կերպարը՝ Հ. Քոչարի **Կարոտը** պատմվածքում: Ծանոթ եմ բարբառներին, հատկապես Մշո, և միշտ ոգևորությամբ ու հաճույքով եմ կատարում բարբառով գրված գործերը: Բայց այդ ամենի մեջ իմ տարերքը **Սասունցի Դավիթն** է ու **Լենին փաշան:**

Բնավ էլ պատահական չեն ինձ համար սրտիս անսահման մոտ, ժողովրդական մտածողությամբ, բառ ու բանով հագեցած այս պոեմի ընտրությունն ու կատարումը. **Լենին փաշան** մեր գրականության գոհարներից մեկն է. լենինյան դարի այս ստեղծագործությամբ հայ ժողովուրդը երախտագիտության հուշարձան է կանգնեցրել իր ազատարարին:



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՀՆԳԱՄՅԱԿԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

Մայրաքաղաքի արդյունաբերության աշխատողները ժամկետից 6 օր շուտ կատարեցին 1968 թ. արտադրանքի իրացման տարեկան առաջադրանքը և պլանից ավելի թողարկեցին մոտ 29 մլն ռուբլու արտադրանք։ Իրացվող արտադրանքի ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 10,5 տոկոսով։ Որոշակի հաջողություններ ձեռք բերվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում, որը, 1967 թ. համեմատությամբ, աճեց 4,3 տոկոսով։ Հիմնական և օժանդակ նյութերի դրամական միջոցների խնայողաբար ծախսման շնորհիվ թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումից տնտեսվեց մոտ 4,7 մլն ռուբլի, ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկությունների ներդրումից՝ ավելի քան 9 մլն ռուբլի։ Բազմաթիվ ձեռնարկություններ հաջողությամբ նվաճեցին սոցիալիստական պարտավորությամբ նախատեսված բնագծերը։ Դրանց թվում են Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, կիսահաղորդիչների, կաբելի, էլեկտրալամպերի, կոմպրեսորների, ժամացույցի, ռելեի, հիդրոպոմպերի գործարանները, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատը, Ստ. Շահումյանի անվան կաշվի միավորումը, կարի № 4 ֆաբրիկան և այլն։

Ներկայումս մայրաքաղաքի 221 արդյունաբերական ձեռնարկություններից 105-ը գործում են պլանավորման նոր սիստեմով և իրացված արտադրանքի մոտ 74 տոկոսը տվել են այդ ձեռնարկությունները։ Այստեղ ընդգրկված են քաղաքի արդյունաբերական-արտադրական անձնակազմի 70 տոկոսը, արտադրանքի իրացման ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, աճել է 11, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 4,7 տոկոսով։

Իրենց առջև ծառացած խնդիրները հիմնականում հաջողությամբ են լուծում մայրաքաղաքի աշխատավորները։ Առավելապես աչքի են ընկնում օրջոնիկիձեականները։

Սակայն մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները դեռևս շատ թերություններ ունեն։ Անհրաժեշտ է, որ կուսակցության շրջանային կոմիտեները պատասխանատվության ենթարկեն այն ձեռնարկությունների ղեկավարներին, որոնք խախտում են պետական կարգապահությունը և ձախողում արտադրատեսակների պլանի կատարումը։



Մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների խնդիրն է՝ հայտնաբերել և օգտագործել ներարտադրական ռեզերվները, հասնել այն բանին, որ հնգամյա պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության առաջադրանքը կատարվի ժամկետից շուտ՝ 1970 թ. ապրիլին։ Այդ նպատակով անհրաժեշտ է ավելի արագ տեմպերով իրականացնել ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, լրիվ օգտագործել դրանց հզորությունները։

Ընթացիկ հնգամյակում վերակառուցվում են մայրաքաղաքի շատ ձեռնարկություններ, մեքենայացվում ու ավտոմատացվում են արտադրության աշխատատար պրոցեսները։ Սակայն մի շարք օբյեկտներում (կոմպրեսորների, ավտոպահեստամասերի, պոմպերի, հաստոցանորմալ, տեխնոլոգիական հարմարանքների գործարաններ և այլն) այդ աշխատանքներն ընթանում են դանդաղ, խախտվում են գրաֆիկները։ Չպետք է դանդաղեցնել ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, նախագծային հզորությունների լրիվ յուրացման տեմպերը, քանի որ դա աշխատանքի արտադրողականության բարձրացման ամենահիմնական գործոնն է։

Տեխնիկական առաջադիմությունը շատ կենսական է այժմ, որովհետև ներկա պայմաններում մայրաքաղաքի արդյունաբերությունը բանվորական ուժի մեծ կարիք ունի։ Այս հարցի լուծման հիմնական ուղիներից մեկը արտադրության, մասնավորապես, աշխատատար պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումն է։

Մեր արդյունաբերության զարգացմանը խանգարում է համախառն արտադրանքի ծավալի աճի տեմպերի նվազումը։ Այսպես, եթե 1967 թ. համախառն արտադրանքի աճը, 1966 թ. համեմատությամբ, 14,5 տոկոս էր, 1965 թ. համեմատությամբ՝ 28, ապա 1968 թ. այն նախորդ տարվա համեմատությամբ կազմում էր 8,5 տոկոս։

Պլանավորված տնտեսությունում արտադրության ինտենսիվ աճին ուղեկցում է նրա էքստենսիվ աճը։ Սակայն, եթե հաշվի առնենք, որ աշխատանքի արտադրողականության աճի հաշվին ստացվել է արտադրանքի ծավալի աճի մոտ 60 տոկոսը, ապա պարզ կդառնա, թե ինչքան չօգտագործված հնարավորություններ կան տեղերում։

Ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են ավելի լրջորեն հետևելու տեխնիկական վերազինման համար առանձնացված միջոցների առավել արդյունավետ օգտագործմանը, հնացած, ցածր արտադրողականություն ունեցող սարքերը նոր սարքավորումներով փոխարինելու գործին։ Այդ նպատակով անհրաժեշտ է ավելի լրիվ օգտագործել ձեռնարկությունների հնարավորությունները և, հատկապես, զարգացման միջոցները։ Պետք է մեծ ուշադրություն հատկացնել նաև հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացմանը։ Եթե Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի օգտագործումն ավելանա 1 տոկոսով, ապա հնարավոր կլինի թողարկել 12 մլն ռուբլու լրացուցիչ արտադրանք։

Քաղաքի մի շարք ձեռնարկություններում անբավարար են օգտագործվում ունեցած ֆոնդերը, նվազում է ֆոնդահատույցը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1960 թ. համեմատությամբ, 1968 թ., ֆոնդահատույցումը նվազել է մոտ 20 տոկոսով։ Սա հիմնականում բացատրվում է

նրանով, որ կապիտալ ներդրումների պլանները թերակատարվում են, նոր կարողությունները կոմպլեքս ձևով չեն հանձնվում շահագործման, ցածր է հերթափոխության, սարքավորումների բեռնվածության գործակիցը, աշխատանքի և արտադրության կազմակերպման գործում կան զգալի թերություններ։

Լուրջ թերություններ կան նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքներում։ Չնայած բոլոր շրջանները (բացառությամբ Մյասնիկյանի շրջանի), ունեն համախառն արտադրանքի և աշխատանքի արտադրողականության աճ, բայց որոշ ձեռնարկություններում իջել են այդ ցուցանիշները։

Ինչպես հայտնի է, 1968 թ. հունվարի 1-ից համախառն արտադրանքի և աշխատանքի արտադրողականության ցուցանիշները պետությունը չի պլանավորում։ Հավանաբար դա էլ ազդել է գործերի վրա։ Որոշ ձեռնարկությունների (Հայէլեկտրաշարժիչների, սարքաշինական, շամպայն գինիների, կոնյակի գործարաններ, գինու կոմբինատ և այլն) ղեկավարները տեխնիկական առաջադիմության հետևողական արմատավորման միջոցով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և համախառն արտադրանքի ծավալն ավելացնելու փոխարեն, հեշտ ճանապարհ են բռնել՝ արտադրանքի ծավալն ավելացնում են աշխատող անձնակազմի աճի հաշվին։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը և դրա հետ կապված աշխատանքի արտադրողականության աճը պայմանավորված են, առաջին հերթին, աշխատաժամանակի ճիշտ, ռացիոնալ օգտագործմամբ։ Մեր քաղաքի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվներն աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպման արմատավորման, արտադրական կարգապահության և կոլեկտիվի անդամներին հանձնարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումով դաստիարակելու շնորհիվ, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործմամբ լավագույն արդյունքի են հասել։ Այս ձեռնարկությունների ղեկավարներն աշխատողների նկատմամբ ցուցաբերած հոգատարությունը զուգակցում են պահանջկոտության հետ։

Կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները պետք է զբաղվեն աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերով։ Կան ձեռնարկություններ, որտեղ մեծ չափերի է հասնում բանվորական ուժի հոսունությունը, դանդաղ են կրճատվում աշխատաժամանակի կորուստները։ Մի շարք գործարաններում և ֆաբրիկաններում աստիճանաբար մեծանում է տարեց բանվորների թիվը։ Պետք է հոգալ բանվորական կադրերի նոր հերթափոխի պատրաստման մասին։

Աշխատանքային ռեսուրսների մասսայական տեղաշարժի (գյուղատնտեսությունից արդյունաբերություն) շնորհիվ, անցյալում հեշտ էր լուծվում կադրերի պրոբլեմը։ Ներկայումս վիճակը փոխվել է։ Գյուղը չի կարող արդյունաբերությանը շատ աշխատող ձեռքեր տրամադրել։ Ուստի, արդյունաբերության համար նոր կադրերը պետք է գտնել քաղաքներում։

Երևանի ձեռնարկություններում պատշաճ ուշադրություն չի հատկացվում կադրերի հոսունությունը կանխելու գործին։ 1968 թ. քաղաքի արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ընդհանուր թվի 45,5 տոկոսն արտահոսել է։ Ընդ որում, համաձայն իրենց դիմումի, աշխատանքից ազատվել են 30.000 բանվոր, որը կազմում է ազատվածների 65 տոկոսը։



Այս երևույթը խիստ բացասաբար է անդրադարձել ձեռնարկությունների գործունեության վրա և վերջիններիս պատճառել մեծ վնասներ։ Լավագույն դեպքում, երբ բանվորը նոր է աշխատանքի կարգվում իր մասնագիտությամբ, առնվազն 1,5 ամիս դեռ ցածր է նրա աշխատանքի արտադրողականությունը, իսկ մասնագիտության փոփոխման դեպքում՝ այն իջնում է ավելի քան 6 ամսում։ Այդ առումով բարվոք վիճակում չեն հատկապես էլեկտրասարքատների (հոսունությունը՝ 50 տոկոս), կոմպրեսորների (69 տոկոս), ավտոդողերի (76 տոկոս), լուսատեխնիկական գործարանները (55 տոկոս), գինու կոմբինատը (53 տոկոս) և այլ ձեռնարկություններ։

Քաղաքի արդյունաբերության մեջ 1968 թ. աշխատաժամանակի կորուստը միայն լրիվօրյա պարապուրդների և գործալքումների հետևանքով կազմել է ամբողջ աշխատաժամանակի 2,5 տոկոսը։

Արտադրության արդյունավետությունը մեծապես պայմանավորված է արտադրության և աշխատանքի ռացիոնալ կազմակերպմամբ։ Այնտեղ, ուր հետևողականորեն ներդրվում են գիտության ու տեխնիկայի նվաճումները, արմատավորվում աշխատանքի գիտական կազմակերպումը, մշտապես ձեռք են բերվում տնտեսական բարձր ցուցանիշներ։ Երևանի արդյունաբերական ձեռնարկություններում գնալով ավելի է ընդլայնվում աշխատանքի գիտական կազմակերպումը։ Կուսակցության քաղաքային կոմիտեն ձգտում է, որ ԱԳԿ-ի միջոցառումները ընթանան կոմպլեքսային ձևով, ընդգրկեն աշխատանքի տեխնիկական, կազմակերպական, գեղագիտական և հոգեբանական բոլոր կողմերը։ Աշխատանքի գիտական կազմակերպման հետևողական արմատավորումը պահանջում է, որ նրա բոլոր տարրերը գտնվեն կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում և դրա արմատավորումն ընթանա այս կամ այն ձեռնարկության կոնկրետ պայմաններին համապատասխան։ Անհրաժեշտ է նշել, որ այդ գործում դեռևս կան լուրջ թերություններ, որի նկատմամբ ցուցաբերվում է ձևական մոտեցում, կուսկազմակերպությունները չեն հետևում այս բնագավառում պատշաճ կարգ ու կանոնի ստեղծմանը։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել աշխատանքի կարգապահության ամրապնդմանը. այն խախտողների, արտադրությունը կազմալուծողների շուրջ ստեղծել հասարակական անհանդուրժողական մթնոլորտ, նրանց վրա ներգործել նյութապես և բարոյապես։

Կուսկազմակերպությունները կենտրոնացնելով իրենց ուշադրությունը տեխնիկական առաջադիմության և արտադրության արդյունավետ բարձրացման կարևորագույն հարցերի վրա, պետք է հաշվի առնեն տեխնիկայի զարգացման արդի ձևերը, իրենց տեսադաշտում պահեն նաև արտադրության հրամանատարների ուսուցումը, բարձրացնեն բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ակտիվությունն արտադրական և հասարակական կյանքում։

Արտադրության ղեկավարման գործում ինքնուրույնության շրջանակների ընդլայնմամբ բարձրանում է պլանների կատարման պատասխանատվությունը։ Այդ կապակցությամբ բարդանում է կուսկազմակերպության վերահսկողությունը բոլոր օղակներում՝ սկսած ձեռնարկությունից մինչև գերատեսչությունն ու մինիստրությունը։

Ցավոք, հաճախ մինիստրությունը կամայականորեն խախտում է գոյություն ունեցող օրենքները և քամահրում կոլեկտիվների իրավունքները, փո-

խում է արտադրության իջեցված պլանը, երբեմն նույնիսկ չկարգավորելով, չհամամասնելով մյուս ցուցանիշները։ Նման վերաբերմունքը հակասում է պլանավորման նոր սկզբունքներին։ Այդպիսի պայմաններում տնտեսական ղեկավարները, իսկ երբեմն նաև կուսակցական կոմիտեները փոխանակ զբաղվելու արտադրության անմիջական կազմակերպման հարցերով, ժամանակ են վատնում ապացուցելու առաջադրանքի ոչ ռեալ լինելը։

Կուսկազմակերպությունները պետք է ուշադրությամբ ուսումնասիրեն ու ներդնեն տնտեսական ռեֆորմի առնչությամբ ձեռք բերված նորն ու առաջավորը, ընդհանրացնեն արդի պայմաններում կուսակցական աշխատանքի պրակտիկայում եղած առաջավոր փորձը։

Յուրաքանչյուր հիմնարկ-ձեռնարկության կուսկազմակերպություն պարտավոր է խիստ կարգ ու կանոն հաստատել տնտեսությունում, ճիշտ վարել հաշվառումն ու հաշվետվությունը, որևէ չափով չխախտել և չխեղաթյուրել այն, որը կկանխի հավելագրումները, պետական միջոցների և ունեցվածքի շռայլումներն ու հափշտակումները։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների գլխավոր խնդիրն է՝ սպառողների հարաճուն պահանջմունքները բավարարել բարձրորակ արտադրանքով։ Կուսկազմակերպությունները, գերատեսչությունների ու ձեռնարկությունների ղեկավարները պետք է խրախուսեն այն բոլոր նախաձեռնությունները, որոնք նպաստում են արտադրանքի որակի բարձրացմանը։ Դեռևս ցածր է ժողովրդական սպառման և տնտեսական գործածության ապրանքների որակը։ Չնայած այն բանին, որ մայրաքաղաքի թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունները զգալիորեն բարելավել են արտադրանքի որակը, սակայն ընդհանուր առմամբ այն չի բավարարում ազգաբնակչության օրավուր աճող պահանջմունքները։ Մեզ մոտ դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում սպառողների պահանջմունքների ուսումնասիրմանը և արտադրանքի համապատասխան տեսակների ու չափերի թողարկմանը։ Հատկապես մխիթարական չէ մանկական հագուստների և կոշկեղենի վիճակը։

Աշխատանքի նոր պայմաններում շահութաբերության բարձր մակարդակը մեծապես պայմանավորված է արտադրության արդյունավետությամբ։ Ինչպես վերը նշեցինք, նախորդ տարում ինքնարժեքի իջեցումից տնտեսվել է մոտ 4,7 մլն ռուբլի։ Սակայն թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում կան լուրջ թերություններ։ Անցյալ տարի 39 ձեռնարկություն (էլեկտրաշարժիչների, ժամացույցի, դեղագործական գործարաններ, կերամիկական իրերի կոմբինատ, «Հայգորգ» ֆիրմա, № 1 տպարան, № 3 տրեստի արտադրական կոմբինատ և այլն) չկատարեցին ինքնարժեքի իջեցման առաջադրանքը և 6 մլն ռուբլով ավելացան արտադրածախսերը։

Առանձին դեպքերում պլանավորման գործի նկատմամբ ցուցաբերվում է ոչ լուրջ մոտեցում. մանրամասն հաշվի չեն առնվում այս կամ այն ձեռնարկության հնարավորությունները, ռեզերվները։ Դրանով է բացատրվում այն, որ քաղաքում պլանավորված ոչ շահութաբեր 13 ձեռնարկություններից 6-ը գործել են շահույթով։

Խնայողության ռեժիմի կիրառմանը նպաստում է արտադրամասերի լրիվ տնտհաշվարկի անցնելը։ Շատ ձեռնարկություններում այս գործը թողնված է ինքնահոսի։ Նրանց ղեկավարները պետք է նախաձեռնություն ցուցաբերեն այս բնագավառում պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար։



Հարկավոր է, որ գիտահետազոտական հիմնարկություններն իրենց հերթին անհրաժեշտ օգնություն ցուցաբերեն նրանց նկատմամբ։

Հայաստանի գիտությունների ակադեմիայի տնտեսագիտական ինստիտուտի ակտիվ մասնակցությամբ, էլեկտրատեխնիկական գործարանի արտադրամասերն անցան լրիվ տնտհաշվարկի։

Երևանի աշխատավորների սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու գործում դժվար է թերագնահատել գիտահետազոտական կազմակերպությունների դերը։ Նրանց մեծ մասը սերտ կապերի մեջ է ձեռնարկությունների հետ։ Համատեղ լուծվում են տեխնիկական վերազինման խնդիրները, մշակվում և յուրացվում նոր արտադրատեսակների թողարկումը։ Բայց կան գիտահետազոտական հիմնարկություններ, որոնք թերանում են այդ գործում։

Վերջերս ՀԿԿ Երքաղկոմի բյուրոն անդրադարձավ քաղաքի մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտների, նախագծային կազմակերպությունների աշխատանքների արդյունավետության բարձրացման հարցերին։ Պարզվեց, որ նրանց աշխատանքի հիմնական թերությունն այն է, որ ուշադրություն չի նվիրվում տնտեսական արդյունավետության հարցերին և ժողովրդական տնտեսության մեջ ներդրվող տեխնիկայի կիրառմանը։ Բացառությամբ ՎՆԻԻԿԷ-ից, որտեղ ներդրված գիտական պրոբլեմների մշակումները կազմում են ընդհանուր մշակումների 65 տոկոսը, մյուս գիտահետազոտական կազմակերպություններում այդ աննշան է։ Այսպես, «Արմնիմաշում» այն կազմել է 1967 թ.՝ 20, 1968 թ.՝ 33 տոկոս, «Վնիիլտեկմաշում»՝ համապատասխանաբար՝ 18 և 40 տոկոս։

Վերոհիշյալ թվերը բավականին ցածր են միութենական առաջավոր գիտահետազոտական ինստիտուտների միջինից։ Օրինակ, Լենինգրադի ինստիտուտներում այս ցուցանիշը հասնում է 70—72 տոկոսի։ Պետք է ուժեղացնել գիտության և արտադրության կապը, դարձնել այն անմիջական և գործարար։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակն արժանավայել դիմավորելու համար քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում համաժողովրդական լայն մրցություն է ծավալվել։ Մինչև մեծ հոբելյանը մնացել է մեկ տարի։ Օրերս մայրաքաղաքի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատը, Հայէլեկտրալույս միավորումը, էլեկտրոն գործարանը՝ Վ. Ի. Լենինի հոբելյանական տարելիցը նշանավորելու համար պարտավորվեցին 1969 թ. պետական առաջադրանքները կատարել ժամկետից շուտ։ Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները, տնտեսական ղեկավարները պետք է գլխավորեն սկսված հայրենասիրական շարժումը և հասնեն այն բանին, որ նախատեսված ժամկետին կատարվեն պարտավորությունները։

Կուսկազմակերպությունները պետք է ավելի լավ գլխավորեն աշխատավորական լայն զանգվածների շրջանում առաջացած քաղաքական և արտադրական աննախընթաց վերելքը, հասնեն այն բանին, որ մայրաքաղաքի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը դիմավորեն պետական առաջադրանքները կատարած և ռեալ նախապայմաններ ստեղծեն հնգամյակը ժամկետից շուտ՝ 1970 թվականի նոյեմբերի 7-ին կատարելու համար։

Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ
ՀԿԿ Երքաղկոմի արդյունաբերության
և տրանսպորտի բաժնի վարիչ



# ՂԵԿԱՎԱՐԵԼ ԵՎ ՕԳՆԵԼ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

ՀԿԿ Գորիսի շրջկոմն իր ուշադրության կենտրոնում է պահում շրջանի կոմ-
երիտական կազմակերպության ղեկավարության, ամբողջ երիտասարդության
գաղափարական դաստիարակության հարցերը, մշակում և իրականացնում է
կոնկրետ միջոցառումներ՝ կոմերիտական կազմակերպությունների գործունեու-
թյան բարելավման համար։

Դրա շնորհիվ անհամեմատ բարձրացել է սկզբնական կոմերիտական կազ-
մակերպությունների մարտունակությունը, աշխուժացել ներմիութենական աշ-
խատանքը, զգալիորեն բարելավվել է կոմերիտականների և արտամիութենա-
կան երիտասարդության քաղաքական ու գաղափարական դաստիարակության
գործը։

Կոմերիտական կազմակերպությունների գործունեության բարելավմանը
մեծապես նպաստում են կուսակցական ղեկավար աշխատողների անձնական
շփումը կոմերիտական ղեկավար կադրերի և շարքային կոմերիտականների
հետ, նրանց անձնական մասնակցությունը կոմերիտական կազմակերպու-
թյունների գործունեությանը։ Կուսշրջկոմի քարտուղարները, անդամները և
բաժնի վարիչները, որպես կանոն, մասնակցում են ԼԿԵՄ շրջկոմի պլենումնե-
րին, կոմերիտական ակտիվի և առանձին կոմերիտական կազմակերպություն-
ների ժողովներին, գործնական օգնություն ցույց տալիս հարցերը ճիշտ լուծելու,
երիտասարդության ուժերի մոբիլիզացման ռեալ ուղիներ նշելու գործում։ Կուս-
շրջկոմի բյուրոն հատուկ որոշմամբ սկզբնական կուսկազմակերպություններին
ու նրանց քարտուղարներին ևս պարտավորեցրել է հաճախակի անդրադառնալ
կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը, խելացի ցուցումնե-
րով և ամենօրյա օգնությամբ նպաստել երիտասարդության աշխատանքային
խանդավառության բարձրացման, նրանց ամբողջ ուժերը հնգամյակի առա-
ջադրանքների անթերի կատարմանը նպատակամղելու վեհ գործին։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մեծ ուշադրու-
թյուն են նվիրում կոմերիտմիության մեջ կուսակցական կորիզի ուժեղացմանը,
ամենօրյա աշխատանքում հենվում են նրա վրա։ Այժմ կոմերիտական կազմա-
կերպությունների քարտուղարներից 25-ը կուսանդամ-թեկնածուներ են։

Ինչ խոսք, որ նշված միջոցառումները տալիս են ցանկալի արդյունք։ Ներ-
կայումս շրջանում կան ավելի քան 4700 կոմերիտական։ Նրանք միավորված
են 78 սկզբնական կազմակերպություններում, որոնց կեսից ավելին գտնվում
են գործարաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և այլն։ Դա



պատկառելի ուժ է, որի վրա հենվելով իրականացնում ենք շրջանի ամբողջ երի-
տասարդության քաղաքական դաստիարակությունը, պատշաճ ընթացք տալիս
նրա գործունեությանը։ Արտադրական ձեռնարկությունների, շինարարական
կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների շատ ու շատ
կոմերիտականներ շարունակում են իրենց աշխատանքային կենսագրությունը
հարստացնել խիզախումներով լի էջերով. նրանք նորանոր հաջողություններ են
ձեռք բերում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին ծավալված մրցու-
թյունում։

Մի քանի տարի է, ինչ հարյուրավոր կոմերիտականներ ու երիտասարդներ
անդամագրվել են Տաթևի հիդրոկայանի շինարարության ինտերնացիոնալ կո-
լեկտիվին ու իրենց չլապինդ բազուկներով, աննկուն կամքով սանձում են Որո-
տանը։ Այս կառույցի վրա անվանի թունելագործի համբավ է վաստակել կոմե-
րիտական Օնիկ Մաթևոսյանը։ Նա անդուլ ճեղքում է լեռների կուրծքը, սանտի-
մետր առ սանտիմետր մոտեցնում լույսի ճամփան։ Պատահում է, որ թունելի
առաստաղից կամ կողերից առատ ջրեր են պոռթկում, ողողում ստորգետնյա
ուղին, դժվարացնում գործը։ Բայց Օնիկը քաջաբար հաղթահարում է ստեղծ-
ված դժվարությունները, հորատման օրվա առաջադրանքը կատարում է 150—
160 տոկոսով։ Երկրորդ հանքամիջանցքի թունելագործները, որտեղ աշխատում
է Օ. Մաթևոսյանը, անցած տարվա դեկտեմբերի 25-ին փայլուն հաղթանակ
ձեռք բերին. ժամկետից մեկ ամիս շուտ միացվեցին 9750 մետր ընդհանուր եր-
կարությամբ առաջին և երկրորդ թունելախորշերը։

Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում իրենց արժանի ավանդն
են ներդնում ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամության թեկնածու, թունելագործ Վլադիկ
Զաքարյանը, կոմերիտականներ Անատոլի Կարպենկոն, Քամիլ Աբդուլազիմովը,
Յուրիկ Մարգարյանը և ուրիշներ։ Կոմերիտական հիդրոշինարարների եղբայ-
րական ընտանիքն աշխատում է հնգամյակի հարվածային կառույցը ժամկետից
շուտ շահագործման հանձնելու նշանաբանով։

Գորիսի փոքր էլեկտրաշարժիչների գործարանում են աշխատում 156 կոմե-
րիտական և երիտասարդ։ Նրանք ակտիվ մասնակցում են սոցիալիստական
մրցությանը, արտադրության մեջ ընթանում ավանգարդում, նպաստում գոր-
ծարանի առջև դրված խնդիրների հաջող լուծմանը։ Կոմերիտականների օգնու-
թյամբ 1968 թվականին կատարվել են աշխատանքի արտադրողականության ու
արտադրանքի որակի բարձրացման առաջադրանքները։

Լավ է աշխատում տրիկոտաժի ֆաբրիկայի կոմերիտական կազմակերպու-
թյունը։ ՀամԼԿԵՄ 50-ամյակի կապակցությամբ այստեղ ստեղծվել են լենին-
յան կոմերիտմիության անվան 2 բրիգադա, որոնց գլխավորում են կոմերիտա-
կաններ Հայկուշ Նարինյանը և Գրեզետա Հակոբյանը։ Բրիգադաների բոլոր ան-
դամներն աշխատում են «Միշտ լինել առաջին բնագծում» նշանաբանով և հաս-
նում գոհացուցիչ արդյունքների։ Նրանք անցած տարվա առաջադրանքը կա-
տարեցին ՍՍՀՄ սահմանադրության օրը՝ դեկտեմբերի 5-ին։

Աշխատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս նաև գյուղատնտեսու-
թյան բնագավառում աշխատող կոմերիտականներն ու երիտասարդները։ Նրանք
աշխատում են անասնապահական ֆերմաներում, այգիներում, հանրային դաշ-
տերում, իրենց անսպառ ուժն ու եռանդը նվիրաբերում գյուղատնտեսական
մթերքների արտադրության ավելացման նպատակին։ Անցյալ տարի կոմերի-
տական-երիտասարդական բրիգադաներ ստեղծվեցին Վերիշենի, Հարժիսի և
մյուս սովխոզներում, Տեղի, Կոռնիձորի, Քարահունջի, Խնածախի և այլ կոլ-

տնտեսություններում։ ՀԼԿԵՄ Գորիսի շրջկոմը և սկզբնական կոմերիտական կազմակերպություններն անհրաժեշտ օգնություն և ղեկավարություն են ցույց տալիս բրիգադներին։ Թեև 1968 թ. շրջանի գյուղատնտեսության համար անբարենպաստ տարի էր, կոմերիտական-երիտասարդական բրիգադները հաղթահարեցին բոլոր դժվարությունները, հաջողությամբ կատարեցին ստանձնած պարտավորությունները։

«Զանգեզուր» սովխոզում Մակեդոն Սարգսյանի և Յուրիկ Հայրապետյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադները 1968 թվականին 125 տոկոսով կատարեցին կերի կուտակման առաջադրանքները։ Նրանք գերակատարեցին նաև հացահատիկային կուլտուրաների բերքատվության պլանը և ստացան լրացուցիչ վարձատրություն։ Գոհացուցիչ արդյունքների հասան նաև շրջանի մյուս տնտեսությունների կոմերիտական-երիտասարդական բրիգադաները։ Անասնապահական մթերքների արտադրության ավելացման իրենց ստանձնած պարտավորությունները զգալիորեն գերազանցեցին Վոլոդյա Միքայելյանի (Վերիշեն), Մարգուշա Թադևոսյանի (Հարժիս), Մարտուն Հովսեփյանի (Խնձորեսկ) և շատ ուրիշների ղեկավարած բրիգադները։

Խրախուսելով կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությունը ժողովրդական տնտեսության զարգացման համար մղվող պայքարին, պաշտպանելով երիտասարդ բանվորների և գյուղացիների արտադրական նախաձեռնությունները, կուսշրջկոմը միաժամանակ մեծ նշանակություն է տալիս երիտասարդության քաղաքական լուսավորությանն ու գաղափարական դաստիարակությանը, որոնք եղել և մնում են կոմերիտական աշխատանքի հիմնական խնդիրը։ «Կոմերիտմիության պարտքն է, —ասված է ՀամԼԿԵՄ 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի հղած ողջույնի մեջ,— համառատակամություն ցուցաբերել, որպեսզի կոմերիտականները, բոլոր երիտասարդներն ու աղջիկները ստեղծագործաբար տիրապետեն մարքս-լենինյան տեսությունը, մշակեն դասակարգային ինքնագիտակցություն, իրենց մեջ կոմունիստական վերաբերմունք դաստիարակեն աշխատանքի ու սոցիալիստական սեփականության նկատմամբ, պրակտիկայում հմտորեն կիրառեն ստացած գիտելիքները»։

Կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումը, շրջկոմն ավելի ու ավելի մոտիկից է զբաղվում կոմերիտականների և երիտասարդության քաղաքական լուսավորության հարցերով։

Ընթացիկ տարում շրջանում գործում են կոմերիտական 50 քաղխմբակ, 2000 կոմերիտական և արտամիութենական ունկնդիրներով։ Բազմազան ;. քաղխմբակների թեմատիկան. «Մեր լենինյան կոմերիտմիությունը», «Լենինյան դասեր», «Երիտասարդությունը և հասարակական առաջընթացը» թեմաները և այլն։ Քաղուսուցման բոլոր միավորումներում առաջին պարապմունքները նվիրված էին Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակի նախապատրաստման և ՀամԼԿԵՄ 50-ամյակի հետ կապված խնդիրներին։

Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները կարևոր նշանակություն տալով կոմերիտականների քաղուսուցմանը, այն դիտում են որպես կուսակցական գաղափարական աշխատանքի բաղկացուցիչ մասը։ Կոմերիտական քաղլուսցանցի 50 պրոպագանդիստներից 45-ը կոմունիստներ են, որոնք ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ու պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ։

Կոմերիտական կազմակերպությունների գործունեության բարելավման և կոմերիտականների ու ամբողջ երիտասարդության քաղաքական ակտիվու-



թյան բարձրացման համար կարևոր իրադարձություն էր ՀամԼԿԵՄ 50-ամ-
յակը, որը նշվեց աշխատավորական լայն զանգվածների մասնակցությամբ։
Կազմակերպված ու գաղափարական բարձր մակարդակով անցկացվեցին հո-
բելյանին նվիրված կոմերիտական հանդիսավոր ժողովները, որտեղ զեկու-
ցումներով հանդես եկան կուսշրջկոմի անդամները, կոմերիտմիության վետե-
րանները։ Կուսակցական ակտիվի և ԼԿԵՄ շրջկոմի դասախոսական խմբի ան-
դամների ուժերով կարդացվեցին ավելի քան 60 դասախոսություններ և զե-
կուցումներ՝ նվիրված ՀամԼԿԵՄ 50-ամյակին։
Այժմ շրջանի կոմերիտական կազմակերպությունների առջև ծառացած է
ավելի մեծ ու պատասխանատու խնդիր։ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի
նախապատրաստության կապակցությամբ շրջանի կոմերիտական կազմակեր-
պությունը մշակել է աշխատանքի կոնկրետ պլան, որի կենսագործումը շատ
ջանքեր կպահանջի։ Այդ հոբելյանը արժանավայել դիմավորելու համար, շրր-
ջանի կոմերիտականներն ու երիտասարդներն ստանձնել են աշխատանքային
բարձր պարտավորություններ, որոնց կատարման նպատակով երիտասարդու-
թյան շրջանում ծավալվում է սոցիալիստական մրցություն. կանցկացվեն
«կոմերիտական լուսարձակ»-ի ստուգայցեր, կհավաքվի և պետությանը
կհանձնվի 100 տոննա մետաղի ջարդոն, կոնկրետ միջոցառումներ կիրակա-
նացվեն ներմիութենական աշխատանքի ուժեղացման և ամբողջ երիտասար-
դության քաղաքական ու ռազմա-հայրենասիրական դաստիարակության բա-
րելավման համար։ Կկազմակերպվեն բարեկամության երեկոներ, էքսկուրսիա՝
Իլյիչի ծննդավայրը։ Կուլտուրայի օջախներում կտեղծվեն լենինյան սրահներ
և թանգարաններ, անհրաժեշտ միջոցներ կձեռնարկվեն երիտասարդության
կուլտուրական հանգստի և ուրախ ժամանցի համար։
Շրջանային կուսկազմակերպությանն առանձնապես շատ են մտահոգում
երիտասարդության ֆիզիկական դաստիարակության հարցերը։ Այդ ասպարե-
զում մենք դեռևս լուրջ թերություններ ունենք։ Նույնիսկ Գորիս քաղաքում չկա
սպորտային հրապարակ իր ամբողջ կոմպլեքսով, երիտասարդությանը չեն
բավարարում մարզադահլիճները։ Դրությունն ավելի վատ է գյուղերում, որ-
տեղ առանձին տնտեսական ղեկավարներ նույնիսկ համեստ պայմաններ չեն
ստեղծում մասսայական սպորտի համար։
Իհարկե, սպորտային շենքերի կառուցումը հրատապ հարց է, սակայն դա
լոկ ցանկությամբ լուծել չի կարելի։ Պահանջվում են միջոցներ և ժամանակ։
Շուտով Գորիսում կսկսվի նոր ստադիոնի կառուցումը, որի նախագիծն ար-
դեն հաստատված է։ Սպորտային այդ նոր կառույցի կոմպլեքսը կունենա
ֆուտբոլային դաշտ՝ 5 հազար տեղանոց, վարժությունների դահլիճներ և այլն։
Քաղաքում կառուցվել են բասկետբոլի և վոլեյբոլի հրապարակներ, շուտով
շահագործման կհանձնվեն արհեստական լճերն ու ջրավազանը, որտեղ երի-
տասարդությունը կտիրապետի ջրային սպորտի ձևերին։
Ընթացիկ հնգամյակի վերջին երկու տարում և դրան հաջորդող հնգամ-
յակում շրջանում կկառուցվեն սպորտային մի շարք բազաներ։ Կանցնի ըն-
դամենը երկու—երեք տարի և Գորիսի երիտասարդությունը կունենա աշխա-
տանքի ու կուլտուրական հանգստի կազմակերպման բոլոր անհրաժեշտ հնա-
րավորությունները։

Գ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿԿ Գորիսի շրջկոմի քարտուղար



Արտավազդ Աղամյանի հետ: Նրանք սկզբից կտրեցին զինվորի մատները, ապա մարմնի վրա շիկացած երկաթով աստղեր փորեցին»:

«Տանկիստ Արամայիս Բաբայանը գերի ընկավ: Նա դիմադրում էր գերմանացիներին: Ֆաշիստները նրան բռնեցին, վրան բենզին լցրին և այրեցին»...

*Թռուցիկն ավարտվում է հետևյալ խոսքերով՝* «Հայ մարտիկներ, ատեցեք թշնամուն ձեր հոգու ամբողջ ուժով, թող այդ ատելությունը ձեր կրծքերը դարձնի պողպատակուռ զրահ, ձեր բազուկներին տա անսպառ կարողություն: Թող նոր ուժով վերակենդանանա ձեր մեջ մեր քաջ նախնիների խիզախությունը»...

*1942 թ. աշնանը Կովկասի հերոսական պաշտպանների դիրքերում տարածվեց հրապարակախոսի բոցաշունչ գրչով գրված հայերեն մի թռուցիկ, որի նշանակությունը դժվար է գերագնահատել: Այն նվիրված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 25-ամյակին (տե՛ս նույն տեղը, ֆ. Ա, № 4 (1986): Այս փաստաթուղթը գրված է հարց ու պատասխանի ձևով: Թռուցիկի սուղ էջերում, լակոնիկ ու պարզ ոճով հանրագումարի են բերված հայ ժողովրդի ձեռք բերած աննախընթաց նվաճումները սովետական իշխանության տարիներին: Պատմելով հանրապետության աշխատավորների հաջողությունների մասին, թռուցիկը դիմում է մարտիկներին.*

«Դու հիշո՞ւմ ես, թե ինչպես էր քաղքանդ եղել մեր Հայաստանը համաշխարհային առաջին պատերազմից հետո: Մեզնից շատերը որբ, քաղցած ու անտուն գաղթականներ էին դարձել: Ո՞վ փրկեց հայ ժողովրդին ֆիզիկական բնաջնջումից: Սովետական իշխանությունը: Ո՞վ կառուցեց գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ ու ջրանցքներ, բարձրագույն ուսումնական հաստատություններ, հիվանդանոցներ, կուլտուրայի օջախներ, ո՞վ Հայաստանի գյուղերին ու քաղաքներին տվեց էլեկտրական լույս: Սովետական իշխանությունը»:

*Բերելով փաստերը, թռուցիկը դրանք հակադրում է գերմանական զավթիչների նպատակներին, բացահայտում նրանց ստրկացնող ու կեղեքող ծրագրերը:*

«Ո՞վ է ուզում մեզնից խլել մեր թանկագին գանձերը՝ մեր կյանքը, ազատությունը, մեր սովետական իշխանությունը, մեր ծաղկած այգիները, ստրուկ դարձնել մեր կանանց ու երեխաներին: Գերմանական ֆաշիզմը»: *Ապա մարտիկների առջև խնդիր է դրվում՝* «Հայ ընկեր, անխնա եղիր դեպի թշնամին, արդարացրու ժողովրդի վստահությունը, ժողովուրդը նզովում է վախկոտներին ու փոքրոգիներին: Ժողովուրդն իր երգերում փառաբանում է իր հավատարիմ ու պանծալի որդիներին: Եղիր կայուն ու համարձակ, ինչպես Դավիթ Բեկը, քաջ Աղասին, ինչպես քաղաքացիական կռիվների հերոս Ղուկաս Ղուկասյանը, եղիր խիզախ, ինչպես Հայրենական պատերազմի հերոսներ Ստեփանյանը, Պետրոսյանը, Ղազարյանը և Օհանովը, թշնամուն ոչնչացրու դիպուկ գնդակով, սվինով ու նռնակով»...

*Թռուցիկների մի զգալի մասը նվիրված է մարտիկների սխրագործությունների լուսաբանմանը: Դրանք փաստորեն, փոքրիկ ակնարկներ են, որ գրվել են անմիջապես կատարված խիզախության օրերին, կամ հետո, լույս են տեսել ռազմի դաշտում և տարածվել ստորաբաժանումներում: Եթե ռազմաճակատային թերթերը հնարավորություն չունեին օպերատիվ ձևով մարտիկներին հաղորդելու օրվա իրադարձություններից առանձին դրվագներ, թռուցիկի միջոցով էր կատարվում այդ կարևոր և պատասխանատու գործը: Այսպիսի պայմաններում են լույս տեսել, օրինակ, «Սովետական Միության հերոս Ղուկաս Մադոյան» թռուցիկ-ակնարկը հերոսի դիմանկարով (տե՛ս նույն տեղը, ֆ. Ա, № 4 (513): Սա առաջին փաստաթուղթն էր նրա մասին: Հետագա ամիսներին և տարիներին շատ է գրվել Ղ. Մադոյանի մասին, սակայն բոլոր հեղինակներն էլ որպես սկզբնաղբյուր, օգտագործել են վերոհիշյալ թռուցիկը:*

*1943 թ. փետրվարի դաժան օրերն էին: Թեպետ պատերազմի ընթացքում արդեն սկսվել էր բեկումը, թշնամին զգացել էր սովետական բանակի ջախջախիչ հարվածների ուժը, հակառակորդը մեծ զոհերի գնով շարունակում էր դիմադրել, չէր ցանկանում զիջել իր գրաված դիրքերը: Մի խումբ խիզախներ՝ ավագ լեյտենանտ Ղուկաս Մադոյանի գլխավորությամբ գիշերով ներխուժեցին Ռոստով քաղաքի երկաթուղային կայարանը: Դաժան ու անհավասար մարտեր ծավալվեցին: Յոթ օր շարունակ Մադոյանն ու իր մարտիկները կենաց ու մահու կռիվ էին մղում: Այդ օրերին սովետական ռազմիկները 50 անգամ ետ մղեցին հակառակորդի կատաղի գրոհը:*

«Հայ ռազմիկներ,— կարդում ենք թռուցիկում,— օրինակ վերցրեք մեր փառապանծ հայրենակցից՝ Սովետական Միության հերոս Ղուկաս Մադոյանից: Վտարեք թշնամուն մեր սրբազան հողից»...

*Այժմ էլ հուզմունքով է կարդացվում Սովետական Միության հերոս Հունան Ավետիսյանին նվիրված թռուցիկ-ակնարկը: Այն գրվել է կատարված հերոսությունից ավելի ուշ՝ 1944 թ. մայիսի վերջերին, երբ հրապարակվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ Հունան Ավետիսյանին Սովետական Միության հերոսի կոչում շնորհելու մասին: Ակնարկի սեղմ տողերը պատմում են մի մարդու մասին, որը գիտակցաբար կրծքով ծածկեց թշնամու հրակնատը ընկերների առաջխաղացումն ապահովելու և հայրենիքի հանդեպ ունեցած իր պարտքը մինչև վերջ կատարելու համար:*

*Թաման թերակղզու համար մղած կատաղի մարտերի օրերին Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի ռազմական խորհուրդը հատուկ հեռագրով դիմեց հայկական 89-րդ դիվիզիայի անձնակազմին: Այդ փաստաթղթում ասված է.*

«Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի զորքերի հաղթական շարքում 89-րդ հայկական հրաձգային դիվիզիան գրավեց իր լավագույն տեղը և բոլոր զորքերի հետ միասին արիաբար մարտեր է մղում ատելի թշնամու դեմ: Հիանալի առիթ է ստեղծված ձեզ համար՝ հարվածել ու ոչնչացնել թշնամուն և դրանով իսկ փառքով պսակել ձեր հարազատ հայկական դիվիզիան, դրա հետ միասին ամբողջ հայ ժողովրդին:

...Դիմելով ձեզ և հիշեցնելով ձեզ այդ մասին ռազմաճակատի ռազմական խորհուրդը կոչ է անում՝ լարել բոլոր ուժերը, լիովին հանդես բերել ձեր արիությունն ու քաջությունը և կատարել ձեր խնդիրը՝ ոչնչացնել թշնամուն, առաջինը մտնել Թաման քաղաքն ու նավահանգիստը, այդպիսով արժանավայել կերպով ստանալ 89-րդ հայկական Թամանյան դիվիզիա կոչումը»:

*Այս հեռագիրը դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթի խմբագրությունում բազմացվեց և տարածվեց որպես առանձին թռուցիկ: Այն մարտական սխրագործությունների կոչեց հայ ռազմիկներին, և հոկտեմբերի 9-ին Թամանը վերջնականապես ազատագրվեց:*

*1943 թ. նոյեմբերի 8-ի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով սահմանվեց նոր շքանշան՝ «Փառքի շքանշան»: Այդ առթիվ անմիջապես լույս տեսավ հատուկ թռուցիկ, որի մեջ ասվում էր.*

«Կարմիր բանակի անվեհեր, արի ու խիզախ մարտիկների համար մեր կառավարությունը սահմանել է մի նոր շքանշան՝ «Փառքի շքանշան»-ը: Ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ հպարտ անուն ունի այդ շքանշանը՝ փառք: Որպիսի՜ օրինական հպարտություն պիտի զգա սովետական այն ռազմիկը, որի կուրծքը զարդարում էր փառքի շքանշանը» *(տե՛ս նույն տեղը, ֆ. Ա, № 4 (1976):*

*Թռուցիկը կարդացող հայ մարտիկը տեսնում էր, որ սովետական կառավարությունը բարձր է գնահատում իր քաջագործությունները:*

*Այս թեմային նվիրված երկրորդ հայերեն թռուցիկն արդեն գրված է «Փառքի շքանշան»-ի կավալեր, սակրավոր սերժանտ Գեորգի Իսրայելյանի մասին (տե՛ս նույն տեղը, ֆ. Ա, № 4 (21406):*

«Ստանալով առաջադրանք,— ասված է թռուցիկում,— սակրավորների խումբը Գ. Իսրայելյանի ղեկավարությամբ գնաց «լեզու» բերելու: Աննկատելիորեն անցնելով թշնամու սարքած ամեն տեսակի թակարդներից, ռազմիկները հասան հակառակորդի ԴԶՕՏ-ին: Իբրև նվեր թշնամու գլխին տեղացին նռնակներ: Վերադառնալով նրանք իրենց հետ բերեցին երեք «լեզու»: Առաջադրանքը օրինակելիորեն կատարելու համար սերժանտ Գեորգի Իսրայելյանը պարգևատրվեց «Փառքի շքանշան»-ով: Նա «Փառքի շքանշան»-ի առաջին հայ կավալերն է»:

*Նման թռուցիկներ են նվիրվել ո՛չ միայն Սովետական Միության հայազգի հերոսներին և «Փառքի շքանշան»-ի կավալերներին, այլև եղբայրական մյուս ժողովուրդների զավակներին:*

*Ռազմաճակատում իրենց անգնահատելի գործը կատարեցին նաև հայերեն թռուցիկ-հուշաթերթիկները: Գաղտնիք չէ, որ սովետական բանակի շարքերում մարտնչում էին ո՛չ միայն ռազմի բովով անցած հմուտ զինվորականները, այլև ռազմական գործին քիչ ծանոթ կամ բոլորովին անփորձ մարդիկ: Հարկավոր էր նրանց սովորեցնել, նախապատրաստել մարտերի, իսկ հաճախ դրա համար ժամանակ չկար: Եվ ահա, այդպիսի պահերին նրանց օգնության էին հասնում թռուցիկ-հուշաթերթիկները՝ նվիրված ռազմական գործի ամենատարբեր հարցերին: Մարտից ազատ պահերին, դիրքերում զինվորը կարդում էր դրանք և ձեռք բերում անհրաժեշտ գիտելիքներ: Այդ թռուցիկները նրան սովորեցնում էին խրամատավորվելու, հրացանից, նռնակներից, գնդացրից օգտվելու ձևերը, թշնամու տանկերի, ինքնաթիռների դեմ պայքարի միջոցները...*

*Այս հուշաթերթիկների լույս ընծայման գործում մեծ աշխատանք է կատարել պրոֆեսոր Ա. Արշարունին: Նա է այդ նյութերի զգալի մասը թարգմանել և խմբագրել:*

*Հայրենական մեծ պատերազմի տարիներին տպագիր պրոպագանդայի մյուս օրգանների հետ մեկտեղ թռուցիկները՝ մեր արդար գործի այդ ամենաշարժուն մասնիկները գնդակի արագությամբ տեղ էին հասնում և կատարում կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի պատվիրանները: Բոլշևիկյան ճշմարտացի և հատու խոսքը ռազմիկները վերածում էին գործի և կռում մեր հաղթանակը:*

Մ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՇԱՀՈՒՅԹԸ՝ ՏՆՏՀԱՇՎԱՐԿԻ ԽԹԱՆ

Տնտեսական նոր ռեֆորմը տնտհաշվարկի ամրապնդման, ֆինանսական միջոցների բաշխման և օգտագործման նպատակով, անհրաժեշտ դարձրեց նաև շահույթի բաշխման ու օգտագործման նախկին սիստեմը նորով փոխարինելը: Շահույթի բաշխման նոր կարգն արտացոլում է ինչպես ձեռնարկության, պետական բյուջեի, այնպես էլ կոլեկտիվի շահերը: Ֆ. Էնգելսը նշել է, որ արտադրության կարգացմանը խթանում է բաշխման այն եղանակը, որը հնարավորություն է ընձեռում հասարակության բոլոր անդամներին որքան հնարավոր է արագ և բազմակողմանի հանդես բերել ու զարգացնել իրենց ընդունակությունները:

Շահույթն այն ժամանակ կարող է լիարժեք բավարարել տնտհաշվարկի պահանջները, երբ՝ 1) ժողովրդական տնտեսության պլանավորման միջոցով, շահույթի բաշխման և օգտագործման ձևում միմյանց զուգակցվեն հասարակության բոլոր անդամների նյութական և բարոյական շահագրգռվածության սկզբունքները. 2) ձեռնարկության մեծածախ գները հիմնավորված են և հնարավորին չափով մոտեցված այդ արտադրանքի արտադրության հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումների մակարդակին և 3) շահույթի պլանավորումը, բաշխումն ու օգտագործումը կատարվում է գիտականորեն:

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումներում նշվեց, որ ժողովրդական տնտեսության արտադրական և սպառման պահանջները բավարարելու համար անհրաժեշտ է զուգակցել արտադրանքի իրացման և շահույթի պլանների կատարումը: Իրագործելով կուսակցության Կենտկոմի պլենումի որոշումը, մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններն այս բնագավառում որոշակի հաջողությունների են հասել: Այսպես, Հայկական ՍՍՀ ամբողջ արդյունաբերությունը 1968 թ. 9 ամսվա ընթացքում իրացման պլանը կատարել է 102,6, իսկ 1967 թ. նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ 112,3 տոկոսով, այդ թվում՝ միութենական ենթակայության արդյունաբերությունը՝ համապատասխանաբար 101,5 և 121,0 տոկոսով: Մեքենաշինության և մետաղամշակման ճյուղը 1968 թ. 9 ամսվա ընթացքում իրացման պլանը կատարել է 101,2, 1967 թ. այդ նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ 122,7 տոկոսով, կամ 1967 թ. 9 ամսվա համեմատ մի քանի տասնյակ *մլն* ռուբլով ավելի արտադրանք է իրացրել: Բերված տվյալները ցույց են տալիս, որ տարեցտարի ավելանում է արտադրանքի իրացման ծավալը:

Սակայն պետք է նշել, որ առանձին ձեռնարկություններ չեն ապահովում արտադրանքի իրացման առաջադրանքների կատարումը:



Օրինակ, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը 1968 թ. հունվարից անցավ նոր սիստեմին և 9 ամսվա իրացման պլանը կատարեց 101,9 տոկոսով, կամ 1967 թ. համեմատությամբ 35,2 *մլն* ռուբլի ավելի արտադրանք իրացրեց: Սակայն այդ ճյուղի 22 ձեռնարկություններից 9-ը իրացման պլանը չկատարեցին 2,8 *մլն* ռուբլով, այդ թվում Երևանի էլեկտրաշարժիչների գործարանը՝ 925, Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը՝ 940 հազար ռուբլով և այլն:

Հաստոցաշինական և գործիքաշինական ճյուղը 1968 թ. 9 ամսվա իրացման պլանը կատարեց 101,6, իսկ 1967 թ. նույն ժամամանակամիջոցի համեմատությամբ՝ 119,2 տոկոսով: Սակայն Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանն այդ պլանը թերակատարեց 175, իսկ Լենինականի հղկման հաստոցների գործարանը՝ 470 հազար ռուբլով:

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության ճյուղի նշված ձեռնարկություններում իրացման պլանի թերակատարման պատճառներից մեկն այն է, որ 1967 թ. համեմատությամբ, 1968 թ. 9 ամսվա ընթացքում, կրճատվել է արտադրանքի կարևոր տեսակների թողարկումը:

Անցյալ տարվա 9 ամսում հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններից Հայէլեկտրագործարանն արտադրանքի իրացման պլանը կատարել է 103,4, էլեկտրալամպերինը՝ 103,7, Երևանի կաբելինը՝ 101,2, Կամոյի կաբելինը՝ 106,2, Լենինականի միկրոշարժիչներինը՝ 100,9 տոկոսով: Ինչպես տեսնում ենք, պլանի կատարողականը տատանվում է 101—106 տոկոսի սահմաններում: Հաստոցաշինության և գործիքաշինության ճյուղերում այն 101—106 տոկոս է, իսկ սարքաշինության մեջ՝ 101—104 տոկոս: Սակայն էլեկտրատեխնիկական արդյունաբերության որոշ ձեռնարկություններ իրացման պլանը կատարելով հանդերձ, շահույթի պլանը չեն կատարել, իսկ որոշ ձեռնարկություններ գերակատարել են: Չնայած Հայէլեկտրագործարանը 1968 թ. 9 ամսվա ընթացքում իսկայական աշխատանք է կատարել նոր տեխնիկայի ներդրման, օգտագործվող թանկարժեք նյութերն ավելի էժան և որակյալ նյութերով փոխարինելու, տեխնիկական մի շարք միջոցառումների ներդրման ուղղությամբ, սակայն շահույթի պլանը կատարել է 92 տոկոսով (իրացմանը՝ 103,4 տոկոսով):

Շահույթի պլանի կատարման վրա ազդող գործոնների մի մասը պայմանավորված չէ ձեռնարկության տնտեսական գործունեությամբ: Օրինակ, 1967 թ. հուլիսի 1-ից մեծածախ գների փոփոխությունը, իսկ մյուս մասը անմիջականորեն կախում ունեն ձեռնարկության արտադրա-տնտեսական գործունեությունից:

Հայէլեկտրագործարանը շահույթի պլանը թերակատարել է մեկ ռուբլի ապրանքային արտադրանքի արտադրության վրա կատարած (պլանային ծախսերի համեմատությամբ) փաստացի ծախսերի ավելացման հետևանքով: Օրինակ, գործարանի 19-րդ արտադրամասը 9 ամսվա ընթացքում 207,8 տոննա էլեկտրատեխնիկական (տրանսֆորմատորների) պողպատի գերածախս է ունեցել, իսկ 10-րդ արտադրամասը՝ 51,7 տոննա: Եթե մետաղի գերածախս չլիներ, գործարանը կստանար 178,4 հազար ռուբլի շահույթ: Բացի այդ, գործարանը վճարել է 222 հազար ռուբլի տուգանք, որը նույնպես ազդել է շահույթի պլանի կատարման վրա:

Շահույթից գոյացած նյութական խրախուսման ֆոնդին տարեկան պլանի 1711 հազար ռուբլու փոխարեն, 9 ամսվա փաստացին կազմեց 576 հազար, սո-

ցիալ-կուլտուրական միջոցառումների և արտադրության զարգացման ֆոնդերը, համապատասխանաբար՝ 618, 273,0 հազար ռուբլի և 435,0, 246,0 հազար ռուբլի: Գործարանի ֆինանսական վիճակը բարելավելու համար պետք է հատուկ ուշադրություն նվիրել ինչպես մի շարք հարցերի, այնպես էլ նյութերի ծախսման հաշվարկի վրա. դրա համար անհրաժեշտ է բարելավել հիմնական արտադրամասերի պահեստային տնտեսության վիճակը:

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի դիրեկտոր Վ. Պարոնիկյանի, գլխավոր տնտեսագետ Մ. Խուրշուդյանի և տնտեսական գիտությունների թեկնածու Վ. Ա. Քոթանյանի նախաձեռնությամբ մշակվել են ներգործարանային տնտհաշվարկի անցման կանոններ, ուր շարադրված են ներգործարանային պլանավորման հարցերը:

Ներգործարանային տնտհաշվարկը մեծ չափով նպաստեց գործարանի պլանային առաջադրանքների կատարմանը: 1968 թ. 9 ամսվա իրացման պլանը գործարանը կատարեց 102,6, իսկ 1967 թ. նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ 108,4 տոկոսով: Շահույթի պլանն այդ ժամանակաշրջանում կատարվեց 106,6, իսկ նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, նույնպես գերակատարվեց: Անհրաժեշտ է նշել, որ գործարանը նոր սիստեմին անցնելիս ավելացրեց շահույթի պլանը: Եթե 1967 թ. բալանսային փաստացի շահույթը կազմել էր 1082 հազար ռուբլի, ապա 1968 թ. պլանային բալանսայինը՝ 1893 հազար, որից 9 ամսվա պլանը՝ 1428, իսկ փաստացին՝ 1523 հազար: Ինչպես հայտնի է, թե՛ նախորդ և թե՛ պլանային տարվա շահույթի պլանի գերակատարման վրա նշանակալի ազդեցություն է ունեցել նաև 1967 թ. հունվար—հուլիս ամիսների գների փոփոխությունը: Սակայն գործարանն զգալի աշխատանք է կատարել արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ: Օրինակ, վերանայվել և կրճատվել են օգտագործվող հիմնական նյութերի նորմաները. ավտոմատ հաստոցների ներդրմամբ ավտոմատացվեց էլեկտրաշարժիչների ստատորների մշակումը, որի շնորհիվ նշանակալի չափով կրճատվեց տվյալ արտադրանքի համար նորմավորված աշխատավարձը: Մի շարք միջոցառումների իրագործմամբ 9 ամսվա ընթացքում թողարկված 1 ռ. ապրանքային արտադրանքի ինքնարժեքը պլանով սահմանված 81,9 կոպեկից իջել է 80,2-ի: Ապրանքային արտադրանքի շահույթը, պլանով նախատեսված 1343 հազար ռուբլու փոխարեն, կազմեց 1490,5 հազար: Միայն ինքնարժեքի իջեցմամբ և լրացուցիչ արտադրանքի թողարկմամբ գերպլանային շահույթը կազմեց 147,5 հազար ռուբլի: Այսպիսով, ինքնարժեքի իջեցման և շահույթի ավելացման շնորհիվ բարձրացավ արտադրության հաշվարկային շահութաբերության մակարդակը (25,2 տոկոսից հասավ 27,3-ի):

Շահութաբերության բարձրացմանը նպաստում է նաև հիմնական ֆոնդերի արժեքի ծավալի կրճատումը, որը մի կողմից՝ բարձրացնում է շահութաբերության մակարդակը, մյուս կողմից՝ պակասեցնում ֆոնդավճարի գումարը: Հաշվի առնելով այս, գործարանը տարվա ընթացքում դուրս գրեց հիմնական ֆոնդերի ավելցուկային մասը:

Շահութաբերությունը բարձրացնելու գործում վճռական դեր է խաղում նաև հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման աստիճանը, որը մեքենաշինության որոշ ձեռնարկություններում այնքան էլ բարվոք չէ. 1967 թ. ուսումնասիրությունները ցույց են տվել, որ մեքենաշինական ձեռնարկությունների մետաղամշակման սարքավորումների 85 տոկոսն է գործել, իսկ դրանց հերթափոխության գործակիցը կազմել է 1,35: Տեխնիկայի թերբեռնվածության,



հետևաբար և անարդյունավետ օգտագործման հիմնական պատճառներից են որակյալ բանվորների պակասը: Այս պատճառով, Արտաշատի փորձնական գործիքաշինական գործարանում հաստոցների 54,5 տոկոսը օրվա ընթացքում չեն աշխատել, Հայէլեկտրագործարանում՝ 56, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում՝ 47,9 տոկոսը: Միայն նյութատեխնիկական անբավարար մատակարարման պատճառով Լենինականի միկրոշարժիչների գործարանում օրվա ընթացքում չեն աշխատել հաստոցների 41,4, էլեկտրատեխնիկականում՝ 42,8 և Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում՝ 45 տոկոսը:

Մինչև 1965 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումները շահույթը չէր դիտվում որպես տնտեսության գործունեությունը գնահատող ցուցանիշ և դրանից ձեռնարկության ֆոնդին կատարվող հատկացումները էական դեր չէին խաղում: Պարգևատրումների հիմնական աղբյուրը ո՛չ թե շահույթի գումարն էր, այլ աշխատավարձի ֆոնդի խնայողությունը: Եթե 1964 թ. ՍՍՀՄ պարգևատրման ֆոնդը կազմում էր ամբողջ շահույթի 4,5 տոկոսը, ապա տնտեսական ռեֆորմից հետո (1968 թ.)՝ 6,7 տոկոս էր: Եթե նյութական խթանման ֆոնդերի գումարը շահույթի մեջ 1966 թ. 7 տոկոս էր, ապա 1967 թ. հասավ 11 տոկոսի: 1968 թ. հունվարից Միության մեջ նոր սիստեմով աշխատում են ավելի քան 7 հազար ձեռնարկություն, որոնց արտադրանքը կազմում է երկրի ամբողջ արտադրանքի 40 տոկոսը, իսկ նրանց շահույթը՝ ամբողջ շահույթի 50 տոկոսը: Այդ ձեռնարկություններից են նաև Հայաստանի մեքենաշինական գործարանները: Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը, շահույթի պլանը 9 ամսվա ընթացքում կատարելուց հետո, ժամանակին առանձնացրեց նաև շահույթից բյուջեին հատկացվող գումարները (ֆոնդավճարը և վարկի տոկոսը) և նյութական խթանման ֆոնդ ստեղծեց: Գործարանը խրախուսման ֆոնդին հատկացրեց 144,8 հազար ռուբլի, պլանով նախատեսված 134 հազար ռուբլու փոխարեն, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և արտադրության զարգացման ֆոնդերին՝ համապատասխանաբար 38, 52,2, 51, 51,6 հազար ռուբլի:

1967 թ. նոր սիստեմին անցած Լենինականի անալիտիկ գործիքների փորձնական գործարանը գերակատարեց իրացումից ստացած շահույթի պլանը, իսկ խրախուսման ֆոնդը, պլանով նախատեսված 99 հազար ռուբլու փոխարեն, կազմեց 125 հազար, սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը՝ 24 հազար, իսկ արտադրության զարգացմանը՝ 15 հազար ռուբլի: Այս գործարանի հաշվարկային շահութաբերության մակարդակը պլանով սահմանված 43,3 տոկոսի փոխարեն կազմեց (փաստացին) 46,1 տոկոս:

Ինչպես տեսնում ենք, շահույթի բաշխման և օգտագործման նոր կարգը բարձրացնում է շահույթի դերը տնտհաշվարկային սիստեմում:

Այսպիսով, որպես արտադրության արդյունավետության չափանիշ, տընտհաշվարկային սիստեմում շահույթն ավելի մեծ չափով է օգտագործվում: Անմիջական կապ է ստեղծվում ստացված շահույթի ինչպես բացարձակ մեծության, այնպես էլ դրա աճի և ձեռնարկության կոլեկտիվի նյութական խթանման ֆոնդերի միջև: Եվ, վերջապես, տնտեսական խթանման պրոցեսում շահույթի դերն արտահայտվում է պլանով սահմանված արտադրանքի յուրաքանչյուր տեսակի կատարողականի մեջ:

Ա. Խ. ՆԱԶԱՐՅԱՆ



# ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒՄԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ

Տնտեսական նոր ռեֆորմի պայմաններում նյութատեխնիկական մատակարարման մարմինները կոչված են ձեռնարկությունների և շինարարական կազմակերպությունների համար հայթայթելու բարձր արտադրողականություն ունեցող հաստոցներ ու սարքեր, նորագույն ու շահավետ հումք և օժանդակ նյութեր։ Նրանց խնդիրն է՝ միաժամանակ ներգործել արդյունաբերական ձեռնարկությունների վրա թողարկելու այդպիսիք։ Փորձը ցույց է տալիս, որ ժամանակակից տեխնիկան ու մեխանիզմները, առաջնակարգ հումքն ու նյութերը լայն մասշտաբներով օգտագործելը հնարավորություն են տալիս հաջողությամբ իրագործելու հնգամյակի առաջադրանքները։

Սովետական Միությունում, վերջին ժամանակաշրջանում, մեծ քայլ է կատարված տեխնիկական առաջադիմության բնագավառում։ Այդ ցայտուն կերպով դրսևորվում է նաև մեր հանրապետությունում։ ՀՍՍՀ մեքենաշինության արտադրա-արդյունաբերական հիմնական ֆոնդերը վերջին տասը տարվա ընթացքում աճել են ավելի քան 4 անգամ։ Մեքենաշինության մեջ բնորոշ են առաջադիմական փոփոխությունները մետաղահատ սարքավորումների տարիքակազմում։ 1962 թ. անցկացված սարքավորումների վերջին հաշվեհամարի տվյալների համաձայն, 1958—62 թթ. տասը տարուց պակաս օգտագործված մետաղահատ հաստոցների տեսակարար կշիռը (հաստոցների ընդհանուր կազմում) 62,3-ից բարձրացել է 78,8 տոկոսի, 10—20 տարվա օգտագործվածները՝ 26,9-ից իջել է 13,3 տոկոսի։ Իսկ 20 տարուց ավելի օգտագործվածները, համապատասխանաբար՝ 10,8-ից 7,9 տոկոսի։ Սակայն տարիքակազմը, ինքնըստինքյան, կարող է ոչ ճիշտ արտացոլել նորագույն տեխնիկայի աստիճանը։ Հայտնի է, որ տեխնիկական առաջադիմության ժամանակակից պահանջների պայմաններում սարքավորումները երբեմն հնանում են տասը տարուց ավելի շուտ։ Դրա համար մեծ ուշադրություն է նվիրվում հնացած հաստոցները արտադրությունից հանելու և թողարկելու տեխնիկա-տնտեսական և շահագործական բարձր հատկություններ ունեցող մեքենաներ։

Նյութատեխնիկական մատակարարման կազմակերպությունները կոչված են ներազդելու ձեռնարկությունների վրա, որպեսզի դրանք լավագույն սարքավորումներ արտադրեն։ Նրանց հիմնական խնդիրներից մեկն էլ այն է, որ նրանք ճիշտ պլանավորեն և բաշխեն սարքավորումներն ու մեխանիզմները։ Մինչդեռ երբեմն պրակտիկայում հակառակն է կատարվում, որի հետևանքով սարքավորումները տարիներով չեն տեղակայվում, իսկ մի մասն էլ ավելորդ է տվյալ ձեռնարկության համար։ Այսպես, հանրապետության արդյունաբերության մեջ 1966 թ. հունվարի 1-ի տվյալներով մոտ 30 միլիոն ռուբլու չտեղակայված և ավելորդ սարքավորումներ կային, որի 20 տոկոսն ավելորդ էր. մեքենաշինության մեջ այն կազմում էր 4 մլն ռուբլի, որի 36 տոկոսը նույնպես ավելորդ էր։ 1963—1968 թթ. չտեղակայված սարքավորումները հանրապետության արդյունաբերության մեջ միջին տարեկան տեմպերով աճել են 13,5 տոկոսով։ Մետաղահատիչ սարքավորումների խումբը, որը մեքենաշինության չտեղակայված ողջ սարքավորումների մեջ նշանակալի տեսակարար կշիռ ունի (30 տոկոս), աճում է։

Չտեղակայված մետաղահատիչ սարքավորումները տարեկան միջին տեմպերով աճում են 35 տոկոսով։ Ընդհանուր առմամբ արդյունաբերության մեջ չտեղակայված սարքավորումների ավելի քան 20 և, մասնավորապես, մեքենաշինության մեջ՝ 30 տոկոսը, ավելորդ են։ Առանձին ձեռնարկությունների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ավելորդ սարքավորումների մի մասը ամենևին չի օգտագործվել, այսինքն՝ ստացվել է ոչ-պետքական, ավելորդ սարքավորում։ Այսպես, Հայէլեկտրագործարանում կան չօգտագործվող այնպիսի սարքավորումներ, որոնք ստացվել են դեռևս 1957 և 1960 թթ.։ Այդպիսի վիճակ է ստեղծվել Երևանի ֆրեզերային և Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարաններում, ուր 1959 և 1960 թթ. ստացված պնևմատիկ վերելակներն ու կայանքները մինչև օրս չեն օգտագործվել։ 1966 թ. հունվարի 1-ի դրությամբ, Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանում ավելորդ սարքավորումների 12,5 տոկոսը 1951—1953 թթ., իսկ 31 տոկոսը՝ 1957—1958 թթ., ձեռնարկության համար պիտանի չեն։ Նման վիճակն արդյունք է նյութատեխնիկական մատակարարման անճկունության, պահանջարկի ոչ ճիշտ սահմանման ու սարքավորումների բաշխման, ինչպես նաև 1965 թ. գործող սիստեմում գոյություն ունեցող թերությունների, երբ հիմնական ֆոնդերը ձեռնարկություններին էին բաշխվում անվճար և անհատույց։

Ներկայումս վիճակն այլ է։ Նյութատեխնիկական մատակարարման մարմիններն ամեն կերպ աշխատում են ձեռնարկություններին սարքեր ու հումք մատակարարել վերջինների պահանջների համաձայն։ Միաժամանակ ֆաբրիկաների ու գործարանների վարչություններին իրավունք է տրված իրացնելու իրենց մոտ եղած ավելորդ հումքն ու մեխանիզմները, եթե դրանք մեկ ամսվա ընթացքում չեն վերաբաշխվում վերադաս օրգանների կողմից։ Այս կնպաստի արտադրության մեջ ներդնելու բոլոր ռեզերվները։

Նյութատեխնիկական մատակարարման մարմինների պարտականություններից մեկն էլ այն է, որ նրանք ձեռնարկություններին հայթայթեն այնպիսի սարքեր ու մեխանիզմներ, որոնք նրան ձեռնտու են։ Մինչդեռ հաճախ խախտվում է այդ կարգը։ Եվ, մեր կարծիքով այդ է պատճառներից մեկը, երբ առանձին ձեռնարկություններում սարքերը չեն օգտագործվում լրիվ կարողությամբ։

ՍՍՀՄ մեքենաշինական մինիստրության գործարանների սարքավորումների աշխատանքների հերթափոխային գործակիցը, միջին հաշվով, 1,4 է, իսկ հանրապետության մեքենաշինության մեջ՝ 1,35։ Այդ գործակիցը ցույց է տալիս, որ սարքավորումներն աշխատում են բանվորական ժամանակի երկհերթ ֆոնդի միայն 67 տոկոսի չափով։ Բայց առանձին ձեռնարկությունների հերթափոխային գործակցի վերլուծությունից երևում է, որ որոշ դեպքերում հերթափոխի գործակցի և սարքավորումների օգտագործման ցուցանիշները բավական բարձր են։ Օրինակ, Երևանի արմատուրայի գործարանում, որը 1967 թ. ուսումնասիրման ժամանակ արդեն անցել էր պլանավորման նոր սիստեմին (գործարանը ենթակա է ՍՍՀՄ քիմիական մեքենաշինության մինիստրությանը), սարքավորումների հերթափոխային գործակիցը հասել է 1,83-ի, որից մետաղահատմանը՝ 1,88 է, դարբնոցամամլայինը՝ 1,63, ձուլմանը՝ 1,0, ըստ որում սարքավորումներն օգտագործվում են 98—100 տոկոսի սահմաններում։ Եթե սարքաշինական գործիքային արդյունաբերության միութենական մինիստրության ենթակա ձեռնարկությունների (մեր հանրապետության) մետաղամշակման սարքավորումների հերթափոխի գործակիցը 1,15 է, ապա էլեկտրաճշգրիտ գործարանում դա կազմել է 1,60, որից մետաղահատիչ սարքավորումներինը՝ 1,66, ձուլմանը՝ 2։

Հատկանշական է, որ մետաղամշակման սարքավորումների հերթափոխի գործակիցը 1967 թ., 1964 թ. համեմատությամբ, մեծացել է աննշան չափով։ Այդ են ցույց տալիս հետևյալ աղյուսակի թվերը.

Հերթափոխի գործակիցը Հայկական ՍՍՀ մեքենաշինության մեջ ըստ սարքավորումների խմբերի (ՍՍՀՄ ԿԿՎ կողմից 1964—1967 թթ. անցկացված դիտումների տվյալների համաձայն).

| | 1964 թ. | 1967 թ. |
|---|---|---|
| Մետաղամշակման բոլոր սարքավորումներինը՝ | 1,32 | 1,35 |
| որից՝ | | |
| Մետաղահատմանը | 1,32 | 1,33 |
| Դարբնոցա-մամլայինը | 1,35 | 1,42 |
| Ձուլմանը | 1,32 | 1,64 |

Հայէլեկտրագործարանում 1967 թ. 1964 թ. համեմատ, հերթափոխի այդ գործակիցը պահպանվել է, իսկ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում իջել։

Տեխնիկական առաջադիմությունը, տեխնոլոգիայի կատարելագործումը, արտադրվող արտադրանքի ասորտիմենտի փոփոխությունը սարքավորումների նոր տեսակների պահանջ են հարուցում։ Սակայն այդ պահանջների բավարարմանը պետք է նախորդի ունեցած միջոցների վերաբաշխումը տվյալ ճյուղի ձեռնարկությունների միջև։ Դրա շնորհիվ որոշ ձեռնարկություններ կարող են ազատվել ավելորդ և ոչ պիտանի սարքավորումներից, որը հնարավորություն կտա ազատված արտադրական հրապարակներում տեղակայել նոր և մեծ արտադրողա-

կան կարողություն ունեցող սարքեր: Սարքավորումների վերաբաշխումը պետք է իրականացվի նյութատեխնիկական մատակարարման կազմակերպությունների միջոցով: Դրանք ի հայտ են բերում ձեռնարկության սարքավորումների իրական պահանջը, հաշվի առնելով եղած կարողությունների օգտագործումը և դրանց միջև տեղ գտած անհամամասնությունների վերացման անհրաժեշտությունը:

Ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործմանը խանգարող անհամամասնությունը հետևանք է սարքավորումների, տեխնիկական հնարավորությունների և մշակվող նյութերի հումքային բազայի միջև գոյություն ունեցող ճեղքվածքի: Օրինակ, ձուլվածքի ու կռվածքի սակավությունը հանգեցնում է այն բանին, որ ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումներն օգտագործվում են ոչ լրիվ կարողությամբ, որն իջեցնում է նոր տեխնիկայի փաստական արդյունավետությունը: Այս հետևանք է այն բանի, որ արտադրական ծրագիրը կազմվում է նկատի առնելով ոչ թե արտադրական կարողությունները, այլ հումքի փաստական բազան:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հերթափոխության գործակցի բարձրացման համար պետք է վճռվի հումքի հարցը: Չէ՛ որ հերթափոխի գործակցի բարձրացման շնորհիվ ավելանում է արտադրանքի թողարկումը, իսկ դա, իր հերթին, պահանջում է հումքի, նյութերի, մետաղի լրացուցիչ ֆոնդեր: Ձեռնարկությանը լրացուցիչ քանակությամբ մետաղով, ձուլվածքով, կռփվածքով, կոմպլեկտային դետալներով և այլ նյութերով ապահովելը բավական բարդ խնդիր է: Օրինակ, մեքենաշինության մեջ արտադրանքի թողարկման 30—35 տոկոս աճի դեպքում անհրաժեշտ է պողպատի և չուգունի 20—25 տոկոս լրացուցիչ ձուլվածք:

Հանրապետության մեքենաշինության մեջ հերթափոխի գործակիցը 1,3—1,8-ի բարձրացնելու համար անհրաժեշտ է լրացուցիչ հազարավոր տոննա սև, գունավոր և այլ մետաղների գլանվածք ու կոմպլեկտավորող արուրք: Այդ պահանջը մասամբ կարելի է լրացնել ներքին ռեսուրսների հաշվին՝ նյութերի և հումքի ռացիոնալ օգտագործման, ձուլման ճշգրիտ մեթոդների կիրառման, ռացիոնալ ձևվածքի, մնացորդների օգտագործման և այլ միջոցների հաշվին: Ինչ վերաբերում է ձուլվածքին, ապա դրա պահանջը զգում են մեքենաշինական շատ գործարաններ. մեր հանրապետությունում դրա հիմնական մատակարարը Չարենցավանի ցենտրալիտ գործարանն է, որն առայժմ չի բավարարում մեքենաշինարարների պահանջները ն՛ ծավալի, ն՛ ձուլվածքի որակի առումով: Այդ գործարանի նախագծային կարողությունները յուրացնելու, ձուլվածքի որակը բարելավելու, ինչպես և մեքենաշինական ձեռնարկությունների ձուլվածքի արտադրամասերը տեխնիկապես հագեցնելու շնորհիվ միայն կապահովվեն ձուլվածքի ավելացող պահանջները: Այսպիսով, մետաղի լրացուցիչ պահանջը, որն առաջանում է հերթափոխի գործակցի բարձրացումից, կարող է մասամբ բավարարվել Հայաստանի սահմաններում: Սակայն այս հարցը միայն հանրապետության ներսում հնարավոր չէ լուծել: Արտադրությունը նյութապես ապահովելու խնդիրը լուծում են պլանավորող և մատակարարող օրգանները:

ՍՍՀՄ ԿՎՎ-ի կողմից անցկացվող դիտումների համաձայն, հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում 1967 թ. հումքի նյութերի, դետալների, կիսաֆաբրիկատների բացակայության պատճառով առաջացած ներհերթափոխային պարապուրդների տեսակարար կշիռը, ընդհանուր պարապուրդների մեջ կազմել է ավտոմոբիլային արդյունաբերության միութենական մինիստրությանը ենթակա ձեռնարկություններում (մեր հանրապետությունում) 81 տոկոս, շինարարության և ճանապարհային մեքենաների արդյունաբերության միութենական մինիստրության ենթակա հանրապետական ձեռնարկություններում՝ 77, սարքաշինական արդյունաբերության մեջ՝ 52,9, հաստոցաշինության մեջ՝ 37, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ 28 տոկոս և այլն: Նյութերի, կիսաֆաբրիկատների, դետալների պակասության հետևանքով առաջացած պարապուրդներն հետևանք են ո՛չ միայն նյութատեխնիկական մատակարարման մարմինների թերությունների, այլև ձեռնարկությունների արտադրամասերի, ինչպես և տեղամասերի միջև եղած անհամամասնության: Հայտնի է, որ ձեռնարկություններին առաջնակարգ գլանվածք ու ձուլվածք մատակարարելը, որը կոնֆիգուրացիայով մոտենում է պատրաստի դետալներին, դեռևս մասսայական չէ: Ավելին, մետաղի տրամագծերը հաճախ փոխվում են: Կան ձեռնարկություններ, որոնք ամբողջ մետաղի 40—50 տոկոսն ստանում են պահանջածից ավելի՝ բարձր տրամագիծ ունեցող մետաղ, որը մեծացնում է մշակման մակերեսը, ավելացնում անցումների քանակը և դրանով երկարացնում մեքենաժամանակի տևողությունը, որի հետևանքով իջնում է արտադրողականությունը:

Գերճիշտ ձուլման հաշվին մեխանիկական մշակման ծավալի փոքրացումը, կռփածոները ձուլվածքով և ազատ կռելը դրոշմամբ փոխարինելը, առավել հարմար տեսակի գլանվածք օգտագործելը, ինչպես նաև այլ կռփվածքների ու ձուլվածքների կիրառումը, որոնք մոտ են կոնֆիգուրացիայով պատրաստի դետալներին, վճռում են նյութատեխնիկական մատակարարման խնդիրները և վերջինիս ազդեցությունը մեքենաժամանակի տևողության վրա: Սարքավորումների օգտագործման վրա առավել չափով ներգործում են նաև առաջնակարգ նյութերի և պլաստմասից դետալների օգտագործումը:

Ձեռնարկությանը նման նյութեր մատակարարելը փոփոխություն է մտցնում սարքավորումների պարկի կառուցվածքում, նեղացնում մեխանիկական մշակման շրջանը, բարձրացնում սարքավորումների օգտագործման գործակիցը, կրճատում և վերացնում նյութերի մնացորդները: Այս ամենը մետաղի տնտեսման ռեզերվ է, տեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններից մեկը: Դա հաստատվում է Միության շատ մեքենաշինական ձեռնարկությունների փորձով, որոնք կիրառում են գլանվածքի թեթևացած կտրվածք (պարբերական, ճկած, պլաստմասից զանազան դետալներ և այլն):

Հայկական ՍՍՀ-ում պլաստմասսայի կիրառումն իրականում նոր է սկսվել: 1967 թ. մեր հանրապետության հաստոցաշինական, էլեկտրատեխնիկական, գործիքաշինական, ավտոմոբիլային արդյունաբերության ձեռնարկություններն օգտագործեցին ընդամենը 3 տոննա պլաստմասսա, որից 30 տոկոսն օգտագործվեց որպես դետալ՝ թողարկվող արտադրանքի կոմպլեկտավորման համար: Այսպիսով, հնարավորություն ընձեռվեց վերջին երկու տարիների ընթացքում (1966—67 թթ.) 1800 տոննա սև մետաղը փոխարինել պլաստմասսայով, որը, սակայն, օգտագործվող մետաղի մոտ 2 տոկոսն է կազմում: Ինչ խոսք, սա դեռևս էական փոփոխություն չի մտցնում մեքենաշինության հումքի բալանսի կառուցվածքի մեջ: Մինչդեռ մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները մետաղը պլաստմասսայով փոխարինելու մեծ հնարավորություններ ունեն: Երևանի արմատուրային գործարանում շոգեխողովակների արույրե օղակները պլաստմասսայով փոխարինելու շնորհիվ կտնտեսվի 70 տոննա արույրե գլանվածք: Այդպիսի պլաստմասսային օղակներ վաղուց ի վեր օգտագործվում են Լենինգրադի Լեպսեի անվան արմատուրային գործարանում: Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում կարելի է բավական քանակությամբ չուգուն, պողպատ և ալյումին տնտեսել, պլաստմասսայով փոխարինելով թեկուզ այնպիսի փոքրածավալ դետալներ, ինչպես կափարիչները, մեջդիրները, կցապոռնկները և այլն:

Մետաղի փոխարեն պլաստմասսայի լայն կիրառումը մեր հանրապետությունում առանձնապես կարևոր է: Չէ՛ որ Հայաստանը չունի իր սեփական մետալուրգիական արտադրությունը. մետաղ ստացվում է Ուրալից, Մոսկվայից, Վոլգոգրադից, Վրաստանից: Մետաղի տեղափոխման հեռավորությունն ավելի քան 1000 կմ է: Միաժամանակ մետաղի մնացուկները տաշեղի և ջարդոնների տեսքով նորից ուղարկվում են մետալուրգիական գործարանները: Պլաստմասսայի օգտագործմամբ, փոխելով հումքային բալանսի կառուցվածքը, կիջնի հանրապետություն ներմուծվող մետաղի պահանջը: Այդ գործում մեծ դեր ունեն կատարելու նյութատեխնիկական մատակարարման մարմինները: Սրանք, մի կողմից՝ պետք է կազմակերպեն առաջնակարգ նյութերի մատակարարումը պատվիրատուներին, մյուս կողմից՝ ապահովեն առաջնակարգ նյութեր արտադրող նորակառույց օբյեկտների արագ շահագործումը, սարքավորումներ ու նյութեր մատակարարելով նպաստեն դրանց արտադրությանը: Երբեմն շինարարության պլանավորման թերությունների հետևանքով, ինչպես նաև մատակարարող-իրացնող կազմակերպությունների մեղքով, շահագործման պատրաստ ձեռնարկությունները լրիվ չեն կոմպլեկտավորվում սարքավորումներով, այնինչ, մի այլ, դեռևս անավարտ օբյեկտներում, այդ սարքավորումները տարիներով անօգտագործելի են մնում: Պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմի շնորհիվ կառույցները ժամանակին ապահովվում են կոմպլեկտավորված անհրաժեշտ նյութերով ու սարքավորումներով: Դա հնարավորություն է ընձեռում ժամկետին շահագործման հանձնել պլաստմասից առաջնակարգ նյութեր ու փոխարինիչներ արտադրող արտադրական նոր կարողություններ: Մատակարարող կազմակերպությունները մեծ դեր ունեն կատարելու նոր, առաջնակարգ նյութերի մատակարարման ու բաշխման ասպարեզում:

Նյութատեխնիկական մատակարարման պլանները կախված են նոր տեխնիկայի յուրացման պլաններից: Սակայն դրանք կազմվում են տարբեր ժամանակներում, որը բացասաբար է անդրադառնում արտադրության մեջ նոր նյութերի պահանջարկի բավարարման վրա: Նոր տեխնիկայի յուրացման պլանները կազմելիս պետք է նկատի առնվեն նոր սինթետիկ նյութերի յուրացման համար ձեռնարկված բոլոր միջոցները: Արտադրությունը ժամանակին նախապատրաստելու, տեխնոլոգիական պրոցեսներն ու սարքավորումները վերակառուցելու համար նպատակահարմար է ներդնել սինթետիկ նյութերի մատակարարման կոոպերատիվ պլանավորումը՝ 2—3 տարվա ժամկետով:

Այսպիսով, արտադրության տեխնիկական կատարելագործման ասպարեզում նյութատեխնիկական մատակարարմանը մեծ տեղ է հատկացվում: Մատակարարման կազմակերպություններն իրենց ֆունկցիաները կատարելիս պետք է ակտիվ ներգործեն արտադրության, բաշխման վրա:

ՍՎԵՏԼԱՆԱ ՍԵՄՅՈՆՈՎԱ

## ՄԱՐԴԿԱՆՑ ԱՊԱՀՈՎՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Անցյալ տարվա մեջերին խմբագրությունը Զանգեզուրից ստացավ երեք նամակ, որոնց հեղինակները՝ Վ. Աբգարյանը, Ա. Սողոմոնյանը և Շ. Ափունցը խնդրում էին հանգամանալի մի հոդվածով պատասխանել այն հարցին, թե հնարավո՞ր է կանխել երկրաշարժի վտանգը:

Խմբագրության խնդրանքով այդ հարցի առթիվ հանդես է գալիս տեխնիկական գիտությունների թեկնածու, Հայկ. ՍՍՀ Լենինականի գեոֆիզիկայի և ինժեներային սեյսմոլոգիայի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր ինստիտուտի դիրեկտորի տեղակալ ընկ. Ս. Գ. ՇԱՀԻՆՅԱՆԸ:

Երկրաշարժերը բնության տարերային աղետներ են, որոնք տեղի են ունենում հանկարծակի: Չնայած այն տևում է մի քանի տասնյակ վայրկյան, այնուամենայնիվ երկրաշարժերի՝ մարդկությանը հասցրած վնասները չափազանց մեծ են: Բնական այդ աղետները մարդկային բազմաթիվ զոհերի հետ մեկտեղ, կործանում են քաղաքներ, կառույցներ, մարդկության կողմից դարերի ընթացքում ստեղծված կուլտուրական ու հոգևոր հարստություններ: Այդ աղետների առաջացման պատճառների ուսումնասիրության և դրանց դեմ պայքարի հարցերը համարվում են համաժողովրդական գործ:

Երկրաշարժերը Երկրի կեղևի տարբեր շերտերում տեղի ունեցող անակնկալ տեղաշարժերն են, որոնք պայմանավորված են երկրագնդի ընդերքում առաջացող զանազան փոփոխություններով: Ըստ առաջացման պատճառների դրանք բաժանվում են մի քանի տիպի՝ տեկտոնական, հրաբխային, փլվածքային, պլուտոնական կամ խոր ֆոկուսային:

Տեկտոնական երկրաշարժերի առաջացման պատճառը Երկրի տարբեր խորություններում (հիմնականում 10-ից 40 կմ., որոշ դեպքերում ավելի խոր) տեղի ունեցող լեռնակազմության պրոցեսներն են: Երկրագնդի վրա դրանք ամենատարածվածն ու ամենավտանգավորն են և կազմում են բոլոր երկրաշարժերի մոտ 90 տոկոսը: Տեկտոնական երկրաշարժերի ժամանակ երկրագնդի ընդերքում գործող ներքին ուժերը (կամ լարվածությունները), աստիճանաբար մեծանում են և, անցնելով լեռնային ապարների դիմադրության սահմանը, առաջացնում ապարների հանկարծակի տեղաշարժ կամ դրանք անջատում իրարից: Այդ պրոցեսները պայմանավորված են զգալի քանակությամբ էներգիայի անջատմամբ: Անջատված էներգիան երկայնական, լայնական և մակերևութային ալիքների միջոցով տարածվելով դեպի Երկրի մակերևույթը՝ առաջացնում է երկրաշարժ: Կուտակված էներգիան անջատվում է չափազանց արագ, ակնթարթորեն: Ծերտերի իջեցումը, բարձրացումը, հորիզոնական սահումը և այլ բարդ շարժումներ հիմնականում տարածվում են խզվածքի հարթության ուղղությամբ: Հետագայում լարվածությունները արագ մարում են և խզված մասի, այսպես կոչված՝ բլոկների միջև եղած կողային շփման ուժերի շնորհիվ վրա է հասնում վերջիններիս համեմատաբար կայունացման վիճակը:



Հրաբխային երկրաշարժերի առաջացման պատճառ կարող են հանդիսանալ ուժեղ ճնշման տակ գտնվող լավայի և գազերի ժայթքումը, զանազան ստորերկրյա պայթյուններ և այլն: Դրանք հազվադեպ են, թույլ և կրում են տեղական բնույթ:

Փլվածքային երկրաշարժերն առաջանում են Երկրի կեղևում գոյացած դատարկությունների, այսպես կոչված՝ տանիքի կամ պատերի փլուզումից: Այդպիսիք ևս խիստ տեղական են և հեռավոր տարածությունների վրա զգալի ազդեցություն չեն գործում:

Պլուտոնական կամ խոր ֆոկուսային տիպի երկրաշարժերի առաջացման մեխանիզմը դեռևս լրիվ ուսումնասիրված չէ: Դրանք չափազանց ուժեղ են լինում, սակայն, քանի որ գործում են շատ մեծ խորություններում (մոտ 700 կմ), մինչև Երկրի մակերևույթը հասնելը մարում են ընդերքում և համարյա ավերածություններ չեն պատճառում:

Լեռնային ապարների խզման տիրույթը կամ զոնան, որտեղից սկիզբ են առնում երկրաշարժերը, կոչվում է երկրաշարժի օջախ, կիզակետ, ֆոկուս կամ հիպոկենտրոն: Օջախի ուղղաձիգ պրոեկցիան երկրի մակերևույթի վրա կամ օջախի ամենամոտ հեռավորությունը երկրի մակերևույթից կոչվում է երկրաշարժի էպիկենտրոն: Վիճակագրական մոտավոր տվյալների համաձայն տարեկան արձանագրվում են Երկրի ավելի քան 10 հազար ցնցում, որոնցից համեմատաբար ուժեղ են համարվում միջին թվով հարյուրը, ուժեղ ցնցում՝ տասը, իսկ կործանիչ երկրաշարժերի թիվը մեկ-երկուսից չի անցնում:

Ինչպես հայտնի է, 1968 թ. հունիսի 9-ին, տեղական ժամանակով 4-անց 56 րոպեին Զանգեզուրում տեղի ունեցավ երկրաշարժ, որի ուժը, ըստ անջատված էներգիայի քանակի, կամ, այսպես կոչված՝ մագնիտուդայի մեծության, հավասար էր Տաշքենդի 1966 թ. երկրաշարժի ուժին. էպիկենտրոնային զոնայում այն հասավ 8 բալի, իսկ ընդհանրապես միջին գրունտային պայմանների համար այն հավասար էր 7 բալի: Այդ երկրաշարժի էպիկենտրոնը մոտավորապես գտնվում էր Զանգեզուրի 1931 թ. երկրաշարժի տեղում՝ Զանգեզուրի և Բարգուշատի լեռնաշխարհների հատման շրջանում, Գյարդ գյուղի մոտակայքում: Զանգեզուրի երկրաշարժի ուժեղ հարվածը գրանցեցին Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի տերիտորիաներում գործող 26 սեյսմիկ կայանները: Այդ կայանների աշխատակիցների համատեղ ջանքերով մեծ ճշգրտությամբ որոշվեց էպիկենտրոնը, անջատված էներգիայի քանակը և այլն. այդ ամենը ժամանակին հայտնվեց կառավարական օրգաններին և շահագրգռված մյուս կազմակերպություններին: Զանգեզուրի 1931 ու 1968 թթ. և, ընդհանրապես, Հայաստանի երկրաշարժերն ունեն տեկտոնական ծագում: Չնայած ներկա երկրաշարժի ուժն ըստ անջատված էներգիայի քանակի զգալիորեն թույլ էր 1931 թ. երկրաշարժի ուժից, սակայն դրա հետևանքով վնասվեցին Ղափանի, Գորիսի, Սիսիանի և Ազիզբեկովի շրջանները: Հայտնի է, որ ուժեղ երկրաշարժերին նախորդում են թույլ, նախնական հարվածները՝ փորշոկերը, և հաջորդում են բազմաթիվ կրկնվող սեյսմիկ հարվածներ կամ, այսպես կոչված՝ աֆտերշոկերը: Վերջիններս արդյունք են այն բանի, որ Երկրի կեղևն ուժեղ, գլխավոր հարվածներից հետո անցնում է հավասարակշռության վիճակի: Այդ ցնցումները, համեմատած գլխավորի հետ, ընդհանրապես թույլ են (բայց կարող են և ուժեղ լինել). դրանք ժամանակի ընթացքում աստիճանաբար անհետանում կամ, ինչպես ասում են՝ մարում են:

Այժմ մի քանի խոսք երկրաշարժերի ուժգնության վերաբերյալ: Ինչպես հայտնի է, երկրաշարժերի ուժգնությունը Երկրի մակերևույթի վրա՝ չափվում է բալերով: Ուժգնությունն ավելի ճիշտ որոշելու համար անհրաժեշտ է անդրադառնալ երկրաշարժի օջախին, որտեղից անջատվող էներգիան տարածվում է տարբեր ուղղություններով՝ ինչպես դեպի Երկրի մակերևույթը, այնպես էլ՝ դրա խորքը: Էներգիայի մի մասը կլանվում է խորքային ապարներում՝ վերածվելով ջերմային էներգիայի: Էներգիայի հաշվարկը շատ բարդ է. օջախից անջատված էներգիայի մեծության չափման համար սեյսմոլոգիայում ընդունված է պայմանական մեծություն-մագնիտուդա: Այն առաջարկել է ամերիկացի հայտնի սեյսմոլոգ Չարլզ Ռիխտերը սրանից մոտ 30 տարի առաջ: Որոշ դեպքերում այն շփոթում են բալի հետ: Մագնիտուդան երկրաշարժի ուժգնության մեծությունն է օջախում և կախված է երկրաշարժի հետևանքով անջատվող սեյսմիկ ալիքների ընդհանուր էներգիայից: Գոյություն ունի որոշակի կապ երկրաշարժից անջատված էներգիայի՝ մագնիտուդայի և բալականության միջև՝ կախված օջախի խորությունից: Երբ ասում են, թե երկրաշարժի ուժը հավասար է 7,8 բալի ըստ Ռիխտերի (ի դեպ, այդ արտահայտությունը ճիշտ չէ), ինչպես բնորոշվեց մամուլում 1968 թ. սեպտեմբերի 1-ի Իրանի երկրաշարժը, ապա պետք է իմանալ, որ խոսքը մագնիտուդայի մասին է և ոչ՝ բալի: Արդեն ասացինք, որ երկրաշարժի ուժգնությունը որոշվում է սեյսմիկ բալերով:

Երկրաշարժերի գրանցման համար սեյսմոլոգիայում այժմ օգտագործվում են բազմաթիվ

ճշգրիտ գործիքներ ու սարքավորումներ: Բավական է նշել, որ Հայաստանի սեյսմիկ կայանները գրանցում են Ամերիկայում տեղի ունեցող նույնիսկ թույլ երկրաշարժերը:

Ժամանակակից սեյսմոլոգիան ներկայումս զբաղված է երկու հիմնական պրոբլեմների լուծմամբ: Առաջինն ունի ավելի շատ գործնական նշանակություն. մշակվում են երկրաշարժային շրջաններում կառուցվող շենքերի և կառուցվածքների սեյսմակայունությունն ապահովող միջոցառումներ: Մյուս պրոբլեմը երկրաշարժերի ծագման պատճառների ուսումնասիրությունն է, որը, վերջին հաշվով, հանգեցնելու է երկրաշարժերի կանխագուշակմանը: Դրանց ծագման պատճառների ուսումնասիրությունը նպաստում է նաև օգտակար հանածոների հայտնաբերմանը, Երկրի կեղևի կազմության ու այլ հարցերի պարզաբանմանը: Այդ տեսակետից երկրաշարժը որոշ չափով օգնում է գիտությանը: Հիշարժան են ակադեմիկոս Գոլիցինի խոսքերն այդ մասին. «Յուրաքանչյուր երկրաշարժ կարելի է նմանեցնել լապտերի, որը վառվում է կարճ ժամանակով և լուսավորում Երկրի ներսը, դրանով իսկ պայմաններ ստեղծելով ուսումնասիրելու այն, ինչ կատարվում է այնտեղ: Այդ լապտերի լույսն առայժմ շատ աղոտ է, բայց կասկածից վեր է, որ ժամանակի ընթացքում այն կպայծառանա և մեզ հնարավորություն կընձեռի պարզաբանելու բնության այդ բարդ երևույթը»:

Մարդկությունն առայժմ ի վիճակի չէ կանխելու երկրաշարժերը, ուստի, մնում է մի ելք՝ երկրաշարժերը դարձնել մարդկության համար համեմատաբար անվտանգ, ակտիվ պայքար կազմակերպել դրանց վնասների դեմ: Պայքարի ամենաարդյունավետ եղանակներից մեկը ներկայումս շենքերի և կառուցվածքների սեյսմակայունության ապահովումն է:

Վիճակագրական տվյալները ցույց են տվել, որ տարբեր ժամանակաշրջաններում, տվյալ տերիտորիայի համար հավասար ուժգնության երկրաշարժերի ժամանակ փլված շենքերի, մարդկային զոհերի թիվը գնալով զգալի չափով պակասել է: Անտարակույս, այդ արդյունք է ինժեներային սեյսմոլոգիայի ասպարեզում գիտության ձեռք բերած հաջողությունների: Այժմ երկրաշարժային շրջաններում կառուցվող շենքերն ու կառուցվածքները նախագծվում են համաձայն գոյություն ունեցող սեյսմիկ նորմաների ու տեխնիկական պայմանների: Երկրաշարժից վթարված շենքերի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ ըստ նորմաների ճիշտ նախագծված և բարձրորակ շենքերը կանգուն են մնացել և լուրջ վնասվածքներ չեն ստացել նույնիսկ ուժեղ երկրաշարժերի ժամանակ:

Երկրաշարժային շրջաններում շենքերը նախագծելիս անհրաժեշտ է պահպանել դրանց հատակագծային ամրությամբ հավասար, սիմետրիկ լուծումների սկզբունքը, ինչպես նաև ձգտել թեթևացնելու շենքի ընդհանուր քաշը՝ կիրառելով թեթև բետոնե կոնստրուկցիաներ: Հավաքովի կոնստրուկցիաներն անհրաժեշտ է հուսալիորեն մոնոլիտացնել, հնարավորին չափ խոշորացնելով դրանք, հետևել զոդման և այլ միացումների բարձրորակությանը:

Շենքերի ու կառուցվածքների նախագծման ու կառուցման ընթացքում հատուկ ուշադրություն պետք է նվիրել գրունտային պայմանների ճիշտ ընտրությանը:

Երկրաշարժերը թույլ, խոնավ գրունտներում ավելի մեծ ինտենսիվություն ունեն, քան չոր, խիտ (ժայռային) գրունտներում: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գրունտներն ունեն իրենց սեփական տատանումների հաճախականությունները: Եթե հանկարծ երկրաշարժի ժամանակ շենքերի տատանման հաճախականությունները համընկնում են գրունտների տատանման հաճախականություններին, տեղի է ունենում ռեզոնանսի երևույթը, որը կարող է քանդել ամենաամուր կառուցվածքն իսկ: Շենքերի կոնստրուկտիվ սխեմաների (կոշտ ու ճկուն) և դրանց գրունտային պայմանների ճիշտ ընտրությունից են հիմնականում կախված շենքերի ու կառուցվածքների վնասվածքները երկրաշարժերի ժամանակ: Ըստ նոր համաշինարարական նորմաների (СН и П) երկրաշարժային շրջաններում խիստ սահմանափակվում է քարե շենքերի հարկերի թիվը. օրինակ՝ 9 բալի դեպքում սեյսմակայուն են համարվում 3 հարկից ոչ ավելի կանոնավոր ձևի քարերով շարվածքը և երկու հարկից ոչ ավելի՝ միդիս շարվածքը: Որոշ մասնագետներ երկմտում են, թե հնարավո՞ր է արդյոք երկրաշարժային շրջաններում բարձրահարկ շենքեր կառուցել: Ինչպես ցույց է տվել Ճապոնիայի և ԱՄՆ-ի երկրաշարժերից վթարված շենքերի ինժեներական ուսումնասիրությունը, հնարավոր է, և ամենանպատակահարմարը մոնոլիտ երկաթբետոնե և մետաղյա կմախքով բարձրահարկ շենքերի կառուցումն այդպիսի վայրերում: Անհրաժեշտ է միայն ընտրել դրանց ճարտարապետական-հատակագծային պարզ լուծումներ, ինչպես նաև հաշվային ճշգրիտ սխեմաներ: Բնակչությունը պետք է համոզված լինի, որ երկրաշարժի ժամանակ շենքերը չեն քանդվի: Սեյսմիկ շրջաններում դեռևս լուրջ թերություններ կան բազմահարկ շենքերի նախագծման գործում. ինչպես հարկն է չեն ուսումնասիրված դրանց, այսպես կոչված՝ դինամիկ առանձնահատկությունները: Այդ նպատակով Սովետական Միությունում և արտասահմանում ուսումնասիրվում են ինչպես կառուցված բազմահարկ շենքերը, այնպես էլ դրանց մոդելները: Հայաստանում նման ուսումնասիրություններ կատարվում են գիտությունների ակադեմիայի Լենինականի գեոֆիզիկայի և ինժեներային սեյսմոլոգիայի, պետշինի և շինարարության մինիստրության գիտահետազոտական և նախագծային ինստիտուտներում:

Վերոհիշյալից բացի խիստ կարևոր է նաև երկրաշարժային շրջաններում շինարարական աշխատանքների բարձր որակը: Ինչպես ցույց տվեց Զանգեզուրի երկրաշարժից վնասված շենքերի ուսումնասիրությունը, միևնույն գրունտային պայմաններում գտնվող նույնատիպ շենքերից բարձրորակները շատ քիչ են վնասվել: Բարձրորակ շենքերի դիմադրողունակությունը 1—2 բալով տարբերվում է ցածրորակ շենքերի դիմադրողունակությունից: Եվ միայն դրա շնորհիվ Սան-Ֆրանցիսկոյի 1906 թ. կործանիչ երկրաշարժի ժամանակ զոհերի թիվը անհամեմատ քիչ էր: Ինչպես տեսնում ենք, Կալիֆոռնիայում արդեն գաղափար ունեին սեյսմիկ նորմաների մասին:

Այս հարցի կարևորությունը երբեք չպետք է անտեսեն մեր շինարարները:

Երկրաշարժերի առաջացման պատճառների, դրանց, այսպես կոչված՝ կանխագուշակման հարցերով այժմ հանգամանորեն զբաղվում են Սովետական Միության, Ամերիկայի, Ճապոնիայի և այլ երկրների գիտնականները: Երկրաշարժերի կանխագուշակման հարցն ունի խիստ կենսական նշանակություն: Բավական է նշել, որ միայն վերջին մեկ դարում երկրագնդի վրա երկրաշարժերի հետևանքով զոհվել են մեկ միլիոնից ավելի մարդ:

Կանխագուշակել երկրաշարժը, նշանակում է նախօրոք իմանալ՝ որտե՞ղ, ի՞նչ ուժգնությամբ, ո՞ր օրը, ո՞ր ժամին է լինելու այն, հայտնել ազգաբնակչությանը, դրանով իսկ խուսափելով հազարավոր մարդկային զոհերից, փրկելով նյութական մեծ արժեքները: Երկրաշարժերի կանխագուշակման հարցը բավականին բարդ է: Ոչ ոք չի կարող ստույգ ասել, թե տվյալ տեղում, տվյալ ժամին երկրաշարժ կլինի, թե՞ ոչ: Սակայն պետք է հուսալ, որ ժամանակին հնարավորություն կստեղծվի որոշելու դեֆորմացիաների կուտակումների, հետևաբար և ուժեղ երկրաշարժի առաջացման վայրերը: Երկրաշարժի տեղի և դրա ուժգնության որոշման նպատակով լուրջ ջանքեր են գործադրում աշխարհի բոլոր գիտնականները: Ինչպես հայտնի է, սեյսմոակտիվության տեսակետից երկրագունդը բաժանվում է երեք գոտու-Խաղաղօվկիանոսյան, Միջերկրածովյան կամ Տրանսասիական և Արկտիկական: Երկրագնդում տեղի ունեցող երկրաշարժերի ընդհանուր էներգիայի 85 տոկոսն անջատվում է Խաղաղօվկիանոսյան գոտում: Աշխարհում երկրաշարժերի մեծ մասը լինում է Ճապոնիայում:

Պատահական չէր, որ անգլիացի սեյսմոլոգ Ջոն Միլնը, որ ուղարկվել էր Ճապոնիա ուսումնասիրություններ կատարելու, առաջին օրն իսկ հանդիպել է ուժեղ երկրաշարժի և իր նամակներից մեկում գրել է. «Ինչպե՞ս կարելի է չհետաքրքրվել երկրաշարժերով, երբ դրանք այստեղ մատուցվում են նախաճաշին, ճաշին, ընթրիքին, և, նույնիսկ՝ քնելուց առաջ»: Երկրաշարժերի կանխագուշակման հարցերով զբաղվել է ժամանակակից սեյսմոլոգիայի հիմնադիրներից մեկը՝ ռուս ակադեմիկոս Գոլիցինը:

Ներկայումս Սովետական Միությունում երկրաշարժերի կանխագուշակման հարցերով զբաղվում են մի շարք կազմակերպություններ և ինստիտուտներ՝ Երկրի ֆիզիկայի ինստիտուտի գլխավորությամբ:

Նկատի ունենալով Հայաստանի տերիտորիայի՝ երկրաբանական տեսակետից բարդ կառուցվածքը, ինչպես և նրա սեյսմիկ մեծ ակտիվությունը, անցյալ տարի Լենինականի գեոֆիզիկայի և ինժեներային սեյսմոլոգիայի ինստիտուտի աշխատակիցներն ակադեմիկոս Ա. Գ. Նազարովի ղեկավարությամբ, կազմեցին Հայաստանում երկրաշարժերի կանխագուշակման բնագավառում կատարելիք կոմպլեքսային երկրաբանական-գեոֆիզիկական և ինժեներա-սեյսմոլոգիական աշխատանքների յոթնամյա ծրագիր:

Կանխագուշակման պրոբլեմը հաջողությամբ լուծելու համար, նախ՝ անհրաժեշտ է իմանալ թե երկրաշարժերն ի՞նչ պրոցեսների արդյունք են, ինչպիսի՞ երևույթների են հաջորդում կամ ինչպիսի՞ բոթաբեր երևույթներ են նախորդում դրանց: Աշխարհի սեյսմիկ կայանները, որ հագեցած են ժամանակակից չափող գործիքներով ու սարքավորումներով, անընդհատ գրանցում են Երկրի կեղևի բոլոր ցնցումները: Սեյսմիկ կայանների նպատակն է՝ հիմնականում որոշել ուժեղ ու կործանիչ երկրաշարժերի աշխարհագրական կոորդինատները, դրանց օջախների խորությունը, Երկրի կեղևի կազմությունը, ինչպես նաև տարածված առաձգական ալիքների միջոցով ուսումնասիրել երկրաշարժի մեխանիզմը, խզվածքների առաջացման պրոցեսը: Առաձգական, հատկապես երկրագնդի միջուկով (որտեղ ճնշումը հասնում է միլիոնավոր մթնոլորտի) անցնող ալիքների ուսումնասիրությամբ

հնարավորություն է ընձեռվում որոշելու խորքային ապարների ֆիզիկո-քիմիական հատկությունները: Կանխագուշակման պրոբլեմը հիմնվում է երկրաշարժերի ծագման պատճառների ուսումնասիրության վրա:

Սովետական Միությունում, հատկապես Տաշքենդի 1966 թ., ինչպես նաև Ճապոնիայում ու Ամերիկայում տեղի ունեցած երկրաշարժերի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ Երկրի մակերևույթի վրա տվյալ շրջանում խիստ աննշան թեքումներին անմիջապես հաջորդում է ուժեղ երկրաշարժը: Պարզվում է, որ որոշակի կապ կա երկրաշարժերի և Երկրի մագնիսական դաշտի միջև: Ուժեղ երկրաշարժերից առաջ և հետո փոխվում են Երկրի խորքային ապարների մագնիսական և էլեկտրական հատկությունները, մթնոլորտի հետ կապ չունեցող նրա «հաստատուն դաշտը»: Այդ երևույթը հաստատվեց մեր ինստիտուտի՝ Զանգեզուրի երկրաշարժի էպիկենտրոնային շրջանում գտնվող կրկնվող ցնցումներն ուսումնասիրող արշավախմբի կողմից: Որքան ուժեղ է սպասվող կրկնվող հարվածը, այնքան ավելի վաղ են սկսվում մագնիսական դաշտի փոփոխությունները:

Ուժեղ երկրաշարժերից առաջ նկատելիորեն փոխվում են ընդերքի հանքային ջրերի ջերմային, ֆիզիկո-քիմիական և այլ հատկություններ: Այս ասպարեզում հետաքրքրական արդյունքների են հասել Տաշքենդի սեյսմոլոգները: Նրանք երկար ժամանակ (սկսած 1957 թ.) հետևել են Տաշքենդ քաղաքի շըրջանի ջերմահանքային ջրերի ռեժիմի փոփոխություններին: Պարզվել է, որ 1957 թ. սկըսած ռադոն գազի պարունակությունը դրանց մեջ գնալով ավելացել է և 1966 թ. ապրիլի 26-ի երկրաշարժի նախօրյակին եղել է ամենաշատը. իսկ երկրաշարժից անմիջապես հետո նորից պակասել: Այդ կապակցությամբ, ինչպես Տաշքենդում, այնպես և Զանգեզուրում նախատեսված է փորել 5 կմ խորությամբ հորատանցք, որտեղ հանքային ջրերի բաղադրությունն ուսումնասիրելու հետ մեկտեղ, տեղադրվելու են գեոֆիզիկական շատ նուրբ ու զգայուն սարքավորումներ, տվիչներ, միկրոֆոններ (գեոֆոններ):

Երկրաշարժից առաջ փոխվում է տվյալ միջավայրի՝ երկրի ձգողական ուժի արագացման մեծությունը, շատ աննշան, սակայն ժամանակակից գրավիմետր կոչվող գործիքները մեծ ճշգրտությամբ կարողանում են արձանագրել այն: Հատուկ դեֆորմամետրերի օգնությամբ չափվում են Երկրի կեղևի ձևափոխությունները, որոնք, ինչպես ցույց են տվել դիտարկումները, երկրաշարժից առաջ գնալով մեծանում են: Երկրաշարժերի կանխագուշակման հարցը, ինչ խոսք, գիտությունը կլուծի: Առայժմ այդ հարցում պետք է լինել խիստ զգույշ, որովհետև այն կապված է մարդկանց և նյութական արժեքների էվակուացման, ինչպես և այլ, ավելի բարդ հանգամանքների հետ:



# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

**ԿԱՐԼ ՄԱՐՔՍ**

## «ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ» ՁԵՌԱԳՐԻՑ

(1857—1858 թվականների սևագիր ուրվագիր)

Ստորև հրապարակվում է երկու հատված Կ. Մարքսի՝ 1857—1858 թվականների տնտեսագիտական ձեռագրից՝ *(K. Marx. Grundrisse der Kritik der politischen Oekonomie. Moskau, 1939, S. 504-508 582-600):*

Առաջին հատվածում Ա. Սմիթի հայացքների քննադատական վերլուծության առնչությամբ տրվում է արժեքի աշխատանքային տեսության կարևոր հիմնավորումը: Մարքսը քննարկում է Սմիթյան «զոհողության կոնցեպցիան», որի համաձայն բանվորի աշխատանքը հանդես է գալիս որպես բանվորի կողմից զոհողություն, որպես աշխատանք արտաքին հարկադրանքով, և ցույց է տալիս, որ այդ կոնցեպցիայի արմատներն ընկած են աշխատանքի անտագոնիստական բնույթի մեջ՝ կապիտալիստական հասարակությունում:

Բուրժուական հասարակության նկատմամբ ունեցած վերպատմական մոտեցումը խանգարել է Սմիթին, ինչպես և բուրժուական մյուս տնտեսագետներին, տեսնելու, թե ինչպես այդ հասարակության ընդերքում նախադրյալներ են աճում աշխատանքը հրապուրիչ աշխատանքի, ինդիվիդի ինքնաիրականացման փոխարկվելու համար: Սակայն Մարքսն ընդսմին ընդգծում է, որ կոմունիստական հասարակությունում իսկական ազատ աշխատանքը «ներկայացնում է իրենից դիվային լուրջ գործ, ամենաինտենսիվ լարվածություն», և ոչ մի կերպ չի հանդիսանում հասարակ ժամանց, միայն ու միայն զվարճանք կամ խաղ, ինչպես դա կարծում էր Ֆուրիեն:

Մարքսն այստեղ առաջին անգամ ձևակերպում է հետագայում նրա կողմից «Կապիտալում» զարգացրած այն կարևոր դրույթը, որ կոմունիստական հասարակության մեջ հավելյալ արդյունքը հանդես է գալիս որպես անհրաժեշտ արդյունք:

Երկրորդ հատվածում Մարքսը քննարկում է հիմնական կապիտալի աճող դերը կապիտալիստական արտադրության զարգացման մեջ: «Հիմնական կապիտալի զարգացումը,— նշում է Մարքսը,— ցուցանիշն է այն բանի, թե ի՛նչ աստիճանի է հասարակական հանրային գիտելիքը *(Wissen Knowledge)* փոխարկվել **անմիջական արտադրողական ուժի»**: Եթե հիմնական կապիտալը հանդես է գալիս որպես կապիտալի ադեկվատ ձև ընդհանրապես, ապա հիմնական կապիտալի ադեկվատ ձև է հանդիսանում մեքենաների սիստեմը, որը կենդանի ուժը դարձնում է իր կցորդը, մի հասարակ միջոց իր գործունեության համար: Սակայն դրանից «ամենևին չի հետևում,— ընդգծում է Մարքսը,— թե կապիտալիստական հասարակական հարաբերությանը ենթարկվելը մեքենաների սիստեմ կիրառելու համար առավել ադեկվատ և լավագույն հասարակական արտադրական հարաբերությունն է»:

Հիմնական կապիտալի դերի աճը, ինչպես ցույց է տալիս Մարքսը, տանում է դեպի ան-

բացարձակ պահանջմունքները բավարարելու համար, թողնում է ազատ ժամանակ (որի մեծությունը տարբեր է արտադրողական ուժերի զարգացման տարբեր աստիճաններում), և դրա հետևանքով կարող է ստեղծվել հավելյալ արդյունք, եթե կատարվում է հավելյալ աշխատանք: Նպատակը բուն հարաբերության [անհրաժեշտ և հավելյալ աշխատանքի] ոչնչացումն է. այնպես, որ հավելյալ արդյունքն ինքը հանդես է գալիս որպես անհրաժեշտ արդյունք և, վերջապես, որ նյութական արտադրությունը յուրաքանչյուր մարդու թողնի ավելցուկ ժամանակ ուրիշ գործունեության համար։ Դրանում այժմ արդեն ոչ մի միստիկական բան չկա։ Սկզբնապես բնության տարերային պարգևները առատ են կամ, ծայրահեղ դեպքում, դրանք պետք է միայն յուրացնել։ Սկզբից և եթ, տարերայնորեն զարգանում է ասոցիացիան (ընտանիքը) և նրան համապատասխանող աշխատանքի բաժանումն ու կոոպերացիան։ Չէ՞ որ սկզբնապես պահանջմունքները նույնպես չնչին են։ Դրանք իսկ զարգանում են միայն արտադրողական ուժերի հետ միասին։

…Աշխատանքի չափը ժամանակն է։ Միայն այն պատճառով, որ արդյունքներն իրենցից աշխատանք են ներկայացնում, նրանց կարելի է չափել աշխատանքի չափով, աշխատաժամանակով, կամ նրանց վրա թափված աշխատանքի քանակով։ Հանգստի ժխտումը, լինելով միմիայն ժխտում, ճգնավորական զոհողություն, ոչինչ չի ստեղծում։ Կարելի է ճգնավորների և այլոց նման ամբողջ օրերով մեռցնել իր մարմինը, զբաղվել ինքնախոշտանգմամբ և այլն, բայց զոհաբերության այդ քանակը ոչինչ չի տա։ Իրերի բնական գինն այդ իրերին մատուցվող զոհողությունը չէ։ Նման պնդումն ավելի շատ հիշեցնում է այն ոչ-արտադրական հայեցողությունը, որի համաձայն կարելի է հարստություն ձեռք բերել՝ աստվածներին զոհեր մատուցելով։ Զոհողությունից բացի անհրաժեշտ է նաև ինչ-որ բան։ Այն, ինչ Սմիթը համարում է հանգստի զոհաբերում, կարելի է նույնպես անվանել ծուլության, անազատության, դժբախտության զոհաբերում, այսինքն՝ որոշ բացասական վիճակի բացասում։

…Զոհողության սմիթյան կոնցեպցիայից, որը, սակայն, ճիշտ է արտահայտում վարձու բանվորի սուբյեկտիվ վերաբերմունքն իր սեփական գործունեության նկատմամբ, այնուամենայնիվ չի ստացվում այն, որ ցանկանում է ստանալ Սմիթը, այն է՝ արժեքի որոշումը աշխատաժամանակով։ Թող բանվորի համար աշխատանքի մի ժամը մշտապես ներկայացնի միևնույն զոհողությունը։ Բայց ապրանքների արժեքը բնավ կախված չէ բանվորի զգայումներից, ինչպես նրանցից չի կախված և նրա աշխատանքի մի ժամի արժեքը։ Քանի որ Սմիթը ընդունում է, որ այդ զոհողությունը կարելի է գնել մերթ էժան, մերթ թանկ, ապա խիստ տարօրինակ է մնում, որ ծախսել այն միշտ էլ հարկ է լինում միևնույն գնով։ Սակայն Սմիթը բացի դրանից, դեռևս անհետևողական էլ է երևում։ Հետագայում նա արժեքի չափ է դարձնում աշխատավարձը, այլ ոչ թե աշխատանքի քանակը։ Երբ մորթում են եզը, ապա նրա համար դա միշտ միևնույն զոհողությունն է։ Բայց դրանից տավարի միսը չի ունենում մշտական արժեք։

### [ՀԻՄՆԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՑՈՒՑԱՆԻՇ]

#### [ա) Մեքենաների սիստեմը որպես աշխատանքի միջոցների՝ կապիտալիզմին ադեկվատ ձև]:

Կապիտալը, որ գործադրում է իրեն արտադրության բուն պրոցեսում, կամ հիմնական կապիտալը, իրենից ներկայացնում է արտադրամիջոց, այդ տերմինի ամենապարփակ իմաստով։ Ավելի լայն իմաստով արտադրության ամբողջ պրոցեսը և նրա ամեն մի մոմենտը, հավասարապես և շրջանառության ամեն մի մոմենտը— հենց որ նա դիտվում է իրային կողմից— միայն արտադրամիջոց է կապիտալի համար, որի համար որպես ինքնանպատակ գոյություն ունի միայն արժեքը։ Հումքը, նույնիսկ իրային կողմից, արդյունք արտադրելու միջոց է և այլն։

Բայց հիմնական կապիտալի սպառարժեքի բնորոշումը որպես մի կապիտալի, որ սպառում է իրեն արտադրության բուն պրոցեսում, նույնական է նրան, որ հիմնական կապիտալն այդ պրոցեսում գործադրվում է որպես սոսկ միջոց և որ նա ինքը գոյություն ունի սոսկ որպես հումքն արդյունքի փոխարկելու ագենտ։ Նրա սպառարժեքը՝ որպես այդպիսի արտադրամիջոցի, կարող է լինել այն, որ նա պրոցեսի իրականացման սոսկ տեխնոլոգիական պայման է (այն տեղը, որտեղ կատարվում է արտադրության պրոցեսը), ինչպես, օրինակ, շենքերը և այլն։ Կամ թե չէ այդ կապիտալը անմիջական պայման է բուն արտադրամիջոցի գործման համար, ինչպես, օրինակ, բոլոր օժանդակ նյութերը։ Եվ շենքերը, և օժանդակ նյութերը դարձյալ միայն իրային նախադրյալներ են արտադրության պրոցեսն իրականացնելու համար առհասարակ, կամ նախադրյալներ են աշխատանքի միջոցների կիրառության ու պահպանման համար։ Իսկ աշխատանքի միջոցը, բուն իմաստով, կիրառվում է միայն արտադրության շրջանակներում ու արտադրության համար և չունի ոչ մի այլ սպառարժեք։

Սկզբնապես, երբ մենք քննարկում էինք արժեքի անցումը կապիտալի, աշխատանքի պրոցեսը պարզապես ներառվում էր կապիտալի մեջ, իսկ կապիտալն իր իրային պայմաններով, իր



նյութական կեցությամբ հանդես էր գալիս որպես այդ պրոցեսի պայմանների ամբողջություն և համապատասխան այդ պրոցեսի բաժանվում էր որոշակի, որակապես տարբեր մասերի—այնպիսիների, ինչպիսիք են՝ աշխատանքի նյութ (հենց այս տերմինն է և ոչ թե «հում նյութ», ճիշտ արտահայտում համապատասխան հասկացությունը), աշխատանքի միջոց և կենդանի աշխատանք: Մի կողմից, կապիտալը՝ համապատասխան իր նյութական կազմի, տրոհվում էր այդ երեք տարրերի, մյուս կողմից՝ այդ երեք մոմենտների շարժուն միասնությունը (կամ նրանց համատեղ մուտք գործումը պրոցեսի մեջ) հանդես էր գալիս որպես աշխատանքի պրոցես, իսկ նրանց հանգչող միասնությունը՝ որպես արդյունք։ Իրային տարրերը՝ աշխատանքի նյութը, աշխատանքի միջոցը և կենդանի աշխատանքը հանդես են գալիս այդ ձևով որպես կապիտալի կողմից յուրացվող աշխատանքի բուն պրոցեսի էական մոմենտներ։

…Քանի դեռ աշխատանքի միջոցը մնում է որպես աշխատանքի միջոց բառիս բուն իմաստով, այնպես, ինչպես նա անմիջականորեն, պատմականորեն ներառված է կապիտալի կողմից նրա արժեքի մեծացման պրոցեսի մեջ, նա կրում է միայն ձևական փոփոխություն, որ հանգում է նրան, որ հիմա նա հանդես է գալիս ոչ միայն որպես աշխատանքի միջոց՝ իր իրային կողմից, այլ, դրա հետ միասին, որպես կապիտալի ամբողջական պրոցեսի կողմից որոշվող նրա գոյության հատուկ եղանակ,— հանդես է գալիս որպես՝ հիմնական կապիտալ:

Սակայն ներառված լինելով կապիտալի արտադրության պրոցեսը, աշխատանքի միջոցն անցնում է տարբեր փոխակերպումների միջով, որոնցից վերջինը մեքենան է կամ, ավելի ճիշտ, մեքենաների ավտոմատ սիստեմը (ավտոմատ հանդիսացող մեքենաների սիստեմը սոսկ մեքենաների սիստեմի առավել ավարտուն, առավել ադեկվատ սիստեմն է, և միայն նա է մեքենաները փոխարկում սիստեմի), որը շարժման մեջ է դրվում ավտոմատի կողմից, այնպիսի շարժիչ ուժի կողմից, որն ինքն է իրեն շարժման մեջ դնում։ Այդ ավտոմատ ֆաբրիկան կազմված է բազում մեխանիկական և ինտելեկտուալ օրգաններից, այնպես որ բանվորներն իրենք որոշվում են միայն որպես նրա գիտակից անդամներ։ Մեքենայի, և առավել ևս՝ մեքենաների համակցության մեջ, որ հանդես է գալիս որպես ավտոմատ սիստեմ,— աշխատանքի առարկան իր սպառարժեքով, այսինքն՝ իր իրային կեցությամբ անցնում է մի գոյության, որն ադեկվատ է հիմնական կապիտալին և կապիտալին առհասարակ, իսկ այն ձևը, որի պարագայում աշխատանքի միջոցը որպես աշխատանքի անմիջական միջոց ներառվել է կապիտալի արտադրության պրոցեսը, վերացվում է, փոխարկվելով մի ձևի, որ հաստված է իրեն՝ կապիտալի կողմից և համապատասխանում է նրան։

Մեքենան ոչ մի տեսակետից հանդես չի գալիս որպես առանձին բանվորի աշխատանքի առարկա։ Նրա *differentia specifica** -ն ամենևին այն չէ, ինչպես դա տեղ ունի առանձին բանվորի աշխատանքի միջոցի մոտ, որ միջավորի բանվորի՝ դեպի օբյեկտն ուղղված գործունեությունը (ընդհակառակն, բանվորի գործունեությունն այնպես է, որ այն արդեն միայն միջավորում է մեքենայի աշխատանքը, նրա ազդեցությունը հում նյութի վրա՝ հետևում է մեքենային և պահպանում նրան խոչընդոտներից նրա աշխատանքում)։ Այստեղ բանն այնպիսին չէ, ինչպես լինում է գործիքի հետ, որը բանվորը դարձնում է իր մարմնի օրգանը, ոգի տալով նրան իր սեփական վարպետությամբ և իր սեփական գործունեությամբ, և որին տիրապետելու ունակությունը կախված է այդ պատճառով բանվորի ճարտարությունից։ Հիմա, ընդհակառակն, մեքենան, բանվորի փոխարեն օժտված լինելով կարողությամբ և ուժով, ինքն է այն ճարտարը, որն ունի սեփական հոգի՝ որպես մեքենայի մեջ գործող մեխանիկական օրենքներ և իր մշտական ինքնաշարժման համար սպառում է քարածուխ, քսելու յուղ և այլն (օժանդակ նյութեր), ճիշտ այնպես, ինչպես բանվորը սպառում է սննդամթերքներ։ Բանվորի գործունեությունը, որն հանգում է գործունեության պարզ աբստրակցիային, համակողմանիորեն որոշվում և կարգավորվում է մեքենաների շարժումով, և ոչ հակառակը։ Գիտությունը, որն ստիպում է մեքենաների սիստեմի անշունչ անդամներին՝ իրենց կառուցվածքի միջոցով գործել նպատակահարմար կերպով՝ որպես ավտոմատ, գոյություն չունի բանվորի գիտակցության մեջ, այլ մեքենայի միջոցով ներգործում է նրա վրա որպես նրան խորթ մի ուժ, որպես իր՝ մեքենայի, ուժը։

Մեքենաների վրա խարսխված արտադրության մեջ կենդանի աշխատանքի յուրացումը իրայնացած աշխատանքի միջոցով— արժեստեղծող ուժի կամ գործունեության յուրացումը ինքնաբավ արժեքի միջոցով, յուրացում, որը առկա է կապիտալի հասկացության մեջ,— հաստված է որպես արտադրության բուն պրոցեսի բնույթ նաև արտադրության իրային տարրերի և նրա իրային շարժման կողմից։ Արտադրության պրոցեսը դադարել է աշխատանքի պրոցես լինելուց այն իմաստով, որ աշխատանքը դադարել է արտադրության պրոցեսն ընդգրկելուց՝ որպես նրան տիրապետող միասնություն։ Ընդհակառակն, աշխատանքն այժմ հանդես է գալիս սոսկ որպես մի գիտակցական օրգան, որը ցրված է մեխանիկական սիստեմի բազում կետերում առանձին կենդանի բանվորների կերպարով և ենթարկված

* Առանձնահատուկ տարբերություն։— Խմբ.:

է մեքենաների բուն սիստեմի համակցական պրոցեսին, որպես մի գործոն, որը սոսկ սիստեմի օղակներից մեկն է, սիստեմ, որի միասնությունը ոչ թե կենդանի բանվորների մեջ է, այլ կենդանի (ակտիվ) մեքենաների մեջ, որոնք բանվորի եզակի աննշան գործունեության նկատմամբ հանդես են գալիս, ի հակակշիռ նրա, որպես հզոր օրգանիզմ։ Մեքենաների սիստեմի մեջ իրայնացած աշխատանքը աշխատանքի բուն պրոցեսում հակակայում է կենդանի աշխատանքին որպես նրա վրա տիրապետող ուժ, որպիսին կապիտալն է ըստ իր ձևի՝ իբրև կենդանի աշխատանքի յուրացում։

...Մեքենաների սիստեմի մեջ իրայնացված արժեքը, այնուհետև, հանդես է գալիս որպես մի այնպիսի նախադրյալ, որի նկատմամբ եզակի աշխատուժի արժեք ստեղծող էներգիան անէանում է որպես անվերջ փոքր մեծություն։ Մեքենաների սիստեմով պայմանավորված՝ հսկայական մասշտաբի արտադրության միջոցով ստացված արդյունքի մեջ նույնպես անէանում է ամեն մի հարաբերություն արտադրողի անմիջական պահանջմունքի նկատմամբ, ուստի և անմիջական սպառարժեքի նկատմամբ։ Այն ձևով, որով արտադրվում է արդյունք, և այն հարաբերությունների մեջ, որոնց առկայությամբ այն արտադրվում է, արդեն ենթադրված է, որ արդյունքն արտադրվում է որպես արժեք կրող, իսկ նրա սպառարժեքը հանդես է գալիս որպես միայն պայման դրա համար։ Ինքը՝ իրայնացված աշխատանքն անմիջականորեն հանդես է գալիս մեքենաների սիստեմի մեջ ոչ միայն արդյունքի ձևով, կամ որպես արտադրամիջոց գործադրվող արդյունքի ձևով, այլ բուն արտադրողական ուժի ձևով։ Աշխատանքի միջոցների զարգացում-վերածումը մեքենաների սիստեմի պատահական չէ կապիտալի համար, այլ ներկայացնում է իրենից տրադիցիոն, ժառանգված աշխատանքի միջոցների պատմական վերափոխությունը, նրանց փոխարկումը կապիտալին ադեկվատ աշխատանքի միջոցների։ Այսպիսով, գիտելիքների ու ունակությունների կուտակումը, հասարակական ուղեղի համընդհանուր արտադրողական ուժերի կուտակումը կլանվում է կապիտալի կողմից ի հակակշիռ աշխատանքի, ուստի և հանդես է գալիս որպես կապիտալի հատկություն, իսկ ավելի որոշակի՝ որպես հիմնական կապիտալի հատկություն՝ հենց որ սա մտնում է արտադրության պրոցես որպես իսկական արտադրամիջոց։

...Որքանով, այնուհետև, մեքենաների սիստեմը զարգանում է հանրային գիտելիքների և առհասարակ արտադրողական ուժի կուտակման հետ միասին, այնքանով ոչ թե բանվորը, այլ կապիտալն է հանդես գալիս որպես համընդհանուր հանրային աշխատանքի ներկայացուցիչ։ Հասարակության արտադրողական ուժը չափվում է հիմնական կապիտալով, առարկայական ձևով գոյություն ունի նրա մեջ, և, ընդհակառակն, այդ համընդհանուր առաջադիմության հետ միասին, որ կապիտալը յուրացնում է իր համար անվճար, զարգանում է կապիտալի արտադրողական ուժը։ Այստեղ հարկ չկա ամենայն մանրամասնությամբ մտնել մեքենաների սիստեմի զարգացման քննարկման մեջ. այդ քննարկումն այստեղ անհրաժեշտ է միայն ամենաընդհանուր ձևով, որքանով աշխատանքի միջոցը փոխարկվելով հիմնական կապիտալի՝ կորցնում է— իր իրային կողմից— իր անմիջական ձևը և իրայնորեն հակակայում է բանվորին որպես կապիտալ։ Գիտելիքը մեքենաների սիստեմի մեջ հանդես է գալիս որպես բանվորին խորթ, նրանից դուրս գտնվող ինչ-որ բան, իսկ կենդանի աշխատանքը հանդես է գալիս որպես ենթակա ինքնուրույն գործող իրայնացած աշխատանքին։ Բանվորը ավելորդ է դառնում, եթե միայն նրա գործունեությունը չի պայմանավորված [կապիտալի] պահանջմունքով*։

Եվ այսպես, կապիտալի լիակատար զարգացումը տեղի ունի միայն այն ժամանակ— կամ կապիտալը միայն այն ժամանակ է ստեղծում արտադրության իրեն համապատասխան եղանակ, երբ աշխատանքի միջոցը ոչ միայն ձևականորեն սահմանվել է որպես հիմնական կապիտալ, այլ վերացված է նրա անմիջական ձևը և հիմնական կապիտալը արտադրության պրոցեսի ներսում հակակայում է աշխատանքին որպես մեքենա. իսկ արտադրության ամբողջ պրոցեսը հանդես է գալիս ոչ թե որպես ենթակա բանվորի անմիջական վարպետությանը, այլ որպես գիտության տեխնոլոգիական կիրառություն։ Ուստի կապիտալի տենդենցը արտադրությանը գիտական բնույթ հաղորդելն է, իսկ անմիջական աշխատանքն իջեցվում է մինչև արտադրության պրոցեսի սոսկ մոմենտի։ Ինչպես արժեքի՝ կապիտալի փոխարկվելու վերլուծության դեպքում, այնպես էլ կապիտալի հետագա զարգացումը քննարկելու դեպքում պարզվում է, որ կապիտալը մի կողմից ենթադրում է արտադրողական ուժերի որոշակի տվյալ պատմական զարգացում— այդ արտադրողական ուժերի շարքում նաև գիտության զարգացում,— իսկ մյուս կողմից՝ նրանց առաջ է մղում և արագացնում է նրանց զարգացումը։

...Եթե կապիտալն իր ադեկվատ ձևը որպես սպառարժեք ձեռք է բերում արտադրության պրոցեսի ներսում միայն մեքենաների սիստեմի մեջ և հիմնական կապիտալի կեցության մյուս իրային ձևերի մեջ, այնպիսիների, ինչպես՝ երկաթուղիները և այլն (որոնց մասին մենք կխոսենք հետագայում), ապա դա բնավ չի նշանակում, թե այդ սպառարժեքը, մեքենաների այդ

* Այստեղ ձեռագիրը վնասված է։— Խմբ.։



սիստեմը ինքնին կապիտալ են կամ, որ նրա, որպես մեքենաների սիստեմի, գոյությունը նույնական է նրա գոյությանը որպես կապիտալի։ Ճիշտ այնպես, ինչպես ոսկին չէր զրկվի ոսկու իր սպառարժեքից, եթե նա դադարեր փող լինելուց, այնպես էլ մեքենաների սիստեմը չէր կորցնի իր սպառարժեքը, եթե դադարեր կապիտալ լինելուց։ Այն հանգամանքից, որ մեքենաների սիստեմը ներկայացնում է իրենից հիմնական կապիտալի սպառողական արժեքի առավել ադեկվատ ձևը, ամենևին չի հետևում, թե կապիտալիստական հասարակական հարաբերությանը ենթարկվելը մեքենաների սիստեմ կիրառելու համար առավել ադեկվատ և լավագույն հասարակական արտադրական հարաբերությունն է։

[բ) Կապիտալի՝ որպես արտադրության տիրապետող ձևի, քայքայումը բուրժուական հասարակության զարգացման համեմատ]

Այն նույն չափով, որով աշխատաժամանակը— աշխատանքի հասարակ քանակը— համարվում է կապիտալի կողմից որպես միակ որոշիչ տարր, նույն այդ չափով անմիջական աշխատանքը և նրա քանակությունը անէանում են որպես արտադրության որոշիչ սկզբունք, սպառարժեքների ստեղծում և եթե անմիջական աշխատանքը քանակական կողմից հանգում է նվազ զգալի չափի, ապա որակապես այն փոխարկվում է մի որոշ, թեպետև անհրաժեշտ, բայց երկրորդական մոմենտի համընդհանուր գիտական աշխատանքի նկատմամբ, բնագիտության տեխնոլոգիական կիրառության նկատմամբ, մի կողմից, ճիշտ այնպես, ինչպես և այն համընդհանուր արտադրողական ուժի նկատմամբ, որը աճում է աշխատանքի հասարակական մասնատումից՝ ամբողջական արտադրության մեջ և հանդես է գալիս որպես հանրային աշխատանքի բնական պարգև (թեպետև հանդիսանում է պատմական արդյունք)։ Կապիտալն, այսպիսով, աշխատում է ինքն իր՝ որպես արտադրության տիրապետող ձևի, քայքայման վրա։

Եթե այսպիսով, մի կողմից՝ արտադրության պրոցեսի փոխարկումը աշխատանքի հասարակ պրոցեսից գիտական պրոցեսի, որն իր ծառայության ոլորտն է առնում բնության ուժերը և ստիպում է նրանց գործել մարդկային պահանջմունքներին համապատասխան,— հանդես է գալիս որպես հիմնական կապիտալի հատկություն՝ ի հակակշիռ աշխատանքի. եթե եզակի աշխատանքը որպես այդպիսին առհասարակ դադարում է արտադրողական լինելուց, այլ ընդհակառակն, արտադրողական է հանդիսանում շատերի համատեղ աշխատանքի շրջանակներում, աշխատանքի, որ իրեն է ենթարկում բնության ուժերը, և անմիջական աշխատանքի՝ հանրային աշխատանքի այդ փոխարկումը հանդես է գալիս որպես եզակի աշխատանքի իջեցում մինչև անճարակության աստիճանը՝ կապիտալի մեջ ներկայացված, նրա մեջ կենտրոնացված համատեղության նկատմամբ,— ապա, մյուս կողմից՝ արտադրության մի ճյուղում աշխատանքի պահպանումը արտադրության մյուս ճյուղի գոյակցողական աշխատանքի միջոցով՝ հանդես է գալիս այժմ որպես շրջանառու կապիտալի հատկություն։

...Կապիտալը մեքենա է կիրառում սոսկ այն չափով, որով մեքենան բանվորին հնարավորություն է տալիս իր ժամանակի ավելի զգալի մասը կապիտալի համար աշխատելու, իր ժամանակի ավելի զգալի մասին վերաբերվելու որպես իրեն չպատկանողի, ավելի երկար աշխատելու ուրիշի համար։ Այդ պրոցեսի միջոցով, իրոք, նվազագույնի է հասնում որոշակի առարկա արտադրելու համար անհրաժեշտ աշխատանքի քանակությունը, բայց սոսկ նրա համար, որ նման առարկաների առավելագույնի մեջ իրականացվի առավելագույն հավելյալ արժեք։ Առաջին կողմը կարևոր է այն պատճառով, որ այստեղ կապիտալը— միանգամայն անկանխամտադիր— նվազագույնի է հասցնում մարդկային աշխատանքը, ուժերի ծախսումը։ Դա կգնա հօգուտ ազատագրված աշխատանքի և նրա ազատագրման պայմանն է։

...Միայն այնտեղ, ուր առկա է աշխատուժի [Arbeitskräjte] ավելցուկ, երևան է գալիս մեքենաների սիստեմ, այն նպատակով, որ փոխարինի իրենով աշխատանքը։ Միայն տնտեսագետների երևակայության մեջ է բանն այնպես լինում, որ մեքենաների սիստեմը օգնություն է ցուցաբերում առանձին բանվորին։ Այդ սիստեմը կարող է գործել միայն բանվորների զանգվածների առկայության դեպքում, որոնց՝ կապիտալի նկատմամբ համակենտրոնացումը իրենից, ինչպես տեսանք, ներկայացնում է նրա պատմական նախադրյալներից մեկը։ Մեքենաների սիստեմը երևան է գալիս ոչ թե նրա համար, որ լրացնի աշխատուժի [Arbeitskräfte] պակասությունը, այլ նրա համար, որ աշխատուժի առկա մասսան հասցնի իր անհրաժեշտ մասշտաբին։ Մեքենաների սիստեմը երևան է գալիս միայն այնտեղ, ուր աշխատուժը առկա է զանգվածային չափով (դրան պետք է վերադառնալ)։

...Կապիտալի կողմից կենդանի աշխատանքի յուրացումը մեքենայական արտադրության դեպքում անմիջական ռեալություն է ձեռք բերում նաև հետևյալ իմաստով։ Մի կողմից, հենց անմիջականորեն գիտությունից ծնունդ առնող՝ մեխանիկական և քիմիական օրենքների վերլուծությունն ու կիրառությունը մեքենային ընդունակ են դարձնում կատարելու նույն այն աշխատանքը, որն առաջ կատարում էին բանվորները։ Սակայն այս ուղիով մեքենաների սիստեմի զարգացումն սկսվում է սոսկ այն ժամանակ, երբ

խոշոր արդյունաբերությունն արդեն հասել է զարգացման ավելի բարձր աստիճանի և բոլոր գիտությունները կապիտալի ծառայությանն են դրված, իսկ մեքենաների առկա սիստեմն ինքն արդեն մեծ ռեսուրսների է տիրապետում։ Գյուտարարությունը դառնում է այն ժամանակ կայուն մասնագիտություն, իսկ անմիջական արտադրության նկատմամբ գիտության կիրառությունն ինքն այդ մասնագիտության համար որոշիչ և առաջմղիչ մոմենտներից մեկն է դառնում։

Սակայն դա այն ուղին չէ, որի վրա ընդհանուր առմամբ ծագել է մեքենաների սիստեմը, և ավելի քիչ է այն ուղին, որով նա զարգանում է մանրամասնություններով։ Մեքենաների սիստեմի զարգացման այդպիսի ուղի է այն վերլուծությունը, որը աշխատանքի բաժանման միջոցով ավելի ու ավելի մեծ չափով բանվորների կողմից կատարվող օպերացիաները փոխարկում են մեխանիկական օպերացիաների, այնպես որ որոշակի էտապում նրանց տեղը կարող է գրավել մեխանիզմը (Ուժի տնտեսման հարցի շուրջը)։ Այսպիսով, այստեղ աշխատանքի որոշակի եղանակը ուղղակի դուրս է գալիս փոխադրված բանվորից կապիտալին՝ մեքենայի ձևով և այդպիսի փոխադրման հետևանքով նրա սեփական աշխատուժը արժեզրկվում է։ Այստեղից՝ բանվորների պայքարը մեքենաների սիստեմի դեմ։ Այն, ինչ կենդանի բանվորի գործունեությունն էր եղել, դառնում է մեքենայի գործունեություն։ Այսպիսով, բանվորին կոպիտ-զգայաբար հակակայում է կապիտալի կողմից աշխատանքի յուրացումը, հակակայում է կապիտալը, որ կլանում է կենդանի աշխատուժը «կարծես նրան համակած սիրո կրքի ազդեցությամբ»։

Կենդանի աշխատանքի փոխանակումը իրայնացված աշխատանքով, այսինքն՝ հանրային աշխատանքի ենթադրումը կապիտալի և վարձու աշխատանքի հակադրության ձևով, արժեքային հարաբերության և արժեքի վրա խարսխված արտադրության զարգացման վերջին աստիճանն է։ Այդ վերջին աստիճանի նախադրյալը հանդիսանում է և շարունակում է մնալ անմիջական աշխատաժամանակի զանգվածը, ծախսված աշխատանքի քանակությունը որպես հարստություն արտադրելու վճռական գործոն։ Բայց խոշոր արդյունաբերության զարգացման զուգընթաց իսկական հարստության ստեղծումը ավելի քիչ է կախված դառնում աշխատաժամանակից և ծախսված աշխատանքի քանակությունից, քան այն ագենտների հզորությունից, որոնք շարժման մեջ են դրվում աշխատաժամանակի ընթացքում և որոնք իրենք, իրենց հերթին (նրանց հզոր արդյունավետությունը), ոչ մի համաձայնության մեջ չեն գտնվում իրենց արտադրության համար պահանջվող անմիջական աշխատաժամանակի հետ, այլ ավելի շուտ կախված են գիտության ընդհանուր մակարդակից և տեխնիկայի առաջադիմությունից կամ այդ գիտության կիրառումից արտադրության նկատմամբ։ (Այդ գիտության, առանձնապես բնագիտության, իսկ նրա հետ միասին և մյուս բոլոր գիտությունների, զարգացումն ինքը, իր հերթին, համապատասխանության մեջ է գտնվում նյութական արտադրության զարգացման հետ)։ Երկրագործությունը, օրինակ, դառնում է սոսկ միայն նյութական նյութափոխանակության վերաբերյալ գիտության կիրառություն, որը կարգավորում է այդ նյութափոխանակությունը՝ ամբողջ հասարակական օրգանիզմի համար առավելագույն շահավետությամբ։

Իսկական հարստությունը պատկերանում է այժմ— և դա բացահայտվում է խոշոր արդյունաբերության կողմից— ավելի շուտ՝ ծախսված աշխատաժամանակի և նրա արդյունքի միջև գոյացած հրեշավոր անհամամասնության ձևով՝ ճիշտ այնպես, ինչպես և որակական անհամամասնության ձևով՝ հասարակ աբստրակցիայի հանգեցրված աշխատանքի և արտադրական այն պրոցեսի հզորության միջև, որն այդ աշխատանքը վերահսկողության տակ է պահում։ Արդեն ոչ այնքան աշխատանքն է հանդես գալիս որպես արտադրության պրոցեսի մեջ ներառված, որքան մարդը, ընդհակառակն, վերաբերում է արտադրության պրոցեսին որպես նրա վերահսկիչն ու կարգավորիչը։ (Այն, ինչ ուժ ունի մեքենաների սիստեմի նկատմամբ, ճիշտ է նաև մարդկային գործունեության տարբեր տեսակների կոմբինացիայի և մարդկային հաղորդակցման զարգացման համար)։ Այժմ բանվորն արդեն իր և օբյեկտի միջև որպես միջակա օղակ չի տեղավորում բնության ձևափոխված առարկան. այժմ իր և անօրգանական բնության միջև, որին բանվորը տիրապետում է, նա որպես միջակա օղակ տեղավորում է բնական պրոցեսը, որը նրա կողմից վերափոխվում է արդյունաբերական պրոցեսի։ Փոխանակ այն բանի, որ լինի արտադրության պրոցեսի գլխավոր ագենտը, բանվորը կանգնում է նրա հետ կողքկողքի։

Այդ փոխարկման մեջ որպես արտադրության և հարստության գլխավոր հիմք հանդես է գալիս ոչ թե մարդու՝ իրեն կողմից կատարվող աշխատանքը, և ոչ թե այն աշխատանքը, որի ընթացքում նա աշխատում է, այլ իր սեփական համընդհանուր արտադրողական ուժի յուրացումը, բնության նրա ըմբռնումը և նրա տիրապետումը՝ իր կեցության որպես հասարակական օրգանիզմի հետևանքով,— մի խոսքով՝ հասարակական ինդիվիդի զարգացումը։ Ուրիշի աշխատաժամանակի գողացումը, որի վրա խարսխված է արդի հարստությունը, ողորմելի հիմք է այդ նոր զարգացած հիմքի համեմատությամբ, որ ստեղծված է իր՝ խոշոր արդյունաբերության կողմից։ Հենց որ աշխատանքն իր անմիջական ձևով դադարեց հարստության մեծ աղբյուրը լինելուց, աշխատաժամանակը դադարում է և պետք է դադարի հարստության չափ լինելուց, ուստի և փոխանակային արժեքը դադարում է սպառարժեքի չափ լինելուց։ Բանվորական զանգվածների հավելյալ աշխատանքը դադարում է համընդհանուր հարստության զարգացման համար պայման լինելուց, ճիշտ այնպես, ինչպես քչերի ոչ-աշխատանքը դադարել է մարդկային գլխի համընդհանուր ուժերի զարգացման պայման լինելուց։ Դրանով իսկ խորտակվում է փոխանակային արժեքի վրա խարսխված արտադրությունը, իսկ արտադրության բուն անմիջական նյութական պրոցեսի վրայից հանվում է խղճուկության և անտագոնիստականության ձևը։ Կատարվում է անհատականությունների ազատ զարգացումը, ուստի և տեղի է ունենում ոչ թե անհրաժեշտ աշխատաժամանակի կրճատում հանուն հավելյալ աշխատանքի գոյացման, այլ առհասարակ հասարակության անհրաժեշտ աշխատանքի հանգեցում նվազագույնի, որին այդ պայմաններում համապատասխանում է ինդիվիդների գեղարվեստական, գիտական և այլ զարգացումը շնորհիվ բոլորի համար ազատված աշխատանքի և դրա համար ստեղծված միջոցների։

Կապիտալն ինքն իրենից ներկայացնում է պրոցես կատարող հակասություն, որ հանգում է նրան, որ նա, մի կողմից, խոչընդոտում է աշխատաժամանակը նվազագույնին հասցնելուն, իսկ մյուս կողմից՝ աշխատաժամանակը դարձնում է հարստության միակ չափն ու աղբյուրը։ Ուստի կապիտալը կրճատում է աշխատաժամանակը անհրաժեշտ աշխատաժամանակի ձևով, այն հաշվով, որ այն մեծացվի հավելուրդային աշխատաժամանակի ձևով. ուստի՝ կապիտալը ավելի ու ավելի աճող չափով հավելուրդային աշխատանքը դարձնում է պայման— կենաց և մահու հարց— անհրաժեշտ աշխատաժամանակի համար։ Մի կողմից՝ կապիտալը կյանքի է կոչում գիտության ու բնության բոլոր ուժերը, ճիշտ այնպես, ինչպես և հասարակական կոմբինացիայի և սոցիալական հաղորդակցման ուժերը,— որպեսզի հարստության ստեղծումը դարձնի անկախ (հարաբերաբար) այդ ստեղծման համար ծախսվող աշխատաժամանակից։ Մյուս կողմից՝ կապիտալն ուզում է այդ ձևով ստեղծված այդ հսկայական հանրային ուժերը չափել աշխատաժամանակով և խցկել դրանք այնպիսի սահմանների մեջ, որոնք անհրաժեշտ են արդեն ստեղծված արժեքը որպես արժեք պահելու համար։ Արտադրողական ուժերը և հասարակական հարաբերությունները— թե՛ առաջինները և թե՛ մյուսները հասարակական անհատի զարգացման տարբեր կողմերն են— ներկայացվում են կապիտալին սոսկ որպես միջոց և նրան սոսկ միջոց են ծառայում այն բանի համար, որ արտադրվի իր սահմանափակ հիմքի վրա։ Բայց իրականում նրանք իրենցից ներկայացնում են նյութական պայմաններ այդ հիմքը պայթեցնելու համար։

Բնությունը չի կառուցում ոչ մեքենաներ, ոչ շոգեկառքեր, ոչ երկաթուղիներ, ոչ էլեկտրական հեռագիր, ոչ սելֆակտորներ և այլն։ Դրանք բոլորը մարդկային աշխատանքի արդյունքներ են, բնական նյութ, որ փոխարկված է բնության վրա իշխող մարդկային կամքի, կամ բնության մեջ մարդկային գործունեության օրգանների։ Դրանք բոլորը մարդկային ձեռքով ստեղծված մարդկային ուղեղի օրգաններ են, գիտելիքի իրայնացված ուժ։ Հիմնական կապիտալի զարգացումը ցուցանիշն է այն բանի, թե ի՛նչ աստիճանի է համընդհանուր գիտելիքը [Wissen, Knowledge] փոխարկվել անմիջական արտադրողական ուժի, և այստեղից՝ ցուցանիշն այն բանի, թե ի՛նչ չափով բուն հասարակական կենսապրոցեսի պայմանները ենթարկված են համընդհանուր ինտելեկտի վերահսկողությանը և փոխակերպված են նրան համապատասխան, թե ի՛նչ չափով հասարակական արտադրողական ուժերը ստեղծված են ոչ միայն գիտելիքի ձևով, այլև որպես հասարակական պրակտիկայի, ռեալ կենսապրոցեսի անմիջական օրգաններ։

[գ) Արտադրության միջոցների արտադրության աճը աշխատանքի արտադրողականության աճի հետևանքով: Ազատ ժամանակը կապիտալիստական հասարակության մեջ և կոմունիզմի օրոք]:

Հիմնական կապիտալի զարգացումը առհասարակ հարստության զարգացման աստիճանի—կամ կապիտալի զարգացման աստիճանի— ցուցանիշն է նաև մի այլ կողմից: Անմիջականորեն սպառողական արժեքին ուղղված և նույն չափով էլ անմիջականորեն՝ փոխանակային արժեքին ուղղված արտադրության օբյեկտը ինքը արդյունքն է, որը նախորոշված է [անհատական] սպառման համար։ Արտադրության այն մասը, որն ուղղված է հիմնական կապիտալի արտադրությանը, անմիջականորեն չի ստեղծում ոչ անհատական սպառման առարկաներ, ոչ էլ անմիջական փոխանակային արժեքներ— համենայն դեպս այնպիսի փոխանակային արժեքներ, որոնք անմիջականորեն կարող են իրացվել։ Այսպիսով՝ արտադրողականության արդեն հասած մակարդակից— այն մակարդակից, որ անմիջական արտադրության համար բավական է արտադրության ժամանակի մի մասը— կախված է այն, որ արտադրական ժամանակի ավելի ու ավելի մեծ մասն է ծախսվում արտադրության միջոցների արտադրության վրա:

Դրա համար պահանջվում է, որ հասարակությունը կարողանա սպասել, որ արդեն ստեղծված հարստության նշանակալից մասը նա կարողանա հանել ինչպես անմիջական անհատական սպառումից, այնպես էլ անմիջական անհատական սպառման համար նախորոշված արտադրությունից, այն հաշվով, որ հարստության

այդ մասը ծախսվի անմիջական արտադրություն չհանդիսացող (բուն նյութական արտադրության պրոցեսի սահմաններում) աշխատանքի վրա։

...Հասարակության համար առհասարակ և հասարակության յուրաքանչյուր անդամի համար անհրաժեշտ աշխատանքի սահմաններից դուրս մեծ քանակությամբ աշխատաժամանակի ստեղծումը (այսինքն՝ առանձին մարդու, ուստի նաև հասարակության արտադրողական ուժերի ամբողջ լրիվության զարգացման համար ասպարեզ ստեղծելը)— ոչ-աշխատաժամանակի այդ ստեղծումը կապիտալի ստադիայում, ինչպես և բոլոր ավելի վաղ աստիճաններում, հանդես է գալիս որպես ոչ-աշխատաժամանակ, որպես ազատ ժամանակ քչերի համար։ Կապիտալն այստեղ ավելացնում է այն, որ նա արվեստի և գիտության բոլոր միջոցներով ավելացնում է ժողովրդական զանգվածների հավելյալ աշխատաժամանակը, քանի որ նրա հարստությունը անմիջականորեն հանգում է հավելյալ աշխատաժամանակի յուրացմանը. չէ՞ որ կապիտալի անմիջական նպատակը արժեքն է, և ոչ թե սպառարժեքը։

Կապիտալն, այսպիսով, իր կամքից անկախ, հանդես է գալիս որպես հանրային ազատ ժամանակի համար, ամբողջ հասարակության աշխատաժամանակը մշտապես կրճատվող նվազագույնին հանգեցնելու համար պայմաններ ստեղծելու միջոց, և դրանով իսկ միջոց [հասարակության] բոլոր [անդամների] ժամանակը ազատելու համար՝ նրանց սեփական զարգացման նպատակով։ Բայց կապիտալի մշտական տենդենցը հանգում է, մի կողմից, ազատ ժամանակի ստեղծմանը, իսկ մյուս կողմից՝ այդ ազատ ժամանակը հավելյալ աշխատանքի փոխարկելուն։ Եթե առաջինը նրան չափազանց լավ է հաջողվում, ապա նա սկսում է տառապել ավելցուկային արտադրությունից, և այդ ժամանակ անհրաժեշտ աշխատանքն ընդհատվում է, որովհետև կապիտալն ի վիճակի չէ իրացնելու հավելյալ աշխատանքը։

Ինչքան շատ է զարգանում այդ հակասությունը, այնքան պարզ է դառնում, որ արտադրողական ուժերի աճն այլևս չի կարող գամվել ուրիշի հավելյալ ժամանակի յուրացմանը, և որ բանվորական զանգվածները պետք է իրենք յուրացնեն իրենց հավելյալ աշխատանքը։ Երբ նրանք սկսեն դա կատարել— և դրանով իսկ ազատ ժամանակը դադարի գոյություն ունենալ անտագոնիստական ձևով,— այն ժամանակ, մի կողմից, անհրաժեշտ աշխատաժամանակի չափ կդառնան հասարակական ինդիվիդի պահանջմունքները, իսկ մյուս կողմից, հասարակական արտադրողական ուժի զարգացումը պիտի կատարվի այնքան արագ, որ թեև արտադրությունը պիտի նախորոշված լինի բոլորի հարստության համար, բոլորի ազատ ժամանակը կաճի։ Որովհետև իսկական հարստությունը բոլոր ինդիվիդների զարգացած արտադրողական ուժն է։ Այն ժամանակ հարստության չափը կլինի բնավ ոչ արդեն աշխատաժամանակը, այլ ազատ ժամանակը։ Աշխատաժամանակը որպես հարստության չափ ենթադրում է, որ ինքը՝ հարստությունը խարսխված է աղքատության վրա և որ ազատ ժամանակը գոյություն ունի որպես հակադրություն հավելյալ աշխատաժամանակին և շնորհիվ այդ հակադրությանը, կամ շնորհիվ նրան, որ ինդիվիդի ամբողջ ժամանակը ենթադրվում է որպես աշխատաժամանակ, ուստի և շնորհիվ նրան, որ այդ ինդիվիդը իջեցվում է մինչև միայն բանվորի դրության, շնորհիվ նրան, որ նա ենթարկված է աշխատանքի լծին։ Ուստի մեքենաների ամենազարգացած սիստեմը այժմ բանվորին ստիպում է աշխատել ավելի երկար, քան աշխատում է վայրենին, կամ ավելի երկար, քան աշխատում էր այդ նույն բանվորը, երբ նա օգտվում էր ամենահասարակ, ամենապրիմիտիվ գործիքներից։

Այնպես, ինչպես խոշոր արդյունաբերության զարգացման հետ միասին այն բազիսը, որի վրա նա խարսխվում է— ուրիշի աշխատաժամանակի յուրացումը— դադարում է հարստություն կազմել կամ ստեղծել, այդպես էլ նրա այդ զարգացման հետ միասին անմիջական աշխատանքը որպես այդպիսին դադարում է արտադրության բազիս լինել, որովհետև, մի կողմից, նա դառնում է գլխավորապես հսկման և կարգավորման գործունեություն, իսկ այնուհետև նաև այն պատճառով, որ արդյունքը դադարում է եզակի անմիջական աշխատանքի արդյունքը լինելուց և որպես արտադրող հանդես է գալիս ավելի շուտ հանրային գործունեության կոմբինացիան։

Անմիջական փոխանակության մեջ եզակի անմիջական աշխատանքը հանդես է գալիս մի ինչ-որ հատուկ արդյունքում կամ արդյունքի մի մասում մարմնացած, իսկ նրա [եզակի անմիջական աշխատանքի] սոցիալական, հասարակական բնույթը— աշխատանքի՝ որպես համընդհանուր աշխատանքի մարմնացման և որպես համընդհանուր պահանջմունքների բավարարման [միջոցի] բնույթը— տրված է միայն փոխանակության միջոցով։ Ընդհակառակը, խոշոր արդյունաբերության արտադրական պրոցեսում, մի կողմից, ավտոմատ պրոցեսի վերածված աշխատանքի միջոցից արտադրողական ուժի համար նախապայման է հանդիսանում բնության ուժերի ենթարկումը հանրային բանականությանը. մյուս կողմից՝ առանձին ինդիվիդի աշխատանքը նրա [աշխատանքի] անմիջական կեցության մեջ հաստված է որպես վերացված առանձին աշխատանք, այսինքն՝ հաստված է որպես հանրային աշխատանք։ Այսպիսով, վերանում է արտադրության այդ եղանակի և մյուս բազիսը։



...Իսկական տնտեսումը— խնայումը— աշխատաժամանակի խնայումն է (արտադրության ծախսերի մինիմում— և մինիմումի հանգեցում)։ Բայց այդ խնայողությունը նույնական է արտադրողական ուժի զարգացմանը։ Հետևաբար— բնավ ոչ թե հրաժարումն սպառումից, այլ արտադրողական ուժի զարգացում, արտադրելու ունակությունների զարգացում, ուստի և ինչպես սպառելու ունակությունների, այնպես էլ սպառման միջոցների զարգացում։ Սպառելու ունակությունը սպառման պայմանն է հանդիսանում, հետևաբար, առաջնակարգ միջոց է սպառման համար, և այդ ունակությունն իրենից ներկայացնում է որոշ անհատական տվյալի, արտադրողական որոշ ուժի զարգացում։

Աշխատաժամանակի խնայողությունը հավասարազոր է ազատ ժամանակի մեծացմանը, այսինքն՝ ինդիվիդի այն լիակատար զարգացման համար պահանջվող ժամանակի, որն ինքը, իր հերթին, որպես մեծագույն արտադրողական ուժ հակառակ ներգործություն է ունենում աշխատանքի արտադրողական ուժի վրա։ Արտադրության անմիջական պրոցեսի տեսակետից աշխատաժամանակի խնայողությունը կարելի է դիտել որպես հիմնական կապիտալի արտադրություն, ընդ որում այդ հիմնական կապիտալը՝ ինքը մարդն է։

Սակայն, ինքնին հասկանալի է, որ ինքը՝ անմիջական աշխատաժամանակը չի կարող աբստրակտ հակադրության վիճակի մեջ մնալ ազատ ժամանակի նկատմամբ, ինչպես դա պատկերացվում է բուրժուական քաղաքատնտեսության տեսակետից։ Աշխատանքը չի կարող խաղ դառնալ, ինչպես դա ցանկանում է Ֆուրիեն, որին պատկանում է այն մեծ ծառայությունը, որ նա վերջնական նպատակ հայտարարեց ոչ թե սպառման, այլ արտադրության բուն եղանակի ավելի բարձր աստիճանի վերափոխությունը։ Ազատ ժամանակը— որ իրենից ներկայացնում է ինչպես ժամանց, այնպես էլ ժամանակ ավելի վեհ գործունեության համար— հասկանալի է, դարձնում է նրան, ով ունի այդ ժամանակը, մի այլ սուբյեկտ, և որպես այդ այլ սուբյեկտ նա էլ հետո մտնում է արտադրության անմիջական պրոցեսը։ Արտադրության այդ անմիջական պրոցեսը ձևավորվող մարդու նկատմամբ դրա հետ միասին կարգապահության դպրոց է, իսկ ձևավորված մարդու նկատմամբ, մարդու, որի գլխում ամրակայվել են հասարակության կուտակած գիտելիքները, նա իրենից ներկայացնում է [գիտելիքների] կիրառություն, էքսպերիմենտալ գիտություն, նյութականորեն ստեղծագործական և առարկայորեն մարմնացած գիտություն։ Ե՛վ մեկի, և՛ մյուսի համար արտադրության պրոցեսը դրա հետ միասին ֆիզիկական վարժություն է, որքանով որ աշխատանքը պահանջում է ձեռքերի պրակտիկ գործադրում և ազատ շարժում, ինչպես հողագործության մեջ։

Ինչպես բուրժուական էկոնոմիկայի սիստեմը մեր առջև ծավալվում է սոսկ քայլ առ քայլ, այդպես էլ բանը տեղի ունի և նրա ինքնաբացասման նկատմամբ, որը և նրա վերջնական արդյունքն է։ Մենք այժմ դեռևս գործ ունենք արտադրության անմիջական պրոցեսի հետ։ Եթե քննարկենք բուրժուական հասարակությունը իր ամբողջության մեջ, ապա որպես արտադրության հանրային պրոցեսի վերջնական արդյունք միշտ հանդես է գալիս ինքը՝ հասարակությունը՝ այսինքն՝ մարդն ինքը իր հասարակական հարաբերությունների մեջ։

(«Вопросы философии», № 7, 1967. հայերեն թարգմանությունը տրվում է որոշ կրճատումներով)։



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Հ. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԸ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՖԵԴԵՐԱՏԻՎ ՁԵՎԻ ՄԱՍԻՆ

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Ստեփան Շահումյանի՝ ազգային հարցին նվիրված տեսական ժառանգության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում սոցիալիստական ազգային պետականության կազմակերպման ու ձևավորման հարցերը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Շահումյանը մեծ հետաքրքրություն է ցուցաբերել ֆեդերացիայի հարցի նկատմամբ, մարքս-լենինյան դիրքերից պարզաբանել քաղաքական ու տեսական այդ կարևոր պրոբլեմի էությունը։

Ֆեդերացիայի հարցը քննելիս, Շահումյանը հաշվի է առել այս կամ այն երկրի կոնկրետ պայմանները, սոցիալիստական հեղափոխության արմատական շահերը։ «Մեր միակ հիմնական սկզբունքը,— գրում էր նա 1906 թ.,— հիմնական կրիտերին՝ երկրի տնտեսական և կուլտուրական բարգավաճումն է, մարդկանց բարօրությունը։ Իսկ դրա համար մենք ունենք շատ որոշ, շատ ռեալ ու կոնկրետ մի չափ։ Դա պրոլետարիատի դասակարգային շահերն են, նրա միջազգային ազատագրական շարժման շահերը» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 217)։

* * *

1902 թ. հոկտեմբերին լենինյան-իսկրայական ուղղության «Պրոլետարիատ» հայերեն թերթում տպագրվում է «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստը», որի հեղինակները, այդ թվում և Շահումյանը, խոսելով պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտության մասին, նշում են, որ ցարական միապետությունը բազմազգ պետություն է դարձել բռնության ճանապարհով, որ ազգային փոքրամասնությունների նկատմամբ ցուցաբերված մեծապետական շովինիզմը, արհամարհանքը, հալածանքը թշնամանք են առաջացրել ազգերի միջև և ինքնակալության տապալումով ազգային փոքրամասնությունները հնարավորություն կունենան անջատվել։ Ընդ որում, մեկ պետության մեջ միավորելու համար նրանց անհրաժեշտ է ընտրել սոցիալիստական պետության ֆեդերատիվ ձևը։



«Ինքնորոշման իրավունքը,— գրել է Շահումյանը,— չի նշանակում միայն անջատման իրավունք։ Նա նշանակում է նաև ֆեդերատիվ կապի իրավունք, ավտոնոմիայի իրավունք» (Ստ. Շահումյան, Նամակներ, էջ 35—36)։ Մենք «...չենք քարոզում անջատում, այլ ընդունում ենք միայն անջատման իրավունքը, որպես տարրական դեմոկրատական իրավունք, որը թույլ չի տալիս բռնություն այն մանր ազգերի նկատմամբ, որոնք ճնշվում էին ցարական կառավարության և վելիկոռուսական նացիոնալիստների կողմից» (Նույն տեղը, էջ 40)։ Երբ կյանքը ստեղծել է այնպիսի վիճակ, որ անիմաստ է անջատվել, սոցիալ-դեմոկրատիան չպետք է առաջ քաշի ֆեդերացիայի խնդիրը։ Բայց երբ առկա է անջատման վտանգը, առանց վախենալու պետք է անջատվել։ «...մենք կողմնակից ենք լինելու անջատման և անջատումը պաշտպանելու ենք այն դեպքերում, երբ այդ թելադրում են աշխատավոր մասսաների շահերը, և երբ այդ պահանջում են իրենք՝ ազգի մեծամասնությունը կազմող մասսաները» (Նույն տեղը, էջ 40)։ Պաշտպանելով լենինյան դիրքորոշումը, Շահումյանն իր գործնական, պրոպագանդիստական ու տեսական աշխատանքներում պայքարում էր պրոլետարիատի դիկտատուրայի միասնական, կենտրոնացված պետության համար, որպես բոլոր ազգերի միասնության լավագույն միջոց։

1917 թ. հոկտեմբերի 6-ին ՌՍԴ(բ)Կ-ի կովկասյան մարզային համագումարում Շահումյանը ընդգծում էր, որ կուսակցության II համագումարի ազգային ծրագիրը միաժամանակ նախատեսում է՝ մարզային ինքնավարություններում տնտեսական և կենցաղային առանձնահատկությունների հաշվառում, ազգերի ինքնորոշման իրավունք, ընդհուպ մինչև ինքնուրույն պետության կազմավորումը։ Քննադատելով Թորոշելիձեի զեկուցումը, նա ցույց է տալիս, որ տասը տարի առաջ կազմված ծրագիրն այսօրվա աչքով նայելու դեպքում կարող է թերություններ ունենալ, հատկապես իրադրության լուրջ փոփոխության պատճառով. ազգային հարցին անհրաժեշտ է մոտենալ ինչպես թեորիական, այնպես և գործնական տեսակետից, որովհետև թեորիան ստուգվում է պրակտիկայում։

Ստ. Շահումյանի աչքից չէին վրիպել փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո տեղի ունեցած փոփոխությունները։

Այդ օրերին գտնվելով ծանր պայմաններում, որն ստեղծել էին բազմազգ Բաքվի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունները, նա ձգտում էր գտնել ազգային հարցի լուծման ուղիներ։ Դեռևս իրազեկ չլինելով ֆեդերացիայի հարցում Վ. Ի. Լենինի նոր դիրքորոշմանը, նա, այնուամենայնիվ, չէր վախենում Ռուսաստանի ազգերի ապակենտրոնացումից, համոզված էր, որ բոլոր ազգերի բանվորների գիտակից մասն իրար հետ կապված է ամրապնդվող ինտերնացիոնալ կապերով։ «Մենք,— ասել է Շահումյանը,— ընդհուպ մոտենում ենք սոցիալական հեղափոխությանը, հետևաբար մեզ քիչ պետք է վախեցնի ապակենտրոնացումը» (Երկեր, հ. II, էջ 515)։

Հետհոկտեմբերյան շրջանի իր ելույթներում նա գտնում էր, որ միասնական սոցիալիստական պետության ստեղծման լավագույն և հնարավոր ձևը՝ ֆեդերացիան է։ Հետևողականորեն պայքարելով Անդրկովկասում սովետական կարգեր հաստատելու համար, նա ջանում էր ամեն ինչ անել, որ այն անբաժան լինի Սովետական Ռուսաստանից։

* * *

Հասարակական-քաղաքական երևույթների գնահատման հարցում Շահումյանը ցուցաբերում էր պատմական կոնկրետ մոտեցում։ Խոսելով ֆեդերացիայի մասին, նա նշում է, որ այն, ինչ ճշմարիտ է ընդհանրապես, կարող է երբեմն սխալ լինել մասնավորապես, որ վերացական ճշմարտություններ չկան, ճշմարտությունը միշտ կոնկրետ է. «...մեզ համար չկա, «այոն այո, և ոչն ոչ» (Երկեր, հ. I, էջ 216)։ Եթե մարքսիստները գտնում են, որ պատմական զարգացումը հանգեցնում է ազգերի միացմանը և ոչ բաժանմանը, դա դեռ չի նշանակում, որ միշտ ու ամեն տեղ, ամեն մի առանձին դեպքում նրանք դեմ են բաժանման և կողմնակից միայն կենտրոնացման։ Հաշվի առնելով ժամանակը և պայմանները, նրանք կողմնակից են եղել նաև այս կամ այն պետության բաժանմանը։ «Եվ դեռ ավելին կասենք. ամեն մի առանձին պետության մեջ, ամեն մի առանձին ազգության հարցը մենք պետք է քննենք առանձին և անկախ, իր ուրույն պայմանների մեջ։ Կարող է պատահել, որ այսինչ ազգության վերաբերմամբ ավելի նպատակահարմար կլինի պահանջել անջատումն, կամ ֆեդերացիա, կամ ավտոնոմիա» (Նույն տեղը)։ Անջատում, ֆեդերացիա կամ ավտոնոմիա կարող է լինել այն դեպքում, երբ այս կամ այն ազգության տնտեսական շահերը չեն համապատասխանում տվյալ պետական օրգանիզմ կազմող մյուս ազգերի մակարդակին, «...երբ այդ ազգությունը փաստորեն մի տնտեսական-հասարակական օրգանիզմ չի կազմում իր կենակից մյուս ազգությունների հետ» (Նույն տեղը)։

Երկրորդ, երբ տնտեսական խանգարիչ հանգամանքներ չկան, բայց քաղաքական, իրավական, հոգեբանական այնպիսի վիճակ է ստեղծվել, երբ մեկ պետության մեջ մի ազգի համատեղ կյանքը մյուսների հետ անհամատեղելի է։ «Այդ դեպքերը, թե՛ առաջին, և թե՛ մանավանդ երկրորդ տեսակի, կարող են ներկայանալ իբրև բացառություններ ընդհանուր օրենքից, բայց և այնպես նրանց չի կարելի անտես առնել և տալ մի վերացական, «ընդհանուր», «սկզբունքային» որոշում՝ առանց բացառության բոլոր դեպքերի համար» (Նույն տեղը, էջ 217)։

Հանդես գալով բուրժուական ֆեդերացիայի դեմ, Շահումյանը միաժամանակ նշում էր, որ առանձին երկրների համար բացառված չէ պետական միավորման ֆեդերատիվ ձևը։ Կարևորն այն է, թե քաղաքական տեսակետից դա ինչքանով է նպատակահարմար։ «...եթե մենք ասում ենք, որ մենք դեմ ենք ֆեդերալիզմին, իբրև ընդհանուր սկզբունքի, այդ դեռ չի նշանակում, թե մենք սկզբունքով հակաֆեդերալիստներ, սկզբունքով ցենտրալիստներ ենք։ Պետական կազմի այս կամ այն ձևը մեզ համար սկզբունքի հարց չէ, այլ ֆաղաճական նպատակահարմարության հարց» (Նույն տեղը, էջ 217)։

Ուսումնասիրելով բուրժուական ֆեդերացիաների փորձը, Շահումյանը եկել էր այն եզրակացության, որ ամենուր դրանք առաջացել և ամրապնդվել են բռնության միջոցով։ Այստեղ ֆեդերացիային հատուկ կամավորության սկզբունքն իր տեղը զիջել է բռնության սկզբունքին։ Այսպես, ԱՄՆ-ի և Շվեյցարիայի ֆեդերատիվ կառուցվածքը համապատասխանեցված էր վարչա-տերիտորիալ բաժանման հետ, անտեսված ազգերի իրավունքների հավասարության պահանջը։

Մերկացնելով նացիոնալիզմը, Շահումյանը ցույց էր տալիս, որ Ռուսաստանում ճնշվող ազգերի բուրժուազիան ազգային հարցը լուծելու համար առաջարկում է ազգային պետականություններ ստեղծելու միջոցով վերացնել



ժամանակակից բազմազգ պետությունները։ Դրան հակառակ, իշխող ազգի
բուրժուական գաղափարախոսները ձգտում են պետության մեջ մտնող բոլոր
ազգություններին ասիմիլյացիայի միջոցով մի ազգություն դարձնել։ Ցույց
տալով այդ երկու ուղղությունների վնասակարությունը, Շահումյանը հան-
գամանորեն քննադատում էր ֆեդերացիայի բուրժուական հասկացության
խոտելի կողմերը։

Վերլուծելով պետական կառուցվածքի բուրժուա-նացիոնալիստական
տեսակետի էությունը, Շահումյանը նշում է, որ եթե ֆեդերացիայի հարցում
նրա ներկայացուցիչներն առանց որևէ բացառության պահանջում են ֆեդե-
րացիա, ապա մարքսիստները բացարձակապես չեն ժխտում սեպարատիզմը
կամ ֆեդերալիզմը։ Մարքսիստները, լինելով դիալեկտիկներ, յուրաքանչյուր
երևույթ դիտում են ժամանակի և տարածության մեջ, հաշվի են առնում այս
կամ այն երկրի կոնկրետ պատմական պայմանները, քաղաքական նպատա-
կահարմարությունը, առանձին դեպքերում հնարավոր համարում բուրժուա-
կան բազմազգ պետության ֆեդերատիվ ձևը։ «Հնարավոր են դրություններ,
երբ այս կամ այն ազգի վերաբերմամբ մենք կգտնենք ավելի ցանկալի և ան-
հրաժեշտ ֆեդերացիան, կամ նույնիսկ կատարյալ անջատումն» (Նույն տեղը,
էջ 218)։ Ազգի անջատման դեպքում, պետական իշխանության օրգանները
չպետք է բռնանան վերջինիս նկատմամբ։ «Պետական սահմանադրությունը
պետք է արգելե կենտրոնական իշխանության դիմելու զենքի օգնության,
«նվաճելու» և բռնի կերպով ենթարկելու իրան այս կամ այն ազգությունը»
(Նույն տեղը, էջ 214)։

Այս հարցը լուսաբանելիս Շահումյանը վկայակոչում է Մարքսին։ Նա
ասում է, որ Մարքսը ելնելով բանվոր դասակարգի միջազգային ազատա-
գրական շարժման շահերից, որպես բացառություն, օգտակար համարեց Լե-
հաստանի անջատումը Ռուսաստանից։ «Երբ 60-ական թվականներին Լեհաս-
տանն ապստամբվեց, Կարլ Մարքսը կողմնակից էր նրա կատարյալ անջատ-
մանը» (Նույն տեղը, էջ 217), «...և Կ. Մարքսը՝ գլուխ անցած «Բանվորների
Միջազգային ընկերության»՝ ողջունում էր անկախ Լեհաստանի մարտիկնե-
րին» (Երկեր, հ. II, էջ 281)։

Հանդես գալով ֆեդերացիայի բուրժուական գաղափարի դեմ, նա առան-
ձին դեպքերում որպես բացառություն արտահայտվել է վերջինիս օգտին։
Այսպես, բալկանյան ժողովուրդների իրավունքների պաշտպանությունը Շա-
հումյանը գտնում էր բալկանյան ֆեդերատիվ պետության մեջ։ Այդ առթիվ
նա գրել է. «...Մեր հիմնական սկզբունքի տեսակետից ցանկալի է, օրինակ,
ներկայումս Բալկանյան ազգերի ֆեդերացիան և մենք ասում ենք՝ կեցցե՛
այդ ֆեդերացիան» (Երկեր, հ. II, էջ 281)։

* * *

Ընդունելով պրոլետարիատի դիկտատուրայի պետության ֆեդերատիվ
ձևը, Շահումյանը ռուսական առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափո-
խության ժամանակ և նրանից հետո՝ մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական
հեղափոխությունը, պայքարում էր միասնական սոցիալիստական պետու-
թյան ստեղծման համար։ Այդ հարցում կարևոր նշանակություն են ունեցել
Վ. Ի. Լենինի դիտողությունները ազգային հարցի վերաբերյալ։

Հանրահայտ է, որ Վ. Ի. Լենինը ազգային հարցի շուրջ կարծիքներ է
փոխանակել Շահումյանի հետ, առանձին դեպքերում շտկել նրա վրիպում-
ները։

1913 թ. նոյեմբերի 15-ին Վ. Ի. Լենինին ուղարկած պատասխան նամակում Շահումյանը նշել է, որ ռուսաց լեզուն պետք է պարտադիր պետական լեզու լինի ինքնորոշված բոլոր ազգերի համար և ցանկանում է, որ դա հաշվի առնվի ազգային հարցի մասին կուսակցության ծրագրում: Շահումյանի առաջարկը բխում էր այն պրոգրեսիվ դերից, որ խաղում է ռուսաց լեզուն ազգերի տնտեսական և կուլտուրական փոխհարաբերություններում:

Պատասխանելով Շահումյանին, Լենինը նկատել է. «Անվիճելի է, ռուսաց լեզուն բազմաթիվ մանր ու հետամնաց ազգերի համար առաջադիմական նշանակություն է ունեցել: Բայց մի՞թե Դուք չեք տեսնում, որ նա ավելի ևս մեծ չափով պրոգրեսիվ նշանակություն կունենար, եթե հարկադրանք չլիներ» (Երկեր, հ. 19, էջ 623):

Վ. Ի. Լենինը ելնելով փոքր ազգերի՝ այդ ժամանակ ստեղծված իրավական դրությունից, եկավ այն եզրակացության, որ սոցիալիստական տիպի պետության մեջ մտնող ազգերի համար, ազգային հարցը լուծելու տեսակետից, մարզերի ավտոնոմիան ավելի առաջադիմական կլինի, քան կուսակցության II համագումարի ծրագրով նախատեսված մարզային ինքնավարությունը: Այս առիթով Լենինը գրել է Շահումյանին. «Դուք միայն մարզային ինքնավարության կողմնակից եք: Բնավ համաձայն չեմ» (նույն տեղը, էջ 624):

Ոմանք այն կարծիքին են, թե Շահումյանը Լենինին պատասխան նամակում առաջարկել է ապագա սոցիալիստական պետության միայն ֆեդերատիվ ձևը: Սակայն նման հետևությունը հեռու է ճշմարտությունից: Խոսելով ազգերի ինքնորոշման մասին, նա արտահայտել է այն կարծիքը, որ ազգերի ինքնորոշման իրավունքը ո՛չ միայն այս կամ այն ազգին իրավունք է վերապահում անջատվելու և առանձին պետություն կազմելու, այլև ֆեդերատիվ կապի մեջ մտնելու մյուս ազգերի հետ, այսինքն՝ ունենալու նաև ավտոնոմ իրավունք: Ինքնորոշման իրավունքը «...նշանակում է նաև ֆեդերատիվ կապի իրավունք, ավտոնոմիայի իրավունք» (նույն տեղը, էջ 625): Ինչպես տեսնում ենք, Շահումյանը պետության ֆեդերատիվ ձևից բացի, առաջադրում է նաև ավտոնոմիայի հարցը:

Բացատրելով, թե ինչ է ֆեդերացիան, Լենինը գրել է՝ ինքնորոշման իրավունքը «...ֆեդերացիայի իրավունք չի նշանակում: Ֆեդերացիան հավասարների միություն է, միություն, որն ընդհանուր համաձայնություն է պահանջում: Իսկ ինչպե՞ս կարող է մի կողմը իրավունք ունենալ, որ իրեն հետ համաձայն լինի մյուս կողմը» (նույն տեղը, էջ 625): Ֆեդերացիան պետական կառուցվածքի այնպիսի ձև է, որտեղ ազգային իրավահավասար պետությունները կամավոր պայմանավորվածության սկզբունքի հիման վրա ստեղծում են միութենական պետություն: Ազգային մի պետություն, առանց մյուսների համաձայնության, չի կարող ֆեդերացիա կազմել:

Շահումյանին հասցեագրած նամակում Լենինը դրսևորում է դիալեկտիկայի կիրառման վարպետություն, կուսակցության ծրագրի ազգային հարցին վերաբերվող կետի փոփոխման պատրաստակամություն: Շահումյանը Լենինի այդ նամակից հետո հրապարակում է իր Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին աշխատությունը, որտեղ ընդունում է Լենինի դիտողությունները և փայլուն պաշտպանում հեղափոխության առաջնորդի կանխատեսումները:

1915 թ. սեպտեմբերին Վ. Ի. Լենինին և Ն. Կ. Կրուպսկայային ուղարկած նամակում Շահումյանը անկեղծորեն խոստովանում է՝ «Ձեր նամակները, խորհուրդները և ցուցումները ինձ համար միշտ ամեն բանից թանկ են եղել»: 1918 թ. մարտի 2-ին (15-ին) հրապարակելով Լենինի նամակը, Շահումյանը բացատրության մեջ խորհուրդ է տալիս բոլոր բանվորներին մեծ ուշադրությամբ կարդալ այն:

Շահումյանը գոյություն ունեցող բուրժուական ֆեդերացիայի մեջ տեսնում էր ազգային պետությունների իրավունքների իսպառ վերացման տենդենց, այդ պատճառով գտնում էր, որ այդ ձևն իրականում խեղաթյուրում է ֆեդերացիա հասկացողությունը և նրա սկզբունքները: Քննադատելով նման քաղաքականությունը, Շահումյանը գրում է. «...ֆեդերացիայի ժամանակ մի ազգի քաղաքական սուվերենիտետը պատկանում է իրեն՝ այդ ազգին և մարմնանում է նրա ազգային քաղաքական հաստատությունների մեջ: Ֆեդերացիայի ժամանակ՝ մաքուր, իսկական ֆեդերացիայի ժամանակ, քաղաքական կյանքի ծանրության կետը գտնվում է ազգային պառլամենտների մեջ. ընդհանուր պառլամենտը և ընդհանուր քաղաքական կյանքը համեմատաբար երկրորդական տեղ են բռնում» (նույն տեղը, էջ 221):

Շահումյանը ՌՍԴ(բ)Կ կովկասյան մարզային համագումարում ունեցած ելույթում, մարզային ինքնավարության և մարզերի ավտոնոմիայի տարբերության հարցին անդրադառնալիս, նշում է, որ կուսակցության ծրագրում նախատեսված ապագա սոցիալիստական պետության մեջ մարզային ինքնավարություններ ստեղծելու դրույթը 1913 թ. փոխարինվեց մարզերի ավտոնոմիայով: Եթե մարզային ինքնավարությունը չունի օրենսդրական իրավունքներ և զբաղվում է միայն կուլտուրական ու տնտեսական վարչական ֆունկցիաներով, ապա ավտոնոմիան օժտված է օրենսդրական իրավունքներով:

Լինելով ազգային հարցի խոշոր տեսաբան, Ստ. Շահումյանը հեղափոխական պրոլետարիատի հաղթանակի համար հրամայական անհրաժեշտություն էր համարում ազգային հարցի ճիշտ լուծումը: Եվ պատահական չէ, որ նա երկար տարիներ հանգամանորեն հետազոտել ու մշակել է այն, կանգնած մնալով ինտերնացիոնալիզմի լենինյան դիրքերում: Ֆեդերացիայի պրոբլեմի նրա մեկնաբանությունը մի անգամ ևս վկայում է Շահումյանի մտքի ճկունության, հարցի դիալեկտիկական ըմբռնման, պատմական իրադրության զգաստ գնահատման նրա փայլուն կարողությունը:



Սաադ-էլ-Աալի, այստեղ ևս մոնտաժող է նա։ Անֆյորսի Գլեբն իր ընկերների հետ միասին հիացմունքով է խոսում իրենց ղեկավարի՝ Մելյան Հենրիկի մասին։ Սովետական մեծ երկրի քաղաքացու արժանապատվության խոր գիտակցությամբ, հայրենիքից այսքան հեռու, իրենց բարեխիղճ, բանիմաց աշխատանքով, մարդկային լավագույն հատկանիշներով նրանք ջանում են բարձր պահել հայրենիքի պատիվը, արդարացնել մեր կառավարության հույսերը։ Առանձնապես աչքի են ընկնում հիդրոէլեկտրակայանի շահագործման գլխավոր ինժեներ Իվան Գուսևը, մոնտաժողներ Յուրի Խվոստանցևը, Էդվարդ Լեմիտցը, փոխադրասարքի բանվոր Գրիգորի Սուբոտինը և ուրիշներ։ Այստեղ գնահատում են նրանց աշխատանքը, հարգում... Ինժեներ Մելյան Հենրիկը, էլեկտրատեխնիկ Գրիգորյան Գրիշան, Սահակյան Էդվարդը, Բեզրուչկով Իվանը արժանացել են արաբական կառավարության պատվավոր պարգևի։

Հաճելի է օտար երկրում հայրենակից, համաքաղաքացի աշխատավորին հանդիպելը. անջատումը, մանավանդ մնացողների համար՝ դժվար է, բայց, անխուսափելի, և մենք վերադառնում ենք մեր «Հալափշա» հյուրանոցը։

* * *

Երկու առագաստանավերը մեղմասահ կտրում են Նեղոսը, անցնում գետի մեջտեղում գտնվող Փղերի կղզու մոտով։ Այս կղզին այն չէ, որտեղ մեռնելու են գնում փղերը. հին Էլեֆանտին (ֆրանսերեն *éléphant*— փիղ) քաղաքի ավերակներն են դրանք— սև, մոխրագույն գրանիտյա հսկա ժայռեր՝ փղերի տեսքով։ Ասես թե մի քանի փղեր որոշել են Նեղոսն անցնել և դրանից առաջ նստել են հանգստանալու։ Քսանութամյա նուբիացի մակույկավարը՝ Մաթա Ահմադը և նրա քրոջ տասնչորսամյա սև, գանգրահեր տղան՝ Աբդուլը, վարժ խոսում են արաբերեն և գիդից իմանալով, որ Սովետական Միությունից ենք, խնդրում են Լենինի նկարով կրծքանշան և ջերմեռանդությամբ փակցնում այն իրենց կրծքին։

— Մատրոշկա, մատրոշկա,— խնդրում է Աբդուլը՝ իր ութ քույր-եղբայրներից ավագը։

Ես հիշեցի ճապոնացի այն փոքրիկ տղային, որ հավատացած էր, թե մատրյոշկա-տիկնիկը կիրականացնի իր ցանկությունները և հորը փնտրելու հույսով Մոսկվա հասնելով մեծ ջութակահար դարձած, վերադարձավ հայրենիք։ Ո՞վ գիտե՝ ի՞նչ երազներ ուներ գանգրահեր, կանաչաչվի այս թուխ պատանին։ Եվ վերադարձին նրան տվեցի ճամպրուկիս վերջին տիկնիկը։

* * *

Մեզնից ո՞ւմ մտքով կանցներ, թե մի օր պետք է հյուրընկալվենք աշխարհակալ Ա. Մակեդոնացու հիմնադրած Ալեքսանդրիայում, թագավորական պալատից ոչ հեռու, արքայական պարտեզում գտնվող, նուրբ ճաշակով կահավորված «Պաղեստին» հյուրանոցում... Մենք տեսանք Եգիպտոսի վերջին «փարավոնի»՝ Ֆարուխ I-ի ճոխ պալատը։ Չկարողանալով տանել նրա լուծը, ժողովուրդն ապստամբել է և 1952 թ գահընկեց արել նրան։ 1953 թ. հունիսի 18-ին Եգիպտոսը հայտարարվել է հանրապետություն։ Այժմ այդտեղ կառուցվում են գործարաններ, ֆաբրիկաներ ու դպրոցներ։ Ծանր պայմաններում, դժվարին ճանապարհով ժողովուրդն ընթանում է դեպի նվիրական նպատակը՝ սոցիալիզմ։

Գեղեցիկ է Ալեքսանդրիան՝ Աֆրիկայի ամենամեծ նավահանգիստը, իր ծովահայաց, բարձրահարկ շենքերով, մեկ-երկու հարկանի գողտրիկ ամառանոցային առանձնատներով, Նեղոսի մեջ ընկած Սիրո փոքրիկ կղզով, հարմարավետ լողափերով... Պոմպեոսի սյունն իր շրջակայքով տեսնելուց հետո պտուտակավոր սանդուղքով իջանք Էլ-Շուկաֆի 350 մետր խորությամբ լաբիրինթ-կատակոմբը, ուր թաղվել են հարուստ քաղաքացիներն ու զորահրամանատարները։

— Ոչ մի քայլ ետ չմնաք կամ առաջ չընկնեք, կմոլորվեք,— հանախակի զգուշացնում էր գիդը։

Իր նավաշինական, մեքենաշինական, տեքստիլ, սննդի ձեռնարկություններով Եգիպտոսի տնտեսական, արդյունաբերական-կուլտուրական երկրորդ կարևորագույն քաղաքն է Ալեքսանդրիան՝ Կահիրեից հետո։ Ջերմորեն ընդունեցին մեզ ծխախոտի գործարանում, սիրով ծանոթացնելով իրենց աշխատանքին, վիճակին։

Մենք եղանք նաև այն գերեզմանոցում, ուր հանգչում են մեր հանճարեղ դերասանուհին՝ Սիրանույշը, տաղանդավոր երգիծաբան Երվանդ Օտյանը, Վանի ինքնապաշտպանության ղեկավար Արմենակ Եկարյանը։ Նրանց տաղանդի, հերոսության երկրպագուներս մեր խոր հարգանքը մատուցեցինք մեզ համար նվիրական այդ շիրիմներին։

Եգիպտոսի ջերմարև երկինքն օթևանել է կոտորածներից փրկված շատ հայերի։ Այժմ եգիպտահայերն ակտիվ մասնակցում են երկրի հասարակական քաղաքական կյանքին և զենք առած կռվում իրենց պատսպարած երկրի անկախության համար։ Նրանց մեծ մասը փայփայում է նվիրական մի երազանք— որքան կարելի է շուտ տեսնել հայրենի երկինքն ու հո-



ղը։ Հայաստանում այնպես ջերմ ընդունելություն գտած և կարճ ժամանակամիջոցում ճանաչված ու սիրված երգիծանկարիչ Սարուխանը, հիացմունքով խոսելով սովետական ծաղկած Հայաստանի նվաճումների, նրա անկասելի վերելքի մասին, հայտարարեց.

— Ամենեն լավը ամբողջ աշխարհում մեր հայրենիքն է՝ Սովիեթ Հայաստանը,— և հայրենակարոտ աչքերը հառած հայրենիքից վերադարձած մարդուն՝ բուռն ծափահարում էին ժողովականները։

Կահիրե վերադարձանք Կանաչ ճանապարհով՝ Նեղոսի արգավանդ հովտով։ Շրջեցինք ժամանակակից մեչիդները, եղանք կոպտերի եկեղեցում (Եգիպտոսի 30 միլիոնանոց բնակչության մեկ միլիոնը քրիստոնյա են՝ կոպտեր), որը Բաբելոն են անվանել, որովհետև այն կառուցել են բաբելոնացի գերիները։ Գեղեցիկ էին արևելյան բազմերանգ գույներով զարդարուն մեչիդները, ուր իշխում էր բնության պաշտամունքը. ոսկուց, սուտակից արևը, լուսինն ու աստղերն էին զարդարում նրանց առաստաղները։ Իսկ երբ լսվում էր բարձր ու ձիգ «Ալլա՜հ»-ը, մուսուլմանները գետնատարած աղոթում էին։

Մեզ՝ բնության ուժերը սանձող սովետական երկրի տուրիստներիս համար տարօրինակ ու հետաքրքրական էր տեսնել աղոթաժամերին սև չադրայով ծածկված կանանց, սպիտակ վերնաշապկով, բան ու գործ թողած, նամազի կեցած տղամարդկանց խուռն ամբոխը։ Եգիպտոսի շատ վայրերում, անտիկ աշխարհի տաճարներում, պալատների ավերակների մեջ, թանգարաններում քարե, երկաթյա ու փայտյա կուռքերի, աստվածների, սֆինքսների շատ քանդակներ, արձաններ է տեսել այս ժողովուրդը, իսկ աստված՝ երբեք, բայց շարունակում է պաշտել ու երկրպագել իր չտեսած ու չշոշափած աստվածներին...

Կահիրեում, Ալեքսանդրիայում թե Լուքսորում, մեր ճանապարհին գտնվող ծղոտածածկ խրճիթներով գյուղերում, ամենուրեք բացահայտ էին ակնբախ տարբերությունն ու անհավասարությունը... քաղաքի արևելյան սաղարթախիտ պարտեզներում բարձրանում էին մեկը մյուսից գեղեցիկ, բնավ իրար չնմանող, հոյակերտ, երկհարկանի առանձնատները, որոնք արևելյանի ու եվրոպականի նրբաճաշակ խառնուրդն էին։ Միլիոնատերերի թաղամաս— այսպես են կոչում տեղացիներն այս քաղաքամասը. իսկ հարավ-արևմտյան մասում՝ սևացած պատերով, անապակի, կուրաչք պատուհաններով բարձրահարկերն էին, կեղտոտ, ճանճաշատ փողոցներով։ Մի կողմում եվրոպական հագուստով, ձյունաթույր վերնաշապկով հարուստներ, մյուս կողմում՝ փողոցներում, պատերի տակ, խանութների դռների առաջ ծվարած, պաղատագին պարզած ձեռքերով «բաշխիշ» աղերսողներ։ Մի կողմում՝ խիստ նորաձև, նուրբ ճաշակով կահավորված խանութներ՝ ամեն բարիքով ու ապրանքով լեցուն, գույների, ձևերի բազմազանություն, շքեղություն ու փայլ, մյուս կողմում՝ հենց մայթի վրա, կրակարանի առաջ նստած կեղտոտ շորերով կանայք, որ եգիպտացորեն էին խորովում ու վաճառում։ Փողոցներում, դարակների վրա շարված են արևելյան բազմազան մրգեր, կողքին՝ վաճառողը ճանճաքշիկը ձեռքին։ Այստեղ կարելի է տեսնել ամենագեղեցիկ ավտոմեքենաներն աշխարհի և, միաժամանակ, մարդուն, որ սայլակին լծված՝ քարշ է տալիս իր և իր կյանքի բեռը։

Իր խայտաբղետությամբ, բազմազանությամբ ուշագրավ է Խան-էլ-Խալիլի արևելյան շուկան, ուր գոյակցում են հին ու նոր Արևելքը։ Որտեղ էլ եղանք, երկու աշխարհ էին դեմ ու դեմ կանգնած։ Բայց ամենուրեք զգացվում էր, որ երկիրը մաքառում է լավի, թշվառությունը վերացնելու համար։

Գեղեցիկ է Կահիրեն՝ իր աշխարհահռչակ կենդանաբանական այգով, բազմաթիվ ժամանակակից ու անտիկ հուշարձաններով, ճարտարապետական հին ու նոր կոթողներով, որոնցից շատերի հետ մեկտեղ խիստ տպավորիչ է 1928 թ. կառուցված Վերածնության արձանը— հին Եգիպտոսը՝ Սֆինքսի, նորը՝ գեղեցիկ աղջկա տեսքով, ձեռքը դրած հնի գլխին։

* * *

Կահիրեում բանվորական ուժի խոշոր կենտրոնատեղիներ են՝ ալյումի, կերամիկայի, շաքարի, օծանելիքի, կառուցվող սառնարանի և այլ գործարաններ։ Այնտեղ գործող պետական ու մասնավոր ճարտարապետական բյուրոներն ամեն ինչ անում են քաղաքի նորոգման, անտիկ աշխարհի պահպանության համար։ Չէ՛ որ աշխարհի ծնունդը, մանկությունը տեսնել ցանկացողներն ամենից առաջ Եգիպտոս են ուղղում իրենց հայացքը, և տուրիզմը մեծ օգուտ է բերում երկրին։ Եգիպտոսը մեծ կարիք ունի բժիշկների, ինժեներների, ուսուցիչների, գյուղատնտեսների։ Շատ բան է արվում այստեղ բնակչության, հատկապես երիտասարդության կրթության գործի կազմակերպման բնագավառում։ Ահա դաշտավարական դպրոցը՝ պոլիտեխնիկական, բժշկական, հումանիտար գիտությունների ինստիտուտները։ Շրջանավարտներին հերթագրում, աշխատանքով ապահովում է պետությունը։

Միացյալ Արաբական հանրապետությունն իր ղեկավարի՝ Գամալ-Աբդել Նասերի գլխավորու-

թյամբ, Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ ընթանում է սոցիալիզմի կառուցման ուղիով: Այդ դուր չի գալիս իմպերիալիստական պետություններին, զավթողական քաղաքականության մարմացով բռնված գաղութարարներին: Կաճիրեի թանգարանում, պատմական ճազվադեպ էքսպոնատների ապակե ցուցափեղկերի վրա խաչաձև թղթեր են փակցրված, ավազով լի պարկեր են դրված արձանների շուրջը թե՛ թանգարանում, թե՛ փողոցներում: Շենքերի անկյուններում 2—2,5 մետրանոց քարե պարիսպներ են կառուցված: Ամեն ինչ արվում է դարերով պահպանված պատմական արժեքները չկորցնելու համար... Հեքիաթներով, ճրաշքներով, ավանդություններով ճարուստ այս անտիկ ու նոր աշխարհն ապրել, ծաղկել ու բարգավաճել է ուզում:

Խաղաղասեր ժողովուրդների պաշտպան մեր երկրի ռազմանավերը խարիսխ են գցել Միջերկրականի ջրերում, եգիպտական ժողովրդին պաշտպանելու համար: Սովետական ժողովրդի հետ միասին աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերն իրենց արդար բողոքի ձայնն են բարձրացնում Իսրայելի դեմ, պահանջելով օկուպացված տերիտորիաներից դուրս բերել իսրայելական զորքերը, վերականգնել Պաղեստինի արաբների իրավունքները և ապահովել խաղաղությունն ու արդարությունը Մերձավոր Արևելքում:

*ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ*



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33
Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 03102 Պատվեր 512 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 11.200 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 22/IV 1969 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի. *(Հոդվածների ժողովածու): Մ., Քաղհրատ, 1968, 103 էջ:*

ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ Ա. Վ.— Զրույցներ Լենինի մասին: *Մ., 1968, 48 էջ:*

ԿՐՈՒՊՍԿԱՅԱ Ն. Կ.— Հիշողություններ Լենինի մասին: *Մ., Քաղհրատ, 1968, 503 էջ:*

Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմ: *Կուսակցական ուսուցման սիստեմի համար, Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 521 էջ:*

*Հեղինակային կոլեկտիվն ընթերցողներին ծանոթացնում է դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի կարևորագույն դրույթների և փիլիսոփայական հիմնական հասկացողությունների հետ: Գիրքն օգտակար է ինքնուրույն ուսումնասիրողների համար:*

Ընդդեմ աջի ճակակոմունիզմի գաղափարախոսության: *ԳՍՄԿ ԿԿ-ին առընթեր Հասարակական գիտությունների ինստիտուտի գիտական կոնֆերանսի նյութերը՝ «Հակակոմունիզմի գաղափարախոսության դեմ պայքարը պայքար է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար» թեմայով: 30—31 մարտի 1967 թ., Բեռլին: Մ., 1968, 415 էջ:*

ԶԵՍՏՈՎ Ֆ. Ի.— Արդյո՞ք մենք մենակ ենք տիեզերքում: *Մ., 1968, 127 էջ:*

*Հենվելով գիտության վերջին նվաճումների վրա, հեղինակը ցույց է տալիս, որ մեր մոլորակը տիեզերքում մենակ չէ, սակայն կապ ստեղծել մյուսների հետ առայժմ չի հաջողվել:*

ՍՍՀՄ պետության և իրավունքի պատմություն *(Փաստաթղթերի ժողովածու): Մաս I, Մ.,* «Юридическая литература» *հրատ., 1968, 504 էջ:*

*Այստեղ զետեղված են պետությանը և իրավունքին վերաբերող վավերագրերը՝ սկսած Ռուսական պետության հիմնադրումից մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը:*

ԳՈԼԵՄԲԱ Ա. Ս.—Գրամշի: *Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1968, 191 էջ:*

*Գրքում արտացոլված են Իտալիայի կոմկուսի հիմնադիր Անտոնիո Գրամշիի (1891—1937) կյանքն ու հեղափոխական գործունեությունը:*

Աշխատանքը և աշխատավարձը ՍՍՀՄ-ում *(Հոդվածների ժողովածու): Մ., 1968, 471 էջ:*

*Գրքում լուսաբանվել է աշխատանքի լենինյան սկզբունքների իրագործման և աշխատավարձի հաշվառման ու վճարման կարգը:*

ՉԱԼՈՅԱՆ Վ. Կ.— Արևելք-Արևմուտք *(Ժառանգականությունն անտիկ և միջնադարյան հասարակության փիլիսոփայության մեջ): Մ.,* «Наука» *հրատ., 1968, 223 էջ:*

*Վերլուծելով անտիկ և միջնադարյան փիլիսոփայության հարցերը, հեղինակը քննադատում է բուրժուական ռասայական ազգայնամոլական փիլիսոփայությունը:*

ՍԻՏԱՐՅԱՆ Ս. Ա.— Տնտեսական ռեֆորմը և բյուջեն: *Մ.,* «Финансы» *հրատ., 1968, 119 էջ:*

*Հեղինակը հետազոտել է ՍՍՀՄ պետական բյուջեի դերն ու տեղը պլանավորման նոր սիստեմի և արտադրության տնտեսական վերակառուցման խթանման գործում:*

ԹԱՄՐԱԶՈՎԱ Ի. Ե.— Պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո: *Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների պայքարը աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման համար: 1921—1925: «Հայաստան» հրատ., 1968, 160 էջ:*

*Հեղինակն արխիվային նյութերի և գրականության հիման վրա շարադրել է Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների աշխատանքը երկրի կուլտուրական կյանքի զարգացման համար մղած պայքարում:*

Հուշեր Մեծ հայրենականից *(Պատմում են պատերազմի մասնակիցները): Երևան, «Գիտելիք» հրատ., 1968, 194 էջ:*

*Ժողովածուում զետեղված են Հայրենական մեծ պատերազմի ակտիվ մասնակիցների՝ Գ. Ավագյանի, Մ. Գուլյանի, Լ. Կարապետյանի, Տ. Սայադյանի, Ա. Սահրադյանի, Տ. Գյուլբուդաղյանի, Հ. Սինանյանի և ուրիշների հուշերը:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷՆԵՐԳԻԱՅԻ ՎԻԹԽԱՐԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Երկու զարկ մեկ օրում— այդպիսին է օվկիանոսի զարկերակի հաճախականությունը։ Մեր մոլորակի մեկ պտույտի ժամանակ երկու անգամ ցամաքին զարնըվող ու նահանջող ալիքների հզորությունը հարյուր հազար անգամ գերազանցում է աշխարհի բոլոր էլեկտրակայանների հզորությանը։ Էներգիայի վիթխարի աղբյուր է այն, որի օգտագործման ուղղությամբ առաջին քայլերն են արվում մեր երկրում։ Մուրմանսկի մոտակայքում, Կիսլայա Գուբայում, կառուցվել է ներհոսքային փորձնական էլեկտրակայան. այն տարեկան կտա երկու միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, օգտագործելով մեր հայրենիքի ափերին զարնըվող ալիքների էներգիայի մեկ հարյուր հազարերորդ մասը։

## ՇՊՐԻՑ՝ ԱՌԱՆՑ ԱՍԵՂԻ

Վորոնեժի մի խումբ ինժեներներ ու բժիշկներ ստեղծել են «пчелка» անասեղ ինյեկտորի (ներարկիչի) առաջին հայրենական նմուշը։ Այն նման է գնդիկավոր ինքնահոսի, պատրաստված է չժանգոտող պողպատից, քաշը մոտ 200 գրամ է։ Զսպանակի և մխոցային սիստեմի օգնությամբ դեղորայքի սահմանված դոզան «խփվում» է մարդու թևին կամ մարմնի որևէ մասի և վայրկենապես թափանցում մաշկի միջով։ Սրսկվողն զգում է միայն թեթև ցնցում։ Շպրիցի մի լցումը կբավականացնի 40 սրսկման։ «Пчелка»-ի մոդելներից մեկը դեղորայքի դոզայի կարգավորման հարմարանք է։ Այս տարի վորոնեժցիները կսկսեն անասեղ շպրիցների թողարկումը։

## ՆՈՐԱՁԵՎ ՏՐԱԿՏՈՐ

T54D մակնիշի տրակտորն ունի կամարավոր ամուր շրջանակով միացած իրարից անկախ երկու սարք։ Սարքերի շարժիչներից մեկի պտույտն ավելացնելիս տրակտորը սահուն շրջվում է, իսկ կտրուկ շրջադարձի համար հարկ է լինում անջատել շղթայակցման կցորդիչը, և արգելակվում է թրթուրներից մեկը։ Նոր տրակտորը, որը կարող է և՛ հերկել, և՛ ցանել, նախատեսված է խաղողի, հատապտղի այգիների, թեյի պլանտացիաների համար։

## ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆ ԱՐԿ

Ամերիկյան «Սանդրա Կորպորեյշն» ֆիրմայի ինժեներներն ստեղծել են մի սարք, որը կարող է մի քանի րոպեում հետազոտել հողի ընդերքը. մինչդեռ, սովորաբար, դրա համար պահանջվում են շաբաթներ, նույնիսկ՝ ամիսներ։

Սարքը մեծ արագություն ունեցող արկ է, որը մխրճվում է հողի ընդերքը։ Այդպիսի արկը նետում են ուղղաթիռից։ Արկի ետնամասում կա հրթիռ, որը մեծացնում է արկի անկման արագությունը։ Արկում տեղադրված ապարատները տեղեկություններ են հաղորդում հողի կտրվածքի բնույթի մասին։ Հողաշերտն ամենից լավ հատում են ծանր մետաղից պատրաստված արկերը, որոնք նման են սրածայր մատիտի։

## ՇԱՔԱՐԸ ՊԱՀՊԱՆՈՒՄ Է ԱՏԱՄՆԵՐԸ

Արևմտյան երկրների ատամնաբույժների մեծամասնությունը ատամների պահպանման լավագույն միջոցը համարում էր խմելու ջրի մեջ, թեկուզ աննշան քանակությամբ, ֆտոր ավելացնելը։

Բնավ չանտեսելով ֆտորի արժանիքը, ավստրալիական մի խումբ գիտնականներ կատարեցին սենսացիոն հայտնագործություն. պարզվեց, որ ատամների փչացման դեմ առավել ներգործուն միջոց է շաքարը, ավելի ճիշտ՝ կալցիի, սախարոզայի և ֆոսֆորաթթվի միացությունը։

Ածխաջրերով հարուստ սննդամթերքները պարունակում են այս կոմպլեքս միացությունը, բայց ռաֆինացման կամ սովորական խոհանոցային մշակման դեպքում այն գրեթե վերանում է։

## ԴԵՐՁԱԿԸ ԼԻԴՍԻՑ

Դերձակի մկրատի փոխարեն լազերի ճառագայթ, կավճի ու մետրի փոխարեն՝ հաշվիչ մեքենա և օպտիկական գործիքներ... Անգլիական Լիդս քաղաքի կարի արտադրամասում ստերեոխցիկի օգնությամբ վայրկենապես վերցնում են պատվիրատուի չափսերը։ Այնուհետև տվյալները մշակվում են հաշվիչ մեքենայով. լազերային սարքը բացառիկ ճշգրտությամբ ձևում է ընտրված կտորը։